Herrn Prof. H. Gelzer
mit freundlichem Gruss
der Herausgeber



# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

ԽՄԲԱԳԻՐ ՅՕՐԻՆԵԱԼ Յ' Է· ԴԱՐՈՒ

Ի

ՀՆԱԳՈՅՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱՑ

ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

ՆԵՐԱԾՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՄԲՔ

Sarkisian



Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

ՎԵՆԵՏԻԿ

1904

# ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԽՄԲԱԳԻՐ ՅՕՐԻՆԵԱԼ Յ' Է· ԴԱՐՈՒ

Ի

ՀՆԱԳՈՅՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱՑ

ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

ՆԵՐԱԾՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԲԱՂԴԱՏՈՒԹԵԱՄԲՔ



Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

ՎԵՆԵՏԻԿ

1904

Ի

ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԻՆԻ

ՍՈՒՐԲ ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ

ԱՐՀԻԱՊԱՏԻՒ ՏԵԱՌՆ

# ՏԵԱՌՆ ԻԳՆԱՏԻՈՍԻ Վ.ի ԿԻՒՐԵՂԵԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՀՕՐ ՈՒԽՏԻՍ

ՆՈՒԻՐԻ ԽՈՐԻՆ ՅԱՐԳԱՆՕՔ

ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՍ ՆԱԽՆԵԱՑ

Ի ՀԱՅՐԱՍԷՐ ՈՐԴԻՈՑ

ԱՌ ՍԻՐՈՂՆ ԴՊՐՈՒԹԵԱՆՑ

ՅԱՐՁԱՆ ՅԻՇԱՏԱԿԻ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

ԱՌԱՋԻԿԱՅ գրուածս որ ի վաղուց գրաւած էր մեր ուշադրութիւնը, կը պատկանի՝ ամենայն հաւանականութեամբ՝ Է. դարու մեր ուսումնասէր նախնեաց։ Եթէ նախնեաց որ և է գրաւոր երկասիրութիւն հնութեան աղագաւ ընդհանրապէս նուիրական եղած է յետագայից համար, ասոր մասին կրնանք ըսել իրաւամբ, որ նաև յոյժ հետաքրքրական է և կարևոր՝ թէ՛ նիւթին նորութեան և թէ՛ ընտիր գրութեանը համար։ Եօթներորդ դարէն քիչ բան հասած է մեզ. և այդ քիչերուն մէջ իսկ անոնք աւելի ուշագրաւ են — որպիսիք են Զենոբ Գլակ, Սեբէոս և Ղևոնդ Երէց — որոնք պատմական, ժամանակագրական և աշխարհագրական մասնագիտութիւնքը կը ներկայացնեն մեզ չափով մը։ Այս տեսակէն է ահա նոյնպէս անանուն գրութիւնս, որ թէև քանակով միւսներէն աւելի պզտիկ, սակայն պարունակութեան կողմէն շատ աւելի հանրազգային է և ընդարձակ ։

Գրուածքիս կարևորութիւնը միայն ասոր մէջ չի կայանար. այլ անով իսկ առաւելապէս շահագրգիռ է, զի կը ներկայացնէ մեզ նախ հինաւուրց ժամանակագրութեանց անյայտացած մնացորդները, և կամ հայեցի թարգմանութիւնքը, որոնց մասին մինչև այսօր մենք որոշ տեղեկութիւն չունէինք։ Բ. Խորենացւոյ պատմութեան հետ ունեցած աչքի զարնող աղերսներովը։ Վերջին տեսա-

կէտի նկատմամբ արդէն դիտած և գրած ենք 1903 ամի «Բազմավիպի» Նոյ. և Դեկ. թիւերուն մէջ, ինչ որ կարող էինք դիտել և գրել համառօտիւ։ Իսկ առաջին տեսակէտը այս տեղ պիտի փորձենք բարգաւաճել — ինչպէս որ խոստացած էինք։

Անանուն ժամանակագրութիւնս — ինչպէս պիտի տեսնեն ընթերցողք — զանազան աղբիւրներէ կազմուած խմբագրութիւն մ'է։ Խմբագրութեանս Է. դարուն կատարուած ըլլալն, ըստ իս, առանց երկբայութեան է։ Այս բանիս ակնյայտնի ապացոյցները կրկին են։ Նախ որ բիւզանդական կայսերաց և սասանեան թագաւորաց պատմութիւնը Հերակլով և որմզդեան Խոսրովով կ'աւարտի։ Բ. բոլոր գրութեան մէջ չկայ, — ըլլայ քաղաքական, ըլլայ եկեղեցական վիպաց և դիպաց վերաբերեալ — բան մը՝ որ յիշեալ դարու պարունակէն անդին անցնի։ Այս այսպէս ըլլալով՝ կը հետևի, ուրեմն, նախ գիտնալ, թէ որո՞նք են այդ նախնական աղբիւրները։ Երկրորդ՝ թէ ո՞վ եղած է զանոնք հաւաքող և կարգաւորող հեղինակը, և ի՞նչ կերպով։ Երրորդ՝ թէ ի՞նչ բան յատուկ է կամ սեփական խմբագրին։ Թող աւելորդ չհամարուի ըսել, որ այս գլխաւոր կէտերու պարզաբանութենէն պիտի իմացուի դրուածքիս աւելի կամ նուազ կարևորութիւնն ու յարգը։

Մեր բնագրի մէջ՝ առանձին խորագրի ձևով նշանակուած անուններէն դատելով — եթէ ստուգիւ խմբագրի գրչէն ելած են — չորս եղած են անոր գէթ գլխաւոր աղբիւրները. այսինքն են Խորենացի, Անդրէաս, Եւսեբիոս և Եպիփան։

Աղբիւրներէս առաջնոյն վերագրուած մասը երկու էջ հազիւ կ'ըլլայ. այսինքն է՝ Ադամէն մինչև Նոյ իրարու յաջորդող նախաջրհեղեղեան նախապետներու ծննդաբանութիւնքը։ Այս բանս անտարակուսելի է. վասն զի Հայոց պատմութեան Ա. Գրոց Դ. գլխուն հետ ունեցած նմանութիւնը բաւական է։ Սակայն պէտք է ըսել, որ անանուն ժամանակագիրն՝ իր գործին մէջ — այսինքն է՝ երրորդ և չորրորդ աղբերաց վերաբերեալ մասերուն և անոնցմէ դուրս արչաւած և ազգային անցեալ դիպաց վրայ խօսած ժամանակ իսկ—բազում անգամ Խորենացւոյ դիմած և անկէ փոխառութիւններ ըրած է։ Եւ այդ փոխառութիւններէն մի քանիսը արդէն մենք նշանակած ենք «Բազմավէպի» Նոյ. թուով հրատարակած մեր յօդուածին մէջ։ Զայնք առհասարակ աւելորդ կը համարինք հոս նշանակել, զի աւելի յարմար դատեցանք բնագրի տեղեացը վրայ ծանօթագրել։

Անդրէասին տրուածը — որ ամբողջ գրուածին երկու երրորդ մասը կը կազմէ — ամենէն նորը և հետաքրքրականը կարելի է համարել. զի կը խօսի մանրամասնօրէն Նոյի երեք որդւոց և ջրհեղեղէն վերջ անոնցմէ յառաջ եկած սերունդներու և ժողովրդոց, անոնց բաժանմանց և ստորաբաժանումներուն, հողագնդոյս վրայ գրաւած երկիրներուն կամ ազգաբնակութեանց, լեզուներուն, գրոց և դրից, կղզիներուն և գետերուն, քաղաքներու և լեռներուն, յարանուանակոչութեանց, և երբեմն երբեմն ալ բարուց ու սովորութեանց վրայ։ Այսպէս և առանձին կերպով Փաղեկէն սկսեալ բոլոր Հրէից նահապետներուն, դատաւորներուն, թագաւորներուն ու մարգարէներուն վրայ մինչև ցԿիւրոս, հեթանոսական անցից և անձնաւորութեանց ու իրենց վերաբերեալ պատմական եղելութիւններովը։

Անանուն ժամանակագիրն իրաւամբ, ուրեմն, հարկ դատած էր դիմելու Անդրէասին, զի Եւսեբիոսի քով կարելի չէր գտնել աշխարհագրական այդ պլէյադը՝ փոքրիկ պարունակի մը մէջ ամփոփուած լակոնաբանութեամբ և այնքան ընդարձակ հմտութեամբ։ Հետևաբար՝ մենք ալ նոյնքան իրաւամբ պէտք ենք հարցնել, թէ ո՞վ էր այդ հին ազգաց և աշխարհաց պատրուակը պարզող Անդրէասը, որը սակայն անծանօթ մնացած է միջնադարեան ժամանակագիրներուն։ Թէև շատ են այս անուամբ մատենագիրներ, սակայն Անդրէաս Կեսարիոյ եպիսկոպոսին, և կամ Կրետացւոյն համար միայն կրնայ ըսուիլ՝ որ այսպիսի գործ մը գրած ըլլան։ Հեղինակներէս առաջինը ծանօթ է հնոց՝ միայն իբրև մեկնիչ Յովհաննու «Յայտնութեան». իսկ վերջինը՝ զոր Անանիա Շիրակացի երկիցս կը յիշէ[1] որպէս եղբայր Անտիոքայ եպիսկոպոսին Մանգնոսի, նշանաւոր է Կոստանդ կայսեր օրով[2] յօրինած Տումարովը, որ երկհարիւր ամաց շրջան կամ մեծ Կանոն[3] ևս կ'անուանի։ Բայց դիտելով մէկ կողմէն՝ որ այս Կանոնիս՝ գէթ մնացորդը՝ շատ տարբեր է մեր խնդրոյ նիւթ եղող ժամանակագրական քաղուածքէն. և միւս կողմէն ալ որ յիշուած չէ բնաւ հին ժամանա-

1. Այսինքն՝ նախ ի Զատիկ տեառն խորագրած տոմարական ճառին, և ապա սոյն այս ժամանակագրութեան մէջ յիշեալ կայսեր գործերը պատմած ժամանակ։

2. Այն է, ըստ Սամ. Անեցւոյն, յամի Տեառն 352։

3. Տես Migne T. 87, p. 789–1444։

կագրաց քով յանուն Կրէտացւոյն ժամանակագրական այսպիսի մի գրուած։ Ուրեմն՝ կարելի է ըսել, որ մեր անանուն ժամանակագրութեան մեզ ներկայացուցած այդ մասը կամ Կրէտացւոյն անյայտացած ուրիշ գրուածի մը համառօտ թարգմանութիւն է. և կամ վրիպակաւ Անդրէասին վերագրուած է, այլ իսկապէս ուրիշ անձի մը գործ ըլլալու է։ Ենթադրութեանցս վերջինն ստոյգ լինելով, հետևաբար այդ տեղ յիշուած Անդրէասն ալ հաւանօրէն անոր թարգմանիչն եղած ըլլալու է. և գուցէ՝ Տարօնի հռչակաւոր Ս. Ղազար վանքի գիտնական վանականն ու Ս. Սահակայ աշակերտը [1], որ իբրև հոգևոր հայր Ս. Շուշանկան՝ ի միասին կ'երթար ի Վիրս, կ'ըլլար անոր վշտացը մխիթար, և մեռնելէն վերջ ալ կը գրէր իր և Ս. Նունէի խաչի Պատմութիւնը, Քրիստոսի 475 թուականէն վերջ։

Այս երկու կէտերս իսկ առանց երկբայութեան կ'երևին, և կարելի է ապացուցանել զանոնք թէ՛ ներքին և թէ արտաքին փաստերով։ Նկատմամբ առաջնոյն՝ դիտել կու տանք, որ բաղդատելով անանուն ժամանակագրութեանս Անդրէասին վերագրուած մասը՝ Հիպպողիտոսի Բօստրացւոյ կամ Պորտուէնացւոյ (Portuensis) անուամբ հրատարակուած [2] Chroniconի, կամ ըստ լատ. Liber generationis յորջորջուած թարգմանութեան հետ՝ — այսինքն է՝ Ա. Հատածէն (Sect. I) մինչև ԺԲ. Հատածը (Sect. XII) — բառ առ բառ նոյն և իրարու յարև նման գտանք։ Այնպէս որ տեղ տեղ երկուքին մէջ եղած տարբեթիւերու, յատուկ անուանց, և ուրիշ տարբերութիւններով հանդերձ, կրնանք ձեռքի դրածի պէս ըսել, որ թէ՛ հայն և թէ լատինը մի և նոյն գործի յունարէն բնագրէն թարգմանուած են անտարակոյս. կամ լաւ ևս խմբագրուած այլ և այլ ժամանակներում։ Հիպպողիտոսի յոյն բնագիրն արդէն ի վաղուց անյայտացած է դժբաղդաբար։ Հայերէն թարգմանութենէն ակներև կը տեսնուի անոր երբեմնի գոյութիւնը. վասն զի աշխարհագրական յատուկ անուանքը ոչ միայն յունական ձևով գրուած են, այլ յաճախակի նաև այն լեզուին և գրութեան յատուկ եղող չեչ-

1. Տես. Հ. Ալիշանի Հայապատում, տպ. Վենետիկ 1901, Պատմիչք Հայոց, եր. 153–154։

2. Մեր ձեռք եղածն էր Համբուրգի տպգ. յամին 1716։ Դինդորֆի հրատարակութիւնը, որ լաւագոյնը համարուած է՝ դժբախտօրէն կարելի չեղաւ գտնել ոչ վանացս և ոչ ալ Ս. Մարկոսի գրատան մէջ։

տուորութեամբ։ Որովհետև լատին գրչագրերն առանց հեղինակի անուան կը ներկայացնեն զայն, և իրարմէ կը զանազանին երեք խմբագրութեամբք, ուստի ոմանք Ֆրիքի հետ տարակուսեցան, որ առնք իրօք Հիպպողիտոսի ժամանակագրականին բուն թարգմանութիւն ըլլան, այլ անկէց միայն օգտուած և անկախ գործեր։ Իսկ ոմանք ալ ի սկզբան չփոթելով Հիպպողիտեայ Chronologiaն՝ Զատկ. կանոն կոչուած տարբեր երկասիրութեան մը հետ, տարակուսեցան Liber generationisի հարազատութեան վրայ։ Բայց մէկ կողմէն Հիպպողիտոսի հրաշարուեստ անդրիին գտնուիլն ի Հռոմ, որուն պատուանդանին վրայ արձանագրուած է — ի շարս միւս գրուածոց հեղինակին — նոյնպէս Χρονικων προς Ελληνας, Αποδειξις χρονων του Πασχα էն. և միւս կողմէն ալ գրութեան բացորոշ թուականը, այսինքն է՝ Աղեքսանդր Մամէայ կայսեր ԺԳ. տարին (= 234) որով կ'աւարտի, փարատեցին ամէն տարակոյս։ Մեր նպատակէն դուրս կը համարինք այս տեղ ծանրանալ Հիպպողիտոսի ժամանակագրականի և անոր եռատեսակ լատին խմբագրութեանց ծագման, պարունակութեան և աղբերաց վրայ։ Փափաքողները կը ղրկենք Մոմսընի[1], Կ. Ֆրիքի[2], Ց. Դրէզեկէի[3], Հեն. Գէլզերի[4], Ատ. Հառնակի[5] և Բարդէնհաուերի[6] այդ մասին այնքան ձեռնհասութեամբ հրատարակած գործերուն։

ԺԲ. Հատածին (Sectio XII) վերջը դրուած դարագլուխներու վերաբերեալ հատուածովը հայերէնին՝ Liber generationisի հետ ունեցած բառական նմանութիւնն ու նոյնութիւնը կը դադարի — թէպէտ և Պարսից թագաւորներու, Պտղոմեանց, Հրէից քահանայապետներու և Կայսերաց ժամանակագրութիւնը գրեթէ նոյն կարգաւ կը շարունակուի երկուստեք յաջորդ Հատածներուն մէջ։ Պատճառն յայտնի է. վասն զի Սևերոսի որդւոյն՝ Աղեքսանդր Մամէայ կայսեր 13 տարեթուին — որ նշակուած է լատիններէնի

1. Տես Chronica minora Sæc. IV, V, VI, VII, I (Monum. Germ. hist. auct. antiquiss. IX), Berol. 1892.

2. Chronica minora. Collegit C. Frick, I. Lipsiæ 1892.

3. Zum Syntagma in der Zeitsch. f. Wissensch. Theolog. XLVI (1903) 78–80.

4. Sext. Joul. Afrikanus und die byxant. Cronogr. Tl. II. Abt. 1. Leipzig, 1885–1–23.

5. a. a. O. II 1. 149.

6. Gesch. der Altkirch. litteratur, II Band. S. 539–541.

մէջ որպէս վերջին դարագլուխ — կ՚աւարտէր Հիպպողիտոսի Քրոնիկոնը։ Սակայն դիտողութեան արժանի կէտ մ՚է և այս. զի Հայերէնն հոս անմիջապէս յաւելուածով մի ուրիշ դարագլուխ մ՚ևս կը յարէ. այսինքն է՝ Աղեքսանդր Մամէայէն մինչև Արկադէոս և Ոնորիոս, 177 տարի և մի ամիս, և ՃԺԲ Ցոբէլեան հաշուելով Ադամէն։ Ահա այս միջոցին վերաբերեալ մասը կարելի է Անդրէասին ընծայել, եթէ գրած էր նա երբէք ժամանակագրութիւն մ՚ալ։ Այս անակնկալ երևութովս կը յայտնէ լռելեայն խմբագիրն, որ ինքն ասկէց վերջ ուրիշ աղբիւրներու կը դիմէ. վասն զի կամ Հիպպողիտոս ալ իրեն չէր կրնար ծառայել լիապէս, և կամ անդին իրեն աւելի նպատակայարմար առաջնորդներ կային։ Եւ իրօք՝ երևութին անմիջապէս յաջորդած է գործը. զի Պարսից աքեմենեան թագաւորաց վերաբերեալ մասը ըստ ամենայնի համաձայն է Կեսարացուն. իսկ մնացածին նկատմամբ՝ որչափ որ Հիպպողիտոսէն կը հեռանայ, այնչափ ալ Եւսեբիոսի (տես Քրոն. Բ. եր. 32–304) կը զուգընթանայ, թէ և ոչ միշտ և յամենայնի։

Հռովմէական կայսերաց առաջին ցանկը — Սեւերոսէն մինչև Լիկինոս — ըստ որում նշանակուած են իւրաքանչիւրին մահուան տեղին ու եղանակը՝ նոյն է Եւսեբիոսի (Քր. Բ. եր. 36–38) ցանկին[2] հետ. սակայն անոնց թագաւորութեան և քանիցս անգամ հիւպատոսանալուն վերաբերեալ տարեթիւերը — զորս խնամքով գտած և նշանակած է հայ խմբագիրը՝ անոնց իւրաքանչիւրին հանդէպ, բոլորովին կը պակսին Եւսեբիոսի ժամանակագրութեան գէթ մեզի հասած հայերէն թարգմանութեան մէջ։ Իրաւ է որ Կանոնին մէջ նշանակուած են կայսերաց թագաւորութեան տարեթիւերը. սակայն այդ տեղ իսկ չենք գտներ նախ անոնց իւրաքանչիւրին քանիցս հիւպատոս կարգուիլն. երկրորդ կայսերքն ևս առհասարակ այդ Կանոնին մէջ անցուած չեն։ Իսկ անցուածներուն հանդէպ նշանակուած տարեթիւերն իսկ կը տարբերին յաճախ մեր անանուն ժամանակագրութեան առաջին ցանկի մէջ նշանակուածներէն։ Հետևաբար՝ այդ մասը ուրիշ երկու ժամակագիրներէ փոխ առնուած և լրացուած է. որոնց առաջինը կը հասնէր մինչև Լևոն Ա. յաջորդ՝ Անթեմիս կայսրը (?). իսկ երկրորդը՝ մինչև Հերակլ։ Եւ այս բանիս յայտնի ապացոյցն այն է, որ Զենոնէն սկսեալ միւս բիւզանդական կայսերաց հանդէպ թագաւորութեան տարեթիւերը միայն կը շարունակուին նշանակուիլ, իսկ հիւպատոսութեանց այլ ևս յիշատակութիւն չըլլուիր։

Սասանեան թագաւորաց ժամանագրական ցանկը — որ կը յաջորդէ անմիջապէս բիւզանդականին — նկատմամբ թագաւորելու տարեթուոց՝ իրաւ է որ ըստ մեծի մասին կը համաձայնի առ Սեբէոսի (Գլր. Բ.) եղած ցանկին, սակայն մեր ժամանակագրութեան ցանկի անծանօթ խմբագիրն 45 տարի յառաջ է՝ քան Անանունը (Ստ. Տարօնեցի) առ Սեբէոսի. որովհետև որմզդեան Խոսրովով կ'աւարտէ իր ցանկը, մինչդեռ վերջինս կը շարունակէ մինչև Յազկերտ վերջինի մահը և Սասանեան հարստութեան բարձումը Արաբացւոց ձեռքով։

Այս ցանկիս կը յաջորդէ անմիջապէս՝ Եւսեբի ժամանակագրի, խորագրի ներքև մի քանի տողէ բաղկացած հատուած մը, որը այդ հսկայ խորագրին ներքև այնպէս կեցած է, ինչպէս — ներուի բացատրութեանս — մեծ գլխու մը տակ՝ կտրատուած անդամ մը միայն։ Սակայն ասկէց աւելի զարմանալի է հետագայ երևոյթը. այսինքն է՝ միւս երեսին վրայ խոշոր վերտառութեամբ կը ներկայանայ Եպիփանու անունը, կարծէք թէ կորզել ուզելով Կեսարացիէն այն ամենակարևոր մասը, որ իրօք անոր ըլլալու բնոյթն ունի։ Իսկզբան ես մեծ յոյս ունէի, որ ստուգիւ հետաքրքրական այդ մասը Կիպրացւոյն ըլլայ, և թէ ադով կարելի պիտի լինէր՝ վերայայտնել մեծ հայրապետիս ժամանագրական ընդարձակ գրութիւն մ'իսկ, որ կազմէր օրուան նորութիւնը։ Ըսուած է, որ մարդ բարակ թելով մ'իսկ կը յաջողի դուրս ելնել անելանելի բաւղէ մը՝ կծկելով զայն։ Իսկ ես Եւսեբիոսին վերագրուած հատուածի տեղերը որոնելով և գտնելով՝ անոր Քրոնիկոնին մէջ, անով կարացի պարզել նաև Եպիփանին խորագրուած ընդարձակ մասի գաղտնիքը։ Այսինքն՝ սկիզբէն մինչև Դիոկղետիանոս կայսրը՝ հայ ժամանակագիրն հետևած է Եւսեբիոսի, փոխ առ փոխ ամբողջական պարբերութիւններ արտագրելով[1] մերթ Քրոնիկոնի Բ. Մասէն (այսինքն՝ Կանոնէն), և մերթ Եկեղ. Պատմութենէն՝ յօրինած է գեղեցիկ ամբողջ մը։ Մանաւանդ թէ զուգել ուզած է հեթանոս և քրիստոնեայ աշխարհի քաղաքական և այլ բազմապիսի վիպաց ու դիպաց հետ՝ նաև եկեղեցական և գրականական բոլոր կարևոր անցքերը։ Ահա ասով իսկ կը մեկնուի նոյնպէս և այն երևոյթը, թէ ինչո՞ւ համար հայ ժամանակագիրն իր փոքրիկ ժամանակագրականին մէջ կրկին անգամ խօսած է ինչ ինչ նիւթերու վրայ, և

1. Ըստ հայկական հին թարգմանութեան։

*մասնաւորապէս Արեւմտեան և Արեւելեան կայսերաց եւ և սասանեան Թագաւորաց մասին.*

*Ցոյց տալու համար ընթերցողին, թէ ինչ չափով գործածած է կարծեցեալ Եպիփանը՝ զԵւսեբիոս. կամ լաւ եւ՝ թէ վերջինս ի՞նչ տեղ կը գրաւէ անանունի հայերէն խմբագրութեան մէջ, կը նշանակենք ստոր ամէն մի պարբերութեան վերջը՝ Կեսարացու յիշեալ գրուածոց էջերը, ուսկից քաղուած են։ Որոնց եթէ աչք մը տայ ուշիմ ընթերցողը, իբր ի հայելւոջ պիտի տեսնէ մեր բսածի ճշմարտութիւնը։ Ո՞վ կը կարծէր որ Է. դարու գրչի մը ներքև այդ կերպով ծածկուած ըլլար Եւսեբեայ հին Թարգմանութիւնը։ Սակայն նոր բան չէ այս միջնադարեան գրողաց համար. զի Գ. Սինգեղղոս և ուրիշներ իսկ այդպէս վարուած են մեծ Կեսարացւոյն և Ափրիկանոսի հետ։ Այլ զարմանքն այն է՝ որ ցարդ Ան. Շիրակացւոյն կը տրուէր Ե. դարու չարադրութիւնս եւ։*

*Եւ սակայն Եւսեբիոսէն դուրս ուրիշ անծանօթ աղբիւրներ եւ նոյն կերպով ցուցադրուած են հոս, որոնք առաջնոց կը հակասեն յաճախ — նոյն իսկ մի և նոյն անձերու և դիպաց նկատմամբ, — և ունենալու են անշուշտ յատուկ կարեւորութիւններ։*

*Մեծն Կոստանդիանոսէն մինչև Կոստանդին Բոգոնատոսի որդին Յուստիանոս (այսինքն է Յուստինիանոս Բ.) — որով վերջ կը դրուի ժամանակագրութեանս — բիւզանդական կայսերաց վերաբերեալ մասը՝ երթալով աւելի ընդարձակուած է կրօնական խնդիրներով։ Շատ ջանացինք բիւզանդական պատմչաց և ժամանակագրաց կարգին մէջ որոնել գտնել հայ խմբագրութեան նաև այդ մասի աղբիւրները. բայց բաղդատութիւնները դրական արդիւնք մը չտուին մեզ, և մենք չուզեցինք հեռաւոր աղերսներով գոհ ըլլալ։ Այսու հանդերձ՝ համոզուած ենք, որ մինչև փոքր Թէոդոս աւանդուածներն՝ ուղղակի և կամ անուղղակի կերպով — այսինքն է՝ տոհմային երիցագոյն յիշատակարաններու միջոցով — յունական աղբիւրներէ քաղուած ըլլան։ Իսկ մնացածը — մասնաւորապէս եկեղ. պատմութեան վերաբերեալ տեղեկութիւնները — ըստ մեծի մասին անտարակոյս Զ. և Է. դարու առաջին կիսում գրուած ասորի և հայ այնպիսի յիշատակարաններէ հաւաքուած են, որոնք միաբնեայց կուսակցական ոգւովը տոգորուած, կամակորուած և պատմական ստուգութենէ զուրկ են։ Այսպիսի են, օրինակի աղագաւ, Պատմ. Երուսաղեմի կոչուած աղբիւրն, ուր այլ ընդ այլոյ հրաշքներ կատարուած կը պատմուին յԵրուսաղէմ, Յուս-*

տիանոսի օրով, և Քաղկ. ժողովի պատմութիւնը, ուր իբր թէ Սիմէոն Սինակեաց՝ կրակը ձգած և այրած ըլլայ ստորագրութեան համար իրեն ղրկուած Դ. ընդհանրական ժողովի վճիռը։ Այսպէս և Տիմոթէոս Աղեքսանդրացւոյն և Նմանեաց հալածուելուն պատճառաւ Լեոն կայսեր ժամանակ երևցած երկնաստատ բարկութեան սարսափելի նշաններն և արևմտեայ զօրաց՝ կրած աՀագին կոտորածը, Փլաբիանոսի և Պրոտերի մաՀուան յեղաշրջուած պատճառքն՝ այլովք Հանդերձ։ Յովհաննէս Անտիոքացին ևս գրած է նման ժամանակագրութիւն մը, Յուլ. Կեսարէն մինչև Զենոն կայսրը. բայց ամբողջ բնագիրը մեզ Հասած չըլլալով, չենք կրնար դատել՝ թէ ակէց ի՞նչ ատրեճան օգտուած է Հայ խմբագիրը, ինչպէս նաև Կայսերական կոչուած գիրքի յոյն կամ ասորի բնագրէն։

Ցիրաւի, ընթերցողն ինքնին պիտի տեսնէ անՀաւասարի կամ տարբեր աղբերաց գոյութիւնը, եթէ բաղդատէ միայն կայսերաց վերջին ցանկը՝ առաջինի Հետ։ Այդ ցանկի մէջ յիշուած չեն Հռովմէական կայսրներէն շատերը — որոնք առաջնոյն մէջ նշանակուած են չափազանցօրէն իսկ. ինչպէս օր. իմն, Լիւոն մեծին իբրև յաջորդ Անթեմիս ոք. — և բիւզանդական երեքէն չորս կայսերք ևս մուտք գտած են, և ոմանք ալ (օր. իմն, Յուստիանոս Ա) կրկնուած։ Բ. Թէ Արևմտեան և թէ Արևելեան կայսերաց վարած թագաւորութեան տարեթիւերէն շատերն ընդՀանրապէս չՀաւատալի կերպով կը տարբերին[1] Ա. ցանկի մէջ եղածներէն, և ոմանցն ալ իրարու Հետ ի միասին Հաշուուած։ Գ. Գիտել կուտանք, որ այս ցանկիս խմբագիրը՝ առաջինէն շատ տարիներ ետքը ապրած և գրած է։ Այս բանիս յայտնի ապացոյցը նա ինքն տուած է մեզ արդէն. զի ոչ միայն կ՚արձանագրէ նաև Կոստանդին Դ.ի որդին Յուստինիանոս, — վրիպակաւ թագաւորել տալով անոր երկու տարի միայն. — այլ և Խազրաց արշաւանքն, ու Հայոց, Վրաց և Աղուանից վրայ տիրապետելը՝ ի Թու. Հայ. ՃԼԴ = 685. — զոր և կը դնէ իբց վերջակէտ իր գրութեան։

Ուստի ամփոփելով մեր մինչև Հոս ըրած դիտողութիւնները՝ կրնանք եզրակացնել, որ մեր Հրատարակած անանուն ժամանակա-

1. Այս նկատմամբ դիտել կուտանք սակայն, որ վերջին ցանկում Հռովմէական կայսերաց թագաւորութեան վերաբերեալ տարեթիւերը Եւսեբիոսի քրոնիկոնի կանոնին մէջ նշանակուածներուն աւելի կը Համաձայնին, քան Ա. ցանկին մէջ եղածները։

գրութիւնը՝ հինգէն վեց աղբիւրներէ բաղկացած է։ Եւ են Ա. Մ. Խորենացի, որուն կը վերաբերին, բաց ի առաջին երկու երեսներէն, ուրիշ մասնական շատ տեղեր և տեղեկութիւններ ևս, որ ցիր և ցան կը գտնուին Եպիփանին վերագրուած մասին մէջ՝ մինչև Զենոն կայսրը. Բ. Հիպպողիտոս՝ Անդրէասի խմբագրութեամբ. Գ. Եւսեբիոս՝ որուն — բաց ի Եպիփանին ընծայուած ընդարձակ մասէն — հատուածները կը վխտան նոյն իսկ գրեթէ ամբողջ գրուածին մէջ. այսինքն է՝ սկիզբէն մինչև Լիկիանոս եղող միջոցում։ Դ. Աֆրիկանոս՝ որուն հատուածները յաճախ երևան կու գան — ուղղակի թէ անուղղակի կերպով, չգիտեմ — առաջին և երկրորդ մասերու մէջ. և մենք դիտմամբ նօտրագրեցինք։ Ե. Վեցերորդ դարու անպաշտօնական գրուածներ, զորս կարելի է մասամբ Մաբուգի եպիսկոպոս Փիլոքսենին և Տիմոթէոս Աղեքսանդրացւոյն վերագրել. այնու մանաւանդ՝ որ երկուքն ևս ի Նախնեացմէ թարգմանուած կ՚աւանդուին և մեծ ընդունելութիւն գտած միաբնակ կուսակցութեան պաշտպան Հայերու մէջ. և մասամբ ալ Կայսերական գրոց ընդարձակագոյն խմբագրութենէն, և յիշեալ դարու հայկական ուրիշ յիշատակարաններէ։

Հիպպողիտոսի թարգմանողն եղած է՝ հաւանօրէն՝ կամ Ե. դարու մեր թարգմանիչներէն մին, այն է Անդրէաս Տարոնեցին, զոր ի վեր անդր յիշեցինք. և կամ Անանիա Շիրակացին։ Առաջին ենթադրութեան, իրաւ է՝ որ դրական փաստեր չունինք, բայց և այնպէս կան հաւանական պատճառներ այդպէս կարծելու։ Նախ որ գրչագիրներու մէջ յիշուած է այդ անունը որպէս ազգային ժամանակագիր, երբեմն Մ. Խորենացւոյ հետ զուգուած և երբեմն ալ Ան. Շիրակացւոյն[1]։ Բ. Քանի որ ապացուցուած է՝ որ անանուն ժամանակագրութեան այն մասը Հիպպողիտոսի է, շատ աւելի բանաւոր է որ գործն ալ հայազգի Անդրէասէ մը թարգմանուած ըլլայ։ Գ. Այդ գրուածի թարգմանութեան հնութիւնն և գործածութիւնը տոհմային պատմագրաց և հին մեկնչաց քով։ Դ. ինչպէս տեսանք, այդ մասին վերաբերեալ կայսերաց ցանկին մէջ Անթեմիս ևս յիշուած է իբր կայսր, զոր բիւզանդական ժամանակագիրներն այնպէս չեն ճանչնար. և որ աւելի նշանակալից է՝

1. Տես Ցուց. գրչգ. Վիեննայի. եր. 829, ուր թիւ 376 հաւաքածոյին մէջ «Անանիա և Անդրէաս բազմավէպ գրութեամբ ճառեցին» (վասն ժամանագրութեան)։

Զենոնով կը դադրին հիւպատոսութեան յիշատակութիւնք, և յաջորդ կայսերք ամէնքն ալ սովկապէս թագաւորած տարեթիւրովը միայն կը նշանակուին։ Այս անակնկալ փոփոխութենէս կը հետևի՝ որ Զենոնով — որուն ժամանակը կ՚ապրէր Անդրէաս տարօնեցին — կ՚աւարտէր կայսերաց ցանկը իսկ մնացածն յետագայ մէկու մը ձեռքով շարունակուած է մինչև Հերակլ։

Իսկ գալով Եպիփանեան խմբագրականին՝ դիտել կու տանք, որ այդ անունն — եթէ պարզապէս ընդօրինակողաց ձեռքով յետոյ ուրեմն գրուած չէ ժամանագրութեանս վերջին մասին վրայ — հարկ է անոր ևս նմանօրինակ նշանակութիւն մը տալ. վասն զի ինչպէս ամէն երևոյթ՝ այսպէս և այս ունենալու է իր յատուկ պատճառը։ Արդ՝ ըստ իս աւելի բանաւոր է յատկացնել այդ անունը Կիպրացիէն աւելի — ուսկից երկու վկայութիւններ միայն մէջ կը բերուին և ոչինչ աւելի — կամ Ե. դարու առաջին կիսում ապրող Գլակայ վանից առաջնորդին և Մամիկոնէից եպիսկոպոսին, զոր իբր աստուածաբան կը տանէր Եզր կաթողիկոս ի ժողովն Կարնոյ. և կամ Եպիփան Կիպրացւոյն ընծայուած՝ հայկական խմբագրութեամբ՝ մի անվաւեր գրութեան հեղինակին, որը կարելի է նոյնացնել Գլակայ առաջնորդին հետ։ Որչափ որ ալ պատմական փաստեր կը պակսին առ այս, սակայն մէկ կողմէն Ա. ցանկին մէջ Զենոն կայսերէն մինչև Հերակլ եղած յաւելուածն, որուն կը համաձայնի սասանեան թագաւորաց շարքը. և միւս կողմէն ալ Եպիփան Կիպրացւոյ Ի սկզբնագիր արարածոց եւ յաւետարանական քարոզութեանց՝ որ ըստ Ղուկայ[1] խորագրուած հետաքրքրական գրուածին հայեցի ընտիր թարգմանութիւնը՝ հայկական իրաց մասին եղած շահագրգիռ յաւելուածներով — որոնցմէ օգտուած է ապա ժամանակագրութեանս խմբագիրը — կը թուին հաստատել զայդ։

Գործս չի ներեր մանրամասնօրէն նշանակել ասկէց առնուած բոլոր այն տեղերը. բայց կրնամ ըսել, որ կայսերաց վերջին և ընդարձակ ժամանակագրականին մէջ ագուցուած եկեղեցական

1. Այս գրուածիս հայերէն թարգմանութեան մի միայն օրինակ հասած է մեզ կամ ծանօթ է, այն է՝ թիւ 1649. գրչգ. որ կը գտնուի Վանացս Մատենադարանին մէջ։ Իսկ արաբական և եթովպական թարգմանութեանց հրատարակութեանց վերաբերեալ տեղեկութիւնքը տես Հ. Յ. Տաշեանի Ցուցակը։

հնաւանդ տեղեկութեանց այն ինչ ինչ մանրամասնութիւնքը, որ Եւսեբիոսի քով չեն գտնուիր, կամ ուղղակի Կեսարացիէն քաղուած չեն, այդ գրուածէն ըստ մասին օժանդակուած կ'երևին։ Այս բանիս մի ուրիշ ապացոյց կրնայ համարուիլ և՛ւ հետևեալը. այսինքն, թէ Եպիփանին ընծայուած Արարածոց մեկնութեան հայերէն թարգմանութեան և թէ մեր անանուն ժամանակագրութեան մէջ կը գտնուին Մ. Խորենացիէն զանազան փոխառութիւններ՝ միևնոյն իրաց վրայ։ Ուստի կրնայ մակաբերուիլ՝ որ նոյն իսկ առաջնոյն միջոցով ինչ ինչ բաներ անցած ըլլան վերջնոյս մէջ։ Վերջապէս այս կերպով կը մեկնուի ոչ միայն Եպիփան անուան՝ այդ մասին վրայ արձանանալուն, այլ և՛ւ կայսերաց ժամանակագրական կրկին ցանկերէն իւրաքանչիւրին՝ եռակի աղբիւրներէ խմբագրուած ըլլալուն և ժամանակին վերաբերեալ գաղտնիքը։

Հուսկ ի վերջոյ կը մնայ գիտնալ, թէ ո՞վ եղած է անանուն ժամանակագրութեան վերջին խմբագիրը, որ ժամանակաւ իրարմէ տարբեր այդ աղբիւրներն ու մասնական խմբագրութիւնքը հաւաքելով ի մի ձուլած է և ամբողջ մարմին մը կազմած. և թէ ի՞նչ պատճառով և պարագայի մէջ։

Արդ՝ յետ ուշի ուշով և խղճամիտ քննութեանց՝ ես իսկ այն եզրակացութեան յանգեցայ, որը Հայկզ. բառարանի յօրինողներէն սկսեալ՝ ուրիշ շատեր ևս մակաբերած էին. այսինքն թէ՝ Անանիա Շիրակացին ըլլալու էր այն, և Հայոց շարժական տոմարը ուրիշ ազգաց պէս անշարժ կամ հաստատուն գործելու նպատակաւ գրած։ Ահաւասիկ իմ փաստերը։ Նախ և առաջ հաւաստարիմ ու հաւաստապատումը՝ մեր պատմչաց մէջ՝ Ստ. Ասողիկ[1] բացորոշ կերպով ոչ միայն Շիրակացւոյն կ'ընծայէ այդ գրութիւնը, այլ և Տօմարէն կը զանազանէ, հետագայ խօսքերով. «Իսկ Անաստաս (կթղ.) խորհեալ Հայաստանեայցս կարգել տոմար անշարժ, ըստ այլոց ազգաց, և հրամայէ Անանիայի Շիրակացւոյ կարգել զՔրոնիկոն հրաշազան, յորում զտօմար մեր կարգեաց անշարժ։ Եւ Անաստասայ խորհեալ ժողովով և եպիսկոպոսօք հաստատել զՔրոնիկոնն՝ վախճանի[2], կեցեալ ամս վեց»։ Ասկէց զատ նաև պատմութեան Ա.

1. Տպ. Պարիզու 1858, եր. 101։

2. Ասկէ կը տեսնուի՝ որ Անաստաս կաթողիկոսի օրով պաշտօնական հաստատութիւն չգտաւ Անանիայի տումարը։ Այս բանիս բացայայտ կերպով կը վկայեն նաև Յովհ. պատմաբան կաթողիկոս, Կիրակոս և Վարդան պատմիչ։

գլխում երկիցս կը յիշէ զայն՝ իր Ժամանակագրութենէն մէջ բերած մէկ տեղովը։ Մենք չենք գիտեր, ստուգիւ և մանր պարագաներով, որ Ներսէս Բ. կաթողիկոսէն կամ լաւ ևս Հայ թուականը հաստատուած օրէն մինչև Անաստասի կաթողիկոսութեան ժամանակ՝ որքան խոտորած էին Հայք արևմտեայցմէ իրենց շարժական տոմարով. և թէ ինչպիսի՞ շփոթութիւնք տեղի ունեցած։ Սակայն պէտք է ըսել, որ զանիկայ ուրիշ ազգաց անշարժ տոմարին համաձայնեցնելու համար՝ հարկ էր անհրաժեշտ, որ Անանիա նշանակէր ճշդութեամբ, աշխարհի ստեղծումէն կամ նախամարդէն սկսեալ, մինչև իր օրերը իշխող այդ ազգաց և թագաւորաց, երևելի անցից և մարդկային պատմութեան մէջ դարագլուխ կազմող վիպաց ու դիպաց ժամանակը կամ տարեթիւերը։ Առանց հանրազգային ժամանակագրական այս շրջանակիս՝ տոմարը լոկ մակամտածական բան մը պիտի ըլլար։ Բայց զանիկայ կազմելն իսկ դիւրին բան չէր։ Հետևաբար նա պէտք զգաց դիմելու այն հնագոյն և հաւատարմագոյն աղբիւրներուն, որոնք արդէն ոչ միայն հայկական թարգմանութեամբ մատչելի դարձած էին Հայոց, այլ և մեծ հեղինակութիւն և վարկ ստացած անոնց մէջ. և նոյն իսկ հայկական հին յիշատակարանաց։

Բ. Ինչպէս տեսանք, անանուն Ժամանակագրութիւնը կ'աւարտի ի թու. հայոց ՃԼԴ, այն է՝ յամի Տեառն 685։ Իսկ որովհետև Սամ. Անեցիէն գիտենք, որ այդ թուականէն վերջ իսկ դեռ կ'ապրէր Անանիա՝ Հայոց մեծ գիտնականը. ուրեմն հետևութիւնն յայտնի է։

Գ. Ժամանակագրութեանս ներքին փաստերն իսկ, որպիսիք են լեզուական նմանութիւնք, զանազան իրաց վերաբերեալ պատմական ակնարկութիւններ և ամբողջական կտորներ իսկ, որոնք սերտ առնչութիւն մը կը հաստատեն մեծ Շիրակացւոյն ճառական, տոմարական և պատմական միւս գրուածներուն հետ։ Օրինակի աղագաւ, գլխաւոր դարագլուխները — Ադամէն մինչև ջրհեղեղ, և անտի մինչև Քրիստոսի ծնունդը — զորս կը նշանակէ այս տեղ, նոյնութեամբ կը գտնենք նաև իր Տոմարին մէջ։ Այսպէս նաև 72 ազգերու յիշատակութիւնն և ի մասնաւորի 12 ազգերու անուանակոչութիւնքը՝ որոնք դպրութիւն և գիր կը գործածէին ի հնումն, նոյն է երկու գրուածոց մէջ ևս։ Յովսեպոսէն առնուած մէկ տեղին, ուր կը պատմուի յաւուրս Պենտակոստէից Երուսաղէմի տաճարին մէջ կատարուած մեծադղորդ հրաշքն և

բարբառը. «Գնամք տատի, գնամք» այլովք հանդերձ, մէջ բերուած է՝ բառ առ բառ՝ նոյնպէս Անանիա Շիրակացւոյ Ցաղագս Ցայտնութեան և Ծննդեան հարազատ ճառին մէջ։ Յուստինիանոսի թագաւորութեան 34 տարին կարգեալ Աղեքսանդրացւոց յԾննդեան երեկին վերաբերեալ տեղեկութիւնը, նոյն ժամանակ ապրող Հռովմայ հայրապետին «Բնդիդիոս» ի (Բիգիլիոս կամ Վիգիլիոս) անուան միևնոյն ձևով յիշատակութիւնը, Յուլ. Կեսարի ձեռքով Հռովմայ «Բեսեքիստոն» ի (Bissexti), այսինքն է՝ Լուսնացոյցի գիւտը, այսպէս նաև Կոստանդին կայսեր օրով Ս. Խաչի երևման աքանչելիքը, բազմաթիւ Հրէից և հեթանոսաց դարձը, և այս մասին Երուսաղեմի Կիւրեղ կամ Կիւրոս հայրապետին առ կայսրը գրած նամակի մասին այս տեղ աւանդուածները՝ կը գտնենք նոյնպէս Շիրակացւոյ թէ Ցայտնութեան և Ծննդեան ճառին, և թէ Տոմարին մէջ։ Կան դարձեալ երկուստեք ուրիշ շատ նմանաբանութիւններ ևս. բայց ես չեմ ուզեր աւելի ծանրանալ այնպիսի մի եղելութեան վրայ՝ որ երկայն բարակ ցուցակութեանց պէտք չունի։

Գ. և զօրաւոր փաստ մ'ալ այս է, որ ազգային հնագոյն գրչագիրներէն ոմանց մէջ — որպիսին է Վենետկոյ ԺԹ. Ճառընտիրը — այս գրուածս կը յաջորդէ անմիջապէս երեք ուրիշ ճառերու, որոնք Անանիա Շիրակացւոյ անունը կը կրեն, և որոնց հարազատութիւնը բնաւ տարակոյս չի վերցներ։ Եւ ազգային ականաւոր բանասիրի մը վկայութեան համաձայն՝ Էջմիածնայ Մատենադարանի գրչագիրն[1] իսկ կը ճանչնայ, իբր վերջին և ընդհանուր խմբագրող ժամանակագրութեանս, զԱն. Շիրակացի. զի կը խորագրէ այսպէս. «Մովսիսի Խորենացւոյ, և Անդրէասայ, և Անանիայի Շիրակացւոյ»։ Խորենացին և Անդրէաս (այսինքն՝ Հիպպողիտոս) — ինչպէս տեսանք — որպէս ինքնուրոյն և մասնական աղբիւրներ մէջ բերուած են խմբագրէն, բայց ոչ են խմբագիրք. ինչպէս Անանիա ալ չէ ինքնուրոյն աղբիւր։ Վասն զի չօշափելի կերպով ցոյց տրուեցաւ արդէն, որ ժամանակագրու-

1. Մենք ուշի ուշով աչքէ անցնելով Էջմիածնի Մատենադարանի Գէորգեան ցուցակը, Անանիա Շիրակացու անուամբ խորագրուած ժամանակագրութեան մը չհանդիպեցանք։ Հետևաբար կամ գրչագրերը ցանկողին աչքէն վրիպած ըլլալու է այդպիսի մի գրչագիր, և կամ յիշեալ ցուցակը շինուելէն վերջ ստացուած էր այն։

թեան այն մասը ոչ ուղղակի Անանիայի կը վերաբերի և ոչ ալ Եպիփանին, որուն անունը կը կրէ՝ մեզ անյայտ պատճառով։ Ուրեմն՝ Ան. Շիրակացին՝ որպէս ընդհանուր խմբագրող յիշուած է ժամանակագրութեանս։

Այս բանիս կայ մի ուրիշ գրական փաստ ևս, զոր տուած է երբեմն Յակ. Սիմոնեան Այուբեանց, Մադրասի «Ազդարար» անդրանիկ թերթին մէջ (տես տարի 1795, եր. 191)։ Սա՝ Հնդկաստանի հայկական հին գրչագրաց մասին տուած տեղեկութեանց մէջ՝ կը գրէր այսպէս. «Անանիա Շիրակացին՝ սկիզբն արարեալ յԱդամայ, համառօտ գաւազանաւ իջանէ մինչև ի ժամանակս Անաստասայ կաթողիկոսին»։ Անտարակոյս՝ Այուբեանց տեսած էր իրօք Շիրակացւոյ ժամանակագրութեան գրչագիր օրինակ մը. և իր տեղեկագրածն ուրիշ բան չէր՝ բայց եթէ այդ գրչագրի վերնագիրը։ Հակառակ պարագայում՝ նա պիտի կարող չըլլար ոչ անանուն գրուած մը Անանիայի վերագրել, և ոչ ալ գիտնալ, թէ այդ գրուածն ուսկէ՛ կը սկսէր և ո՛ւր կ՚աւարտէր։

Հանդէպ այսքան և այսպիսի փաստերու՝ ընդառաջ կ՚ելնեն երկու դժուարութիւններ, որոնք կը թուին կասկածի ենթարկել գրուածիս Անանիայէն խմբագրուած ըլլալու հաւաստիքը. Ա. եթէ այդ ժամանակագրութիւնն ստուգիւ Անանիա գրած ըլլար և Հայոց տոմարը յօրինելու պատեհաւը, այն ատեն այդ ժամանակագրութիւնը Քրիստոսի 667–669 թուականէն անդին պիտի չանցնէր. վասն զի Անաստաս կաթողիկոսը — որուն հրամանով գրուած և աւարտուած կ՚աւանդուի Տոմարը — այդ միջոցին վախճանած է։ Իսկ ժամանակագրութիւնն՝ ընդ հակառակն՝ կը շարունակէ այդ թուականէն 18 տարի վերջ կատարուած դէպքերն ևս արձանագրել. և 685 թուականը դրած է անոր իբրև վերջակէտ։ Բ. Պատմութիւնը ներկայացուցած է մեզ զԱնանիա Շիրակացին՝ որպէս յունական դպրոցի դաստիարակութեամբ և գիտութեամբքը աճեցեալ և յունասէր մէկը, որ կ՚ապրէր քաղկեդոնեան դաւանութեան յարող կաթողիկոսներու շրջանին մէջ. որ հանած կ՚աւանդուի նոյն դաւանանքին ջերմ պաշտպան այնքան աշակերտներ. որը, մէկ խօսքով, իր միւս գրուածներու մէջ այնչափ ըղձութեամբ և յարգանօք վերաբերած էր դէպ ի ժամանակակից յունական եկեղեցին. այնպէս որ Քաղկեդոնի դաւանութեան յայտնի ջատագով և մեր բանիբուն մատենագիրներէն մին անգամ, այն է՝ Գր. Մագիստրոս, առ Պետրոս Գետադարձ կաթողիկոսը գրած թղթով

մեծապէս կը դրուատէ զինքը և իր ողջամիտ և իմաստազեղ գրուածները։ Իսկ ժամանակագրութեան խմբագիրն՝ ընդհակառակն՝ իբր ոխերիմ թշնամի կ'արձանանայ — վերջին մասում — յունական եկեղեցւոյն, և մանաւորապէս քաղկեդոնեան դաւանութեան։ Դարձեալ՝ ոչ միայն կրքոտ և անվայելուչ լեզու մը կը գործածէ այն ժողովի և դաւանութեանը նպաստող թագաւորներուն և սրբակրօն հայրապետներու դէմ, այլ՝ որ զարմանալին է՝ մեծ Շիրակացւոյն անյարմար և իրարու հակասող տգիտաբանութեամբ երբեմն պատմական ստոյգ եղելութիւններն իսկ, ինչպէս և անոնց գրաւոր վարդապետութեան ուղիղ իմաստներն ևս կը խեղաթիւրէ. և երբեմն երբեմն ալ — ինչպէս ըսուեցաւ — շինծու և ստայօդ առասպելները՝ որպէս ճշմարիտ պատմութիւն՝ միամտօրէն մէջ կը բերէ կ'ազուցանէ։ Արդ՝ դիտելով որ այս պարագաներս ճշգրիտ հակապատկերը կը կազմեն Շիրակացւոյն, դժուար է, ուրեմն, որ մի և նոյն գրչի և մտքի ծնունդ ըլլան։

Այս դժուարութիւններէս առաջինը մեծ կշիռ մը չունի՝ ըստ իս, եթէ համարինք իսկ՝ որ ժամանակագրութիւնը՝ Տոմարին հետ մի և նոյն միջոցին գրուած ըլլայ. վասն զի ժամանակագրութիւնն այնպիսի մի բան է, որ անոր հեղինակը կարող էր 669 թուականէն տարիներ վերջ հանդիպած դէպքերն ևս անոր մէջ նշանակել, ցորչափ ինքը կ'ապրէր։ Եւ Սամ. Անեցւոյ վկայութեան նայելով՝ Անանիա 712ին իսկ դեռ կենդանի էր։ Թէ այսպիսի գործողութիւն մ'իրօք իսկ կատարուած է, յայտնի ապացոյց է բիւզանդական կայսերաց առաջին ցանկին՝ վերջի շրջանին՝ երկրորդինէն ունեցած ժամանակագրական տարբերութիւնը — եթէ երկուքն ևս Անանիայի ձեռքով խմբագրուած են. վասն զի Հերակլէսով՝ այն է՝ Քրիստոսի 641 թուականին կ'աւարտի այն. իսկ այս՝ 685ին ։

Իսկ գալով երկրորդ դժուարութեան՝ ես իսկ կը խոստովանիմ, որ խիստ ծանրակշիռ է և դժուարալուծանելի. այնու մանաւանդ, որ տոհմային պատմագրաց՝ Անանիայի մասին աւանդածը ոչ ինչ բան է. և այն ալ իրարմէ առնուած և կրկնուած։ Երկրորդ՝ որ Շիրակացւոյ այնչափ և ամենազան գրուածներէն քիչ բան հասած է մեզ, և այն իսկ կիսկատար և համանուն Սանահնեցւոյ և Նարեկայ վանահօր զոյգ Անանիաներու գործոց հետ շփոթուած [1]։

1. Օրին. աղագաւ, նա ինքն կը վկայէ — ի զատիկն Տեառն ճառին մէջ — իր տոմարին համար, թէ «Եւ դրոշմեցի առանձինն զբնաւ

Եւ սակայն տարակուսի մէջ մնալու համար տարակուսիլը բնաւ ներելի չէ, այլ տարակոյսը լուծելու նպատակաւ միայն։ Ահա այս տեսակէտով կ'ուզեմ արտագրել Սամ. Անեցւոյ մէկ նշանակալից տեղին. «ՉԺԲ. Աշակերտքն Անանիայի՝ Հերմոն և Տրդատ և Ազարիա և Եզեկիէլ և Կիրակոս երթեալ յԵրուսաղէմ՝ հաւանեցան երկաբնակացն. և ի դարձին ոչ ընկալաւ զնոսա ճըշմարիտ վարդապետն Անանիա։ Իսկ նոքա ուր հասանէին՝ զնա ասէին պատճառ հայհոյութեան. զոր մի ոք իշխեսցէ ասել կամ հաւատալ։ Մեզ յայտնի չէ, թէ ուսկի՞ց առեր է Սամուէլ՝ Շիրակացւոյ այս հնգաթիւ աշակերտաց անուանքն և անոնց Երուսաղէմ գնացած ըլլալուն և անոր յարակից միջադէպը. վասն զի մեր նախորդ պատմագրաց քով չի գտնուիր։ Բայց կրնանք ըսել, որ Անանիայի զանոնք ի դարձին չընդունելու վարկածն — այն պատճառաւ մանաւանդ՝ որ երկաբնակ դաւանութեան յարած էին — բոլորովին անոր լուսաւոր մտքին և ներող հոգւոյն հակառակ են։ Եւ իրաւցնէ՝ եթէ պահ մը դիտենք, որ Անանիայի գերագոյն յոյն վարժապետն իսկ Տիւքիկոս երկաբնակ էր, և սակայն նա եթէ չի խղճեց ասկէց ուսանել բնական և սրբազան գիտութիւնները , ուստի կարելի՞ բան է, որ ինքն՝ ընդհակառակն՝ մերժած ըլլայ վարդապետել առ ինքն դիմողներուն իր գիտցածն և բուն համոզումը — ենթադրելով իսկ, որ տարբեր ըլլային վերը յիշուած աշակերտաց համոզումներէն ։ Ո՞չ ապաքէն Անանիա ինքնին իր վրայ գրած տեղեկագրին[1] մէջ յայտնապէս կը գոչէ . «Առէ (Գիրն) Ա՛րկ զոսկին իմ ի սեղանաւորս, և ես եկեալ տոկոսեօք պահանջեմ։ Ապա ոչ արգելի յումեքէ՝ որք կամէին ուսանել, և ոչ այսուհետև արգելից»։ Անանիա այդ տեղեկագրին մէջ դառնացեալ

մի մի ամ ՇԼԲ, ԻԸ կանոն. որովք զամենայն համարն բովանդակեցի ՇԼԲ կարգ, և զատի մեկնեցի զմի մի կարգ՝ առ մի տարի»։ Եւ սակայն՝ այսօր այդ ԻԸ կանոններէ բաղկացած Տոմարը ոչ ամբողջապէս հասած է մեզ, և ոչ ալ հասածին համար կրնանք ըսել, թէ իսկապէս Շիրակացւոյն է. զի վանացս երկու օրինակաց մէջ փոխանակ Անանիայի՝ Տոմար Հայոց խորագրուած է. և Շիրակացւոյն հետ կը յիշուին ստէպ ստէպ, կամ լաւ ևս մէջ կը բերուին նաև Յովհ. Կոզեռն և Սարկաւագ վարդապետներէն և ուրիշներէն ընդարձակ հատուածներ։

1. Տես Ք. Պատկանեան, Մնացուածք բանից Ան. Շիրակացւոյ, տպ. Պետերբուրգի 1877. — Հ. Ղ. Ալիշան Հայապատում, հտ. Ա. եր. 527-530. տպ. Վենետիկ 1901։

սրտով կը գանգատի իսկ իր ազգակցաց դէմ, ինչպէս երբեմն Յունաստանէն վերադարձող ու ամբաստանուող Խորենացին ։ Ահա անոր խօսքերը. « Զի իբրև եկի ի Հայս, բազում եկին առ իս ի յուսումն, և սուզ ինչ խելամտեալ՝ ոչ մնացին կատարման արուեստիս, թողին զիս և մեկուսացան. և սկսան ուսուցանել՝ զոր ոչն գիտէին, և ոչ էին հասու ։ Կեղծաւորք և սնափառք, ցուցանել կերպարանս գիտութեան, և կոչել ի մարդկանէ ռաբբի ։ Եւ ասեն ի վերայ իմ պարսաւանս՝ որ յինեն [1] եին յերիւրեալք. և ես ոչ թէ ունէի չարութիւն իբրև զնոսա՝ ի վարդապետել և ուսուցանել »։ Անտարակոյս Շիրակունւոյ այս տեղւոյն վրայ բարձրացուցած է Սամ. Անեցին իր չէնքը, ինչպէս ցոյց կու տայ նոտրագրուած խօսքերու համեմատութիւնը ։ Եւ կուսակցական ձկտումով այդպէս վարուած է Անանիայի յիշեալ տեղւոյն հետ, անոր վերը յիշած հինգ աշակերտները կասկածելի ընելու իր համախոհներուն, և իր համշիրակէն ալ « երկարնակ » դաւանութեան վերաբերեալ որ և է կասկած փարատելու համար ։ Սակայն՝ Անեցի ժամանակագրի գործածած չքմեղանաց այդ բանաձևը՝ ճիշտ արձագանգն է այն բանաձևին, զոր Յոհ. կաթողիկոսին հետ ուրիշներ ևս ըրին երբեմն՝ Յովհան Մայրագոմեցին արդարացնելու ձկտումով. հետևաբար՝ անոր նշանակութիւն ևս այնչափ կը զօրէ, որչափ վերջիններուս ։

Բայց մենք իրաւամբ դիտել կու տանք, որ Անանիայի խօսքը « բազմաց » վրայ է, և Անեցու չեշտածէն տարբեր նշանակութեամբ — ինչպէս կը տեսնուի անոր վերջի խօսքէն իսկ —, և ոչ թէ Հերմոնի, Տրդատի, Ազարիայի, Եզեկիէլի և Կիրակոսի մասին. որոնք Շիրակացւոյ իբրև հաւատարիմ ընտրելիներ եղած կ'աւանդուին ։ Այս ալ ըսենք, որ Անանիա եթէ ընդդիմութիւն մը ցուցած է դէպ ի յունական եկեղեցին, այս ուրիշ բանի համար չէր՝ բայց եթէ ազգային տոմարի, Զատկի, Ծննդեան և Յայտնութեան տօնից պահպանման նկատմամբ միայն ։ Դաւանաբանական կէտերու մասին՝ ես չեմ յիշեր, որ նա՝ Ան. Սանահնեցւոյ և այլոց նման ընդդիմաբանած ըլլայ Յունաց կամ Քաղկեդոնականաց դէմ, իր գրուածներէն միոյն կամ միւսի մէջ ։ Բան մը՝ որ հազուադէպ համարելի է Զ. և Է. դարերու մեր շատ մը գրողներու հանդէպ. և հետևաբար՝ ունի լաւելեայն իր նշանակութիւնը. և հասկանալ ուզողը՝ դիւրաւ պիտի մակաբերէ զայն ։ Այո՛, կարելի

1. Պատկանեանի օրինակի համաձայն « որք յինքենէն յերիւրեալք »։

է ըսել, որ նա իր այսպիսի չափաւորութեան և համերաշխութեան համար է, որ ոչ միայն հաճելի չեղաւ Թոնդ ազգասէրներուն և կռուարարներուն. այլ և պարսաւուեցաւ և կասկածելի եւս եղաւ իր ժամանակակիցներէն շատերուն: Այս հակակրութեան համար է, որ պատմիչներէն ոմանք լռութիւն պահեցին անոր մասին, և ոմանք ալ հազիւ յիշատակեցին զինքն ու իր գործերը անորոշակի, առանց տեղեկութիւններ հաղորդելու իր կրօնական գրութեանց վրայ: Այս պատճառաւ է, որ անոր հանճարեղ տոմարը պաշտօնապէս ընդունելութիւն և հաստատութիւն չգտաւ Հայաստանեայց եկեղեցւոյ մէջ, որով և շարունակուեցաւ շարժականն ու խոտորնակը: Մէկ խօսքով, այս պատեհաւ է, որ նա ինքն իսկ ողբաց իր ազգայիններուն՝ իր հետ վարուելու տխուր եղանակը:

Մէկ կողմէն այսպիսի պարագաներ ի նկատի չառնելով ազգային հին և նոր մատենագիրներէն ոմանք, և միւս կողմէն ալ Շիրակունւոյն բանաքաղ՝ Անանիայ Սանահնեցու ընդդէմ Յունաց գրած ճառերը նախորդին տալով շփոթմամբ, այնպէս կարծեցին և կարծեցուցին, որ իբր թէ Է. դարու մեր մեծահաւատ փիլիսոփայն եղած ըլլայ անոնց հեղինակը: Եթէ առոյգ ըլլար այս ենթադրութիւնը, անտարակոյս պիտի հետեւէր, որ ժամանակագրութեան վերջին մասի մէջ Մարկիանոսի և Պողքերիայի, Փլաբիանոսի և Քաղկեդոնի ժողովին, Լեւոնի և անոր Տոմարին, Յուստինիանոսի և համախոհից դէմ մոլեռանդութեամբ գրուած հատուածներն եւս Շիրակացիէն ներմուծուած ըլլան. այսպէս նաև Դիոսկորոսի, Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ, Զենոնի, Անաստասայ և ասոնց համախոհից մասին չռայլուած ջատագովականներն ու առասպելները:

Եւ սակայն իրականութիւնը ենթադրուածէն բոլորովին տարբեր գտանք մենք քննութեամբ: Հ. Միք. Չամչեան՝ Ան. Սանահնեցւոյ յիշեալ ճառերու հնագոյն հաւաքածուն դեռ չի տեսած՝ իրաւամբ կը եզրակացնէր, թէ անոնց մէջ գործածուած լեզուն՝ ոչ թէ Շիրակունւոյ պէս լուրջ և բանիբուն գիտնականին, այլ Սանահնեցւոյ միայն յատուկ էր և կրնար ըլլալ: Արդ՝ այս բանս հիմնովին կը հաստատուի այսօր՝ Յովհան Երզնկացւոյ ձեռքով հաւաքուած և գաղափարուած [1] վանացս Մատենադարանի թիւ 304

1. Զի նա ինքն այսպէս կը գրէ. «Նախ քան զմտանել ի դրունս ընթերցման գրոցս, պարտ է մեզ ցուցանել զգիւտ այս պատուական և բարելի գանձուց: Նուաստ և տկարոգի Յոհաննէս Երզնկայ, և սպասաւոր

(Ե. Գ.) բոլորգիր ընտիր Ձեռագրովը։ Որչափ որ Երզնկացին իր Հաւաքման Նախերգանքին մէջ Սանահնեցի վերադիրը տուած չէ Անանիայի, — ինչպէս և սա ալ պարզապէս Անանիա վարդապետ կ'անուանէ ինքզինքը. սակայն այն բարձրաստիճան հոտապետները — որպիսիք են Պետրոս (Գետադարձ) կաթողիկոսն, որուն հրամանովը գրած կ'աւանդէ իր առաջին ճառը՝ ընդդէմ երկաբնակաց. և Խաչիկ Բ. որուն կ'ուղերձէ վերջինը, ա՛լ ամէն տարակոյս կը փարատեն, և կ'ապացուցանեն միանգամ ընդ միշտ, թէ նա ինքն Սանահնեցին է, և ոչ թէ Շիրակացին։ Այս բանիս վրայ ես չեմ ուզեր ծանրանալ, զի փաստը անհերքելի է և ջախջախիչ։ Սանահնեցւոյ լեզուն իսկ՝ իր յատուկ ոճով, բառերով և միջնադարեան առումներովը — ինչպէս նաև պատմական իրաց՝ մասին ունեցած վեր ի վերոյ տեղեկութիւններով ու առասպելաբանութեամբ [1] — կը մատնեն զինքը։

Սակայն բան մը՝ որուն վրայ ցարդ խօսուած չէ, և ես կ'ուզեմ շեշտել այս տեղ, է հետևեալը։ Սանահնեցին ոչ միայն ընդարձակ արտագրութիւններ ըրած է Շիրակացւոյ Ի զատիկ Տեառն, և Ի յայտնութիւն Տեառն ճառերէն, բառացի կերպով, այլ նոյն իսկ ժամանակագրութենէն. սակայն առանց իր աղբիւրը յիշելու։ Այս բանիս համոզուելու համար՝ բաւական է բաղդատել անոր «Վասն Ժողովոյն Քաղկեդոնի», «Վասն տօնի ծննդեանն Քրիստոսի», և «Վասն երից Սրբասացութեանն» խորագրած ճառերը՝ Շիրակացւոյ յիշեալ գրուածոց հետ. զի Մարկիանոսի, Քաղկեդոնի ժողովին, Յուստինիանոսի, Զենոնի, Անաստասայ և ուրիշ զանազան իրաց մասին երկուստեք գրուած պատմական իրողութիւնները զիրար կ'ընդգրկեն։ Իսկ զանոնք պատմելու կերպին մէջ է՝ որ Շիրակացւոյ յիշեալ ճառերէն ըրած բանաքաղութիւններուն իսկ՝

բանի և իմաստից գրոց սրբոց, ծարաւի յոլով ժամանակաւք, և աշխատութեամբ բազմաւ ստացայ զայս երեք գիրքս, որ են... Առաջին՝ զԱնանիային զՀայոց վարդապետի. երկրորդ՝ զԽոսրովկայ թարգմանչի և զհզաւր գիտնականի. երրորդ՝ զՍարկաւագ վարդապետին և զմեծն իմաստասիրի զՀաղբատեցոյ»...։

1. Առ այս՝ բաւական է կարդալ անոր «Վասն Ժողովոյն Քաղկեդոնի» ճառը, ուր «Հռովմ Թագաւորանիստ քաղաք» էն սկսեալ՝ բոլոր աշխարհ հակաքաղկեդոնեան կը ջանայ ցուցնել — բաց ի Բիւզանդիոնէ — երկու էջ լեցնելով Թուարկութեամբ անուններու։

կը կցէ Սանահնեցին չափազանցութիւններ ։ Արդ՝ այս խիստ աչքի զարնող իրողութիւնս ի նկատի առած, մենք իրաւացի կերպով պիտի կարենայինք հետևցնել, որ անանուն ժամանակագրութեան մէջ — Մարկիանոսէն սկսեալ — բիւզանդական կայսերաց անուանական տարեցուցակին ներքև յաւելցուած եկեղեցական այն ձկտումնաւոր տեղեկութիւններէն ոմանք Սանահնեցիէն յետոյ ներմուծուած ըլլան, եթէ ժամանակագրութիւնը ներկայացնող հին երկաթագիրը 981 թուականին գրուած չաւանդուէր, և կամ Սանահնեցին իր յիշեալ ճառերը այդ թուականէն յառաջ գրած ըլլար ։ Բայց Խաչիկ Բ. կաթողիկոսին, յամին 1059-1065, ձօնած ուղերձէն դատելով, — որուն կը նուիրէ հեղինակը իր վերջին ճառը, այն է՝ « Պատճառք երից սրբասացութեանն », անկարելի կ'ընէ զայն ։ Ապա, ուրեմն, կը մնայ եզրակացնել, թէ եղած է երկուքին հասարակաց աղբիւր մը — հաւանօրէն ասորական պատմութիւն մը, ուսկից հատուկտոր հատուածներ միայն հասած են մեզ. — և թէ մանաւանդ Շիրակացիէն վերջ իսկ կրնան ներմուծուած ըլլալ խնդրոյ նիւթ եղող հատուածները՝ ժամանակագրութեան մէջ ։ Զանոնք ներմուծողն ալ երկու նպատակ կրնայ ունեցած ըլլալ. այսինքն է՝ կամ մեծանուն Շիրակացին հակաքաղկեդոնեան երևցնելու, և կամ հակաքաղկեդոնեան իրողութիւնները պատմութեան մէջ արձանացնելու և կուսակիցներ վաստըկելու համար. ճիշդ այնպէս՝ ինչպէս վարուած է Սանահնեցին՝ անոր Զատկի և Յայտնութեան վրայ գրած ճառերուն հետ ։

Ստուգիւ՝ քննադատութեան խիստ բովէն անցնելով ժամանակագրութեան կասկածելի այդ մասը, յայտաբար նշաններ կը գտնենք այնպիսի յետսամուտ ներմուծութեանց, որք բուն բնագրին հետ չեն ներդաշնակուիր. այլ մանաւանդ երբեմն երբեմն հակասական ևս կ'ընեն անոր ըսածները ։ Դնենք այս տեղ մի քանի օրինակ ։ Այն իջում, ուր կը յիշուի Եւտիքէսի մոլորութիւնն և Փլաբիանոսի՝ եպիսկոպոսաց ժողովով զանի դատապարտելը, հեղինակն — ըստ կարգի պատմութեան — կ'ուզէ տալ նաև տեղեկութիւն մը Դիոսկորոսի նախագահութեամբ յԵփեսոս գումարուած երկրորդ ժողովի պատմութեանը, ըսելով. « Եւ գիտացեալ զհակառակութիւնս նոցա երանելին Թէոդոս, հրամայէ՝ կրկին անգամ ժողով լինել յԵփեսոս, և քննել յաղագս Փղաբիանոսի և Եւտիքէսի » ։ Արդ՝ այս տեղ — ժողովական եպիսկոպոսաց անուններէն և Եւտիքէսի քննութենէն յառաջ — իսկոյն խօսքը կը փոխուի Լևոնի Տոմարին և առ

Փլաբիանոս ղրկուած ԺԴ գլխոց վրայ։ Այս գրքես՝ մարմնացեալ Բանին Աստուծոյ նկատմամբ մէջ բերուած այլանդակ հատուածը՝ որ այն դրոց բնագրէն իսկապէս օտար է և կերպարանափոխուած, յետոյ ներմուծուած է անտարակոյս։ Ասոր յայտնի ապացոյց են նախ՝ անկէց ետքը յաջորդող տեղերը, «Եւ ժողովեցան եպիսկոպոսք երկերիւր, Յոբնաղիոս Երուսաղէմի», և այլն։ Բ։ Մարկիանոսի ժամանակ ի Քաղկեդոն գումարուած ժողովին պատմութեան մէջ՝ մի և նոյն գրքէն մէջ բերուած դաւանութեան բանաձեւն, որ ասոր հակառակն է, և ասոր կը հակասէ։ Վասն զի առաջնոյն մէջ մարմնացեալ Բանին երկու կերպարանք կամ դէմք կը տրուի, և կուսէն ծնեալն ու չարչարուողն ալ սոսկ մարդ կ'ենթադրուի. իսկ վերջնոյն մէջ՝ ընդհակառակն մի դէմք, մի անձն՝ միացեալ յերկուց բնութեանց. այսինքն՝ «ըստ աստուածութեան ի Հօրէ, և ըստ մարդկութեան ի կուսէ» կը վարդապետուի։ Յաջորդ իջում՝ կը շարունակուի պատմել Մարկիանոսի թագաւորելն և թագաւորութեան երկրորդ տարին Քաղկեդոնի ժողովը գումարելը։ Հաւանօրէն հին բնագրի այս յայտարարութեանը մէջ «Հրամայեաց լինել ժողով ի Քաղկեդոն մայրաքաղաքն Բիւթանացւոց», կը յաջորդէին «Իսկ ժողովեալքն ի Քաղկեդոնի էին վեց հարիւր երեսուն և վեց եպիսկոպոսք, Յոբնաղիոս Երուսաղէմի», և այլն, խօսքերը։ Հետեւաբար՝ այդ խօսքերուն միջանկեալ խորհրդածութիւնները Մարկիանոսի, Պուլքերիայի, Փլաբիանոսի և Լեւոնի մասին, ինչպէս նաև Նեստորը — ժողովէն ընդունելի ընելու համար — աքսորէն յետ դարձնելուն և Յուդայի և Արիոսի նման աստուածային վերահաս բարկութեամբ սատակելու մասին տեղեկագրուածներն ոչ պատմական ներմուծութիւններ են։ Դարձեալ, նոյն իջում՝ սուրբ ժողովէն — Լեւոնի թղթի համաձայն — հաւատոյ սահմանաձեւն առաջարկուելէն և Դիոսկորեանց զանիկայ չընդունելէն վերջ՝ բնական էր, որ՝ ըստ հին բնագրին՝ անմիջապէս դրուէր ժողովի ուղիղ դաւանութիւնը և անոր հակառակողաց լուծումը, որ կը սկսի. «Այսպէս խոստովանիմք միաբան ամենեքին զՏէր մեր Յիսուս Քրիստոս ըստ աստուածութեան ի Հօրէ, ըստ մարդկութեան ի կուսէն», և այլն։ Ուստի՝ միջանկեալ ընդարձակ հատուածն, ուր Յոբնաղին ընծայուած է հաւատոյ նորօրինակ բանաձեւ մը, թագաւորին՝ զինազգեստ զինուորներ գումարելն ու սպառնալիքը, լուծեալ Թէոդորին ձրի ընծայուած ժողովի նախագահութիւնն, և ժողովի դաւանութեան մասին եղած տխմարական խորհրդածութիւնքը՝ անյարիր ներմուծութիւնք են։

Եւ այսպիսի ներմուծութեան՝ մի այլ ապացոյց է « յորում կայ յետ սակաւուց » խօսքը, որ դիտմամբ դրուած է՝ այդ ամէն բանէ վերջ, ժողովի դաւանութիւնն ու սահմանը պարունակող հատուածը՝ ցոյց տրուած տեղւոյն հետ կապելու և իր կարկատանքը ծածկելու համար ։ Այս կարգի եկամուտ հատուածներ են Աղեքսանդրիոյ հայրապետին Պռոտերի, և երանելւոյն Փլաբիանոսի մահուան վրայ յօդած առասպելները. դիտելով մանաւանդ, որ ստոյգ պատմութեան համաձայն՝ վերջինս Դիոսկորոսէն և անոր արբանեակներէն առած հարուածներու տակը մեռաւ, և ոչ թէ եր'նից բարկութենէն հարուածեալ։ Քրիստոնեայ ժողովրդոց միաւորութեան և կայսերական սահմանաց անդորրութեան համար հրատարակուած Զենոն կայսեր Հենոտիկոն հրովարտակի յիշատակութենէն վերջ՝ կցկցեալ խորհրդածութիւնքը. այսինքն են՝ անով Քաղկեդոնի ժողովը նզովուելուն, և Հռոմ եղած սաստիկ սովին և երկիրը նեխելու տեղեկութիւնքը — որ մէջ կը բերուին իբր երկնաառաք պատուհաս՝ անոնց կայսերական հրովարտակը չընդունելուն — դիտմամբ ներմուծուած կեղծիք են և կամակորուած առասպելք. որոնց անտեղութիւնն ըմբռնած չէ ներմուծողը, ինչպէս եւ Հենոտիկոնի նշանակութիւնը։ Ասոնց քովը դնելու է նոյնպէս Անաստաս կայսերէն Քաղկեդոնի ժողովին տրուած գրաւոր նզովքը, զոր կը չփոթէ Թէոդորոս Մոպսուեստացւոյն և Դիոդոր Տարսոնացւոյն նզովին հետ։

Յուստինիանոսի ժամանակ հանդիպած կրօնական պատմութեան մէջ կան կարկատուած զանազան հատուածներ. բայց ես մէկը միայն կը մատնանշեմ, որը բիւզանդական պատմութ!ան մէջ չի գտնուիր, այլ Զ. և թերևս աւելի ուշ ժամանակի կցկցանք մ'է։ Այսինքն է, Տեառնընդառաջի տօնը փոխելու համար յԵրուսաղէմ ղրկուած զօրաց բազմութիւնն, արիւնհեղութիւնքն ու տաճարի մէջ գործուած տարապայման հրաշքները. որոնցմով սակայն ներմուծողն իր մտադրած նպատակին իսկ հասած չէ. վասն զի վերջ ի վերջոյ կը դառնայ նոյն տեղը՝ զոր ընդհատեց առասպելովը, ըսելով, թէ « Իսկ յետ մահու երանելւոյն Մակարայ՝ Երուսաղէմացիք ընգալան զժողովն Քաղկեդոնի »։ Դիտելով որ Տեառնընդառաջի տօնի խնդիրը Քաղկեդոնի ժողովին հետ գործ չունի, ինչպէս Յուստոս և Մակար հայրապետները՝ Յուստինիանոսի, կ'ըսենք, որ ասկէց աւելի յայտնի ապացոյց չէր կրնար ըլլալ հատուածիս ներմուծութեանը. և թէ բանիբուն Շի-

րակացին դժուար է՝ որ կարկատած ըլլայ այսպիսի առասպելներ։

Հերակլէսին յաջորդող կայսերաց կատարած կրօնական գործերը պատմական են և միայար գրչութեամբ պատմուած։ Այս մասին ըսելիք չունիմ. զի Հայոց՝ յունական եկեղեցւոյ հետ ըրած ժողովներն և դաւանաբանական յարաբերութիւններն իսկ անկեղծօրէն յիշատակուած են, այնպէս՝ ինչպէս կը գտնենք Է. դարում հայերէն թարգմանուած հին յիշատակարանի մը, այն է՝ Διηγησις απο του αγιου Γρηγοριου, և այլն, գրուածին և կարթագինեցի Լիբերատոս Սարկաւագի քով։ Իսկ պատմելու ընդդիմագրական եղանակը — նկատմամբ Ե. ընդհանուր ժողովին, Մաքսիմոսի, և Մարտինոս, և Ագաթոն և Լեոն քահանայապետաց — դժուար է պատշաճեցնել Շիրակացւոյն, այլ անոր աղբիւրին՝ զոր ուզած է հաւատարմութեամբ մէջ բերել կամ թարգմանել։

Ժամանակագրութեանս մէջ օտար ձեռք խառնուած ըլլալու մի ուրիշ ապացոյց ևս կու տայ հնագոյն երկաթագիրն, ուսկէ ընդօրինակուած է մեր Մատենադարանի լիակատար նօտրագիր օրինակը։ Այսինքն է՝ կայսերաց առաջին ցանկին հանդէպ իսկ լուսանցքի վրայ կը կրէ — աստեղանիշով — մերթ համառօտ և մերթ ընդարձակ յաւելուածներ։ Օրինակիս գաղափարողը՝ Հ. Եփրեմ Սէթեան՝ կը յայտարարէ, թէ տարբեր գրչութեամբ և մանր երկաթագրաւ գրուած էին այդ յաւելուածները։ Նոյնը կ'ըսէ, դարձեալ, Ցաննէոս Աղեքսանդրոսէն անմիջապէս վերջը դրուած յաւելուածին համար, որ կը սկսի « Հերովդէս սպան զՀիւրկանոս » բառերով, ոչ թէ լուսանցքի՝ այլ բնագրի երեսը պարապ մնացած միջոցում « մանրագիր յաւելեալ է յումեմնէ »։ Կը հետևի արդ՝ եթէ 981 թուին Քրիստոսի գրուած գրչագրին վրայ եղան այսչափ յաւելուածներ, ո՞վ կրնայ երաշխաւորել մեզ, թէ Է. դարուն վերջեր և Ը. ին մէջ — երբ այնքան ջերմ կերպով դեռ կը յուզուէին Հայերու և Յոյներու միջև կրօնական վէճեր — անծանօթ և մոլեռանդ մէկը յաւելցուցած չըլլայ նոյնանման և աւելի ընդարձակ բաներ, և նոյն իսկ Անանիայի ժամանակագրութեան առաջին օրինակներուն վրայ. զորոնք ապա, 981ին, գաղափարողը Անանիայի կողմէն եղած ենթադրելով, և միահետ ընդօրինակելով, լուսանցներէն՝ մարմնոյն մէջ փոխադրած ըլլայ զանոնք։ Եթէ հնագրութեան պատմութիւնն և քննաբանութիւնը ի վկայութիւն կոչենք, անոնք ցոյց պիտի տան մեզ, թէ այսպիսի բաներ սուտ վարկած չեն, այլ ստոյգ եղելութիւններ՝ մատենագրութեան ամէն

մասնաճիւղերու մէջ։ Մեր հին պատմագրութիւններէն սկսեալ՝ մինչև եկեղեցական մատեանք իսկ կրած են, ժամանակի և պարագայից բերմամբ, իրարմէ աւելի կամ պակաս նորամուտ յաւելուածներ։ Ես չեմ ուզեր ծանրանալ այնպիսի մի բանի վրայ, որը խիստ յայտնի է և անհերքելի։ Յամենայն դէպս՝ որո՛ւն որ ըլլան, և ինչ ալ ըլլան այն կրօնական ընդդիմաբանութիւններն ու չափազանցութիւնները, մենք ոչ համակարծիք և ոչ ալ պատասխանատու ենք անոնց. այլ միայն որպէս հնութիւն և նախնեաց գործ՝ հաւատարմութեամբ ու ամբողջապէս կը հրատարակենք։

Ժամանակագրութիւնս, իր համառօտ՝ բայց ժամանակագրական կարգաւոր դասաւորութեան և կարևոր իրաց պարունակութեան համար, իբրև հիմն ծառայած է Է. դարու վերջին քառորդէն սկսեալ մինչև ԺԳ. դարու տոհմային ուրիշ ժամանակագրաց և պատմիչներուն։ Շատեր անոր հնութեան վրայ վստահացած միայն, և առանց զանազանելու զուտ պատմականն ու հարազատը անհարազատէն, յաճախ անոր սխալներուն իսկ մանակցեր են։ Եւ իրօք, բաղդատելով վերջնոցս գործերը առաջնոյն հետ՝ յայտնապէս կը տեսնուի ասոր ազդեցութիւնը անոնց վրայ։ Սեբէոսի քով Բ. Դպրութեան անանուն հեղինակը — որ Ստ. Ասողիկէն տարբեր մէկն ըլլալու յայտարար նշաններ կու տայ — ինչպէս Հայկազունի նահապետաց և պարթև և հայ Արշակունիներու մասին աւանդածներուն մէջ՝ ինչ ինչ տարբերութիւններով հանդերձ՝ խորենացւոյն հետ սերտ աղերս ունի, որուն համար ե՛ւ անկէ առած կ՚աւանդուի. այսպէս ալ կայսերաց և սասանեան թագաւորաց վրայ գրածները Շիրակացու Ժամանակագրութենէն քաղած է հաւանօրէն։ Ասոր իբրև ապացոյց կրնայ համարուիլ հետևեալ իրողութիւնը. այսինքն՝ սասանեան թագաւորաց տարեթիւերը՝ բաց ի երկու երեքէն — որք կարող են նոյն իսկ ընդօրինակողէն սպրդած ըլլալ — լաւ կը համաձայնին երկուստեք։

Մ. Կաղանկատուացւոյ Ա. գրքի Բ. գլուխն ամբողջապէս, որ խորագրուած է՝ «Գիր ազգաբանութեան Յաբեթի և ծննդոց Նորին», և Գ. գլխուն ալ կէսը՝ — որուն վերնագիրն է՝ «Թէ ո՛ր ազգ են, որ գիտեն գդպրութիւն», ուղղակի այդ Ժամանակագրութենէն քաղուած են։ Ինչ ինչ անուանց տարբեր ուղղագրութիւնքը՝ մասամբ գաղափարողաց և մասամբ ալ տպագրութեան վրիպակներ համարելի են. օրինակի աղագաւ, «Սկղիայ (Սիկիղիա) և Իթրակէ» (ի Թրակէ)։

## Լ

Ուխտանէս, իր Պատմութեան Ա. Գրոց Բ. գլխում, Թէպէտև «Ցաղագս Նոյի» կը ծանուցանէ մեզ որոշակի որպէս աղբիւր զՄ. Խորենացի, ըսելով՝ «Գեղեցիկ իմն յարդարէ զբանս Մովսէս ստուգագիրն». սակայն համեմատութիւնը ցոյց կու տայ, որ նա ոչ միայն այդ գլուխը, այլ եւ նախորդն ու յաջորդ գլուխները՝ Շիրակացւոյ ժամանակագրութեան առաջին էջերուն համաձայն — որոնք նոյնպէս Խորենացւոյն տրուած են — կարգաւորած է՝ Նոյէն յաջորդող եռաճիւղ կամ եռընտանի նահապետներու ժամանակագրութիւնը։ Սակայն Կաղանկատուացին շատ աւելի ընդարձակօրէն օժանդակուած է մեր ժամանակագրութենէն. այնպէս որ՝ կարելի է ըսել՝ թէ Պատմութեան Ա. Գիրքը ըստ մեծի մասին — ըլլայ ազգաց և աշխարհաց բաժանումներու և աշխարհագրական անուանակոչութեանց, ըլլայ հռովմէական կայսերաց, Հայկազանց և Սասանեանց վերաբերեալքն — փոխառութիւնք են՝ մերթ Խորենացւոյ պատմագրութենէն և մերթ ժամանակագրութենէս. զորոնք երբեմն կրճատելով և երբեմն ալ յաւելուածներով կամ եղանակաւորմամբ մէջ ընդ մէջ կը հիւսէ փոփոխակի։ ԿԹ. գլխում մեծին Կոստանդիանոսի և Նիկիոյ ժողովի մասին աւանդածները՝ սակայն՝ Խորենացիէն աւելի՝ ժամանակագրութեանս կը համաձայնին բառացի կերպով։

Ցովհան կաթողիկոսի Պատմագրութեան Ա. գրքի Ա. գլխում հազիւ որոշ հետքեր կը նկատուին ժամանակագրութեանս, ուսկից կրնայ գուշակուիլ՝ որ ուրիշ պարագաներու մէջ ևս օգտուած ըլլայ. սակայն՝ Բագրատունեաց գովաբան երրորդ պատմագիրն այնքան տոգորուած է Խորենացիով, որ կը դժուարինք որոշել ժամանակագրութեանս անոր մէջ թողած ճիշտ բաժինը։

Ստ. Ասողիկ՝ կրկնակի նշանաւոր է՝ նկատմամբ ժամանակագրութեանս. նախ որ բաւական փոխառութիւններ ըրած է անկէ, և այդ փոխառութիւնները տեղ տեղ այնքան բառական են և հաւատարմօրէն արտագրուած, որ Պտղոմեանց անուանքը ուղղագրելու ձևերուն և տարեթիւերուն մէջ՝ մինչև անգամ իր աղբեր վրիպակներէն իսկ զգուշացած չէ — եթէ ընդօրինակողներէն յառաջ եկած չհամարինք այդպիսի վրիպակներ։ Աւելորդ կը համարինք մանրամասն նշանակել այդ փոխառութիւնները. բաւական է աչք մը տալ Ա. Գրքի Ա. գլխում՝ Պարսից աքեմենեան թագաւորաց ցանկին — որ յէջ 23 — և Գ. գլխում՝ Հրէից քահանայապետներու մասին աւանդածներուն, համոզուելու համար՝ թէ նա ուղղակի իր առջևն ունեցած է Շիրակացւոյ ժամանակագրութիւնը։

Ուրիշ կերպ անկարելի է այդպիսի բառացի նմանութիւն, բոլոր մանր պարագաներով։

Միայն Հերովդէսի իննևտասաներորդ տարին՝ զոր հանդիպցուցեր է Տիբերի հնգևտասաներորդ տարւոյն, կը պակսի Շիրակացւոյ քով. թէպէտև անոր յաջորդող նախադասութիւնն իսկ՝ «Յիսուս ծնեալն Աստուծոյ, ըստ մարգարէութեանց որ զնմանէ, գայ ի չարչարանս» երկուստեք նոյն է։ Երկրորդ՝ Ասողիկը միակն եղած կը կարծեմ, որ իր պատմութեան Ա. գլխում երկիցս կոչած է Անանիա Շիրակացին՝ — Որոգինէսի հետ ի միասին — Եւսեբիոսէն և Հրէից բաբունիներէն տարբեր կերպով ներկայացուած դարագլուխ մը որոշելու համար. այսինքն է՝ Եգիպտոսէն ելնելէն մինչև Սողոմոնի ձեռքով կատարուած տաճարի շինութիւնը։ Ըստ կեսարացի ժամանակագրին՝ 480ին, իսկ ըստ Անանիայի և Որոգինեայ 490ին ըլլալու էր, կ'ըսէ։ Ափսոս որ Շիրակացւոյ ժամանակագրութեան այդ տեղւոյն մէջ միայն առաջին թիւը «Ն....» մնացած է, իսկ յաջորդն եղծուած։ Մատենադարանիս Զ. Ոսկեփ. թիւ 1091, որ համառօտագրութիւն մ'է, ունի «ՆՂ»։ Սակայն դժուար է՝ որ այսպէս նշանակուած ըլլար նաև Ասողիկի գործածած օրինակին մէջ. ապա թէ ոչ՝ նա Եւսեբիոսէն իբրև տարբեր բան մի պիտի չկոչէր, և ոչ ալ կանգ առնոյր՝ հաշուելու և հաստատելու անոր ճշդութիւնը։

Սամ. Անեցի՝ թէև Անանիայի ժամանակագրութիւնն որոշակի չյիշեր, ի շարս իր գործածած աղբիւրներուն. սակայն խնամոտ բաղդատութիւն մը ցոյց կու տայ յայտնապէս, որ ճանչցած էր զայն, այլ և ընդարձակաբար օգտուած անկէ։ Դժուար է այդ փոխառութիւնները ծայրէ ի ծայր նշանակել, անով մանաւանդ՝ որ ադոնց շատերը կը գտնուին — ինչպէս տեսանք — Եւսեբիոսի և Խորենացւոյ քով իսկ, զորոնք յաճախ յանուանէ կը կոչէ։ Հետևաբար՝ մենք կ'ուզենք հոս ցոյց տալ միայն այն մի քանի տեղիքը, որոնք գէթ Եւսեբիոսին քով չկան և Անանիայի ժամանակագրութեան կը համաձայնին։ Յէջ [1] 12–14, Սեմայ, Քամայ և Յաբեթի ծննդոց մասին խօսած ժամանակը, կը յայտարարէ նա, թէ «Բայց Թողլով զանվաւերսն՝ ի գրոց աստուածայնոց սկսցուք շա-

1. Կոչումները կ'ըլլան Էջմիածնի 1893ի հրատարակութեան հաձայն։

*բագրել»։ Սակայն համեմատելով Սամուէլի այդ երեք էջերը՝ Ծննդոց Գրքի Ժ. գլխում աւանդուածներուն հետ, կը գտնենք առաջնոյն քով այնպիսի ազգագրական կամ աշխարհագրական անուններ, որոնք վերջինիս մէջ չկան և չէին ալ կարող լինել. զի Ծննդոց գրքէն ուշ և հեթանոսական ծագումն ունին։ Արդ՝ այս ամենայն — իրենց յարակից տեղեկութիւններով հանդերձ — Շիրակացւոյ խմբագրութեան Ա. մասէն՝ առնուած են անտարակոյս։ Դարձեալ դիտելու է, որ Եւսեբիոսի Ժամանակագրութիւնը՝ Կոստանդիանոսի Քառանամեակովը կ'աւարտի. ուրեմն՝ անկէց անդին յաջորդ կայսերաց և անոնց ժամանակը կատարուած այն դէպքերը երբ Շիրակացւոյ Ժամանակագրութեան մէջ աւանդուածներուն կը զուգընթանան, մանաւանդ թէ երբեմն երբեմն բառացի կերպով իսկ անոնց հետ կը նոյնանան, սխալած չենք ըլլար, եթէ եզրակացընենք, որ ուղղակի կամ անուղղակի կերպով անկէ օժանդակուած են։ Այս կարգէս են, օրինակի աղագաւ, յէջ 65, Կոստանդին կայսեր և Կիւրեղ Երուսաղէմի հայրապետի օրով Ս. Խաչի երևումն յԵրուսաղէմ, յամին 352 Անդրէաս Կրետացու ձեռքով երկհարիւրամեայ շրջանի հաստատութիւնն և Արտեմոնի ընթերցուածի դրութեան յիշատակութիւնը. որուն համար կը յարէ Սամուէլ. «Ցայսմ ժամանակի ասեն լեալ»։ Յէջ 66, Վաղէսին ժամանակակից կը դրուին մեծն Բարսեղ, իր եղբայրը՝ Գրիգոր և Գր. Աստուածաբանն, և Ներսիսի աքսորն «ի կղզիս»։ Յէջ 71, Մարկիանոսի հրամանաւ Քաղկեդոնի ժողովն և 636 հայրապետաց գումարուիլն։ Յէջ 72, Զենոնի ձեռքով Քաղկեդոնի ժողովին դէմ հրատարակեալ գրուածն ու երկոտասան նզովքը։*

*Իրարմէ աւելի կամ պակաս աղերս ունին Ժամանակագրութեանս հետ նոյնպէս Անանիա Սանահնեցի, Սարկաւագ վարդապետ, Վարդան, Կիրակոս, Մխ. Ապարանեցի և ուրիշ անտիպ հեղինակութիւններ, զորոնք առիթ ունեցեր ենք կարդալու և դիտելու։ Մէկ խօսքով Շիրակացւոյ Ժամանակագրութիւնն՝ այն ազդեցութիւնը ունեցած է ազգային ժամանակագիրներու վրայ, ինչ ազդեցութիւն որ ունեցեր է անոր Տումարը*[1] *յաջորդ դարերու տոմարագրաց նկատմամբ։*

*Երկու խօսք ալ Ձեռագրերու մասին։ Ամբողջական օրինակն՝ որ իբրև բնագիր ծառայած է հրատարակութեանս, է մեր Մատենադարանի թիւ 739 (ԺԹ. Ճառընտիրը) դրչագիրը, զոր յամին 1836 ընդօրինակած է Հ. Եփրեմ Վ. Սեթեան՝ Կարնոյ առաջնորդ՝ Կարա-*

պետ վարդապետի հին և մանր երկաթագրէն[1]. որը գրուած է, — Հ. Սէթեանի ըսածին համարձայն — Հայոց ՆԼ. թուականին։ Այս՝ խոր հնութեան կամ լաւ պահուած չըլլալուն համար, հետեւեալը ծանօթագրած է նա իր ընդօրինակութեան վերջը. «Ծանու աշխատութեամբ պէտք եղեն՝ ընթեռնուլ և գրել զանընթերցանելի տեղիսն, առ փտելոյ ի տամկութենէ, և ծակոտելոյ ի հնութենէ»։ Ընդօրինակողի այս հակիրճ յայտարարութենէն դիւրաւ կարող են ընթերցողք՝ ոչ միայն գաղափար մը կազմել հին երկաթագրի կացութեան վրայ, այլ եւ գուշակել՝ թէ սխալներ ևս սպրդած ըլլան անոր ընդօրինակութեան մէջ։ Եւ իրօք այսպիսի սխալներու թիւը նուազ չէ՝ ոչ միայն յատուկ անուանց, այլ նոյն իսկ այբուբենական թուոց և բառերու ուղղագրութեան մէջ։ Այսպիսի սխալագրութիւններ աւելի զգալի կերպով տեսնուեցան Եւսեբիոսի Քրոնիկոնի Նախնեաց թարգմանութեան և անկէ փոխառեալ տեղերու բաղդատութեամբ, ինչպէս նաև Հիպպողիտեայ ժամանակագրականաց լատին հին թարգմանութեան հետ ըրած համեմատութիւններէն։ Սակայն, հանդերձ այսու, մենք ենթադրելով՝ որ այդպիսիք կարող էին հին երկաթագրին իսկ յատուկ լինել — ըստ մասին — չուզեցինք ուղղագրել. որպէս զի հայերէն բնագիրը հաւատարմութեամբ ներկայացուի՝ ինչպէս որ է։

Կան վանիս գրատան մէջ ուրիշ երկու գրչագրեր ևս, որոնք տարբեր կամ պակասաւոր կերպով կը ներկայացնեն մեզ՝ մի և նոյն գրուածը։ Անոնցմէ մին — թիւ 1091 — է Զ. Ոսկեփորիկը, նոտրագիր հին և փոքրիկ. որը, բաց ի շատ մը հեղինակաւոր և ամ-

1. Այս գրչագիրս՝ նոյն կը թուի լինել Էջմիածնի Մատենադարանի՝ երկաթագիր օրինակին հետ (թիւ 102 ըստ Գէորգեան Ցուցակի). որովհետև սա ևս Հայոց ՆԼ. թուականին գրուած կ'աւանդուի (տես «Արարատ» 1896 թ. փետր. եր. 96) ըստ Գալուստ Տ. Մկրտչեանի, և կը պարունակէ Շիրակացւոյ ուրիշ ճառեր ևս։ Կէտ մը սակայն՝ որ տարակուսելի կ'ընէ նոյնութիւնը, է հետևեալը. այսինքն՝ թիւ 102 ձեռնագիրն եթէ Սիմէոն Ապարանեցւոյ ձեռքով քովէ քով բերուած և կազմուած է, Հայոց ՆԼ. թուին գրուած աւելի հին Զ-ի մը հետ, ըստ ինքեան պիտի պարունակէր նոյնպէս Շիրակացւոյ ժամանակագրութիւն ևս։ Եւ սակայն Գալ. Տ. Մկրտչեանի լռութիւնը հակառակը կը թուի հաստատել։ Կարելի՞ է՝ որ Քրիստոսի 1836 թուականէն վերջ նորէն քայքայման և այդ մասի կորստեան ենթարկուած ըլլայ Զ-իրս։

բողջական գրուածներէ, կը պարունակէ եւ հետեւեալները. Ա. «Ծնունդք յԱդամայ և Թիւք նոցին (մինչև ցԿոստանդին Պոգոնատոս կայսր). — Բ. Թագաւորք Հայոց ի Նոյէ (մինչև ցԱրտաշիր, վերջին Թագաւոր Արշակունի). — Գ. Հռոմոց Թագաւորք (այսինքն՝ կայսերք Հռովմայեցւոց՝ մինչև ցՓոկաս). — Դ. Դարագլուխք կամ չափմունք ժամանակաց» (սկսեալ յԱդամայ մինչև ցՍ. Սահակ և ցերկրորդ Յազկերտ [1]։ Դիտել կու տանք՝ որ այս հատուածները քաղուած են, անտարակոյս, ընդարձակ գրուածէ [2] մը, և կը կազմեն Ան. Շիրակացւոյ ժամանակագրութեան կմախքը։

Իսկ երրորդ պակասաւոր օրինակն է մեր — թիւ 222 — գրչագիրը (Է. Ճառընտիրն), բոլորգիր։ Գրչին Ստեփաննոսի՝ յիշատակարանը — տարբեր գրով — գրուած է Հայոց ՊԾԱ. Թուականին (= 1402)։ Այս գրչագիրս կը ներկայացնէ մեզ — 306–424 էջերում — բաց ի 2. ծանօթութեան մէջ վարը յիշուած Մ. Քերթողահօր վերագրուած ժամանակացոյցէն, յէջ 12–14, — նաև Շիրակացւոյ ժամանակագրութեան վերջին մասը. այսինքն է՝ Մեծն Կոստանդիանոսէն սկսեալ՝ մինչև Կոստանդին Գի. որդւոյն՝ Յուստիանոսի երկրորդ տարին, ու խազրաց տիրապետութիւնը՝ Աղուա-

1. Այս հատուածս, որ կ'աւարտի հոն՝ ուր վերջացած է նաև Մ. Խորենացւոյ պատմութիւնը, մեծ նշանակութիւն ունի պարզելու մի ուրիշ թիւրիմացութիւն։ Այսինքն է՝ մի ուրիշ գրչագրի մէջ — որուն վրայ պիտի խօսինք քիչ ետքը — ժամանակացոյց Մովսիսի Քերթողահօրն՝ խորագրի ներքև այդ հատուածը մէջ բերած ժամանակ, անծանօթ գրիչ մը երկիցս կը յիշէ նաև Հերակլ կայսրը։ Այսինքն՝ մէկ մը հաշուելով Կոստանդիանոսի ԻԱ ամէն մինչև Հերակլէսի ԺԸ. տարին՝ ՅՁ ամ, որով կը կազմուի Խոսրովի մահուան և խաչին յԵրուսաղէմ դառնալու դարագլուխը. մէկ մ'ալ վերջը, հաշուելով Ադամէն մինչև նոյն Թագաւորի ԺԸ. տարին՝ ՐՁՁ ամ։ Այս յիշատակութենէս թերևս հակախորենեանք ուրիշ հետևութիւն հանեն. սակայն ըստ իս անոր միջանկեալ յաւելուած ըլլալն՝ այդ պարագաներով իսկ անտարակուսելի է։ Հաւանօրէն Շիրակացւոյ կողմէն եղած է այդ յաւելուածը, զի համաձայն է թէ՛ անոր ժամանակին և թէ՛ գրութեանը։

2. Այդ գրուածը կարելի չէ Սեբէոսի Ա. Դպրութեան հետ նոյն համարուիլ. որովհետև հոս կը պակսին Ադամէն սկսեալ մինչ հռովմէական կայսերքը։ Եւ ոչ իսկ Ասողիկի ժամանակագրութեան հետ, վասն զի հոս Հռոմոց Թագաւորները Փոկասով կ'աւարտին, մինչդեռ Տարօնեցին յառաջ կը վարէ մինչև իր ժամանակը։

նից, Հայոց ու Վրաց։ Այն տեսակէտով, որ Շիրակացւոյ ժամանակագրութեան՝ Եւսեբիոսի հետ ունեցած աղերսներուն դադրած տեղէն անդին եղած մասը միայն կը ներկայացնէ մեզ գրչագիրս, յոյժ նշանակալից է. այսինքն՝ սուով իսկ կրկին կը հաստատուի նախընթացաբար մեր յայտնած կասկածը, անոր ինչ ինչ կէտերով եկամուտ ըլլալու նկատմամբ։ Ցամենայն դէպս՝ այդ երկու գրչագիրքն ևս — թէև մասնական կերպով — պիտի ծառայեն բնագրի խանգարմունքը վերականգնելու։ Եւ այս նպատակաւ՝ ի ստորև բնագրին կը դնենք անոնց էական տարբերութիւնները, չունենալով մի ուրիշ կատարեալ օրինակ։ Այդ տարբերութիւններէն պիտի իմանան ընթերցողք, արդեօք մի և նոյն բնագրէ՞ն յառաջացած են աղոնք, թէ անկէ բոլորովին անկախ յաղբերաց։ Գրչագրերէս առաջինին, այն է՝ Զ. Ոսկեփորիկի տարբերութիւնները կը նշանակուին ԶՈ մենատառերով. իսկ վերջնոյն, այսինքն է՝ Է. Ճառընտրի տարբերութիւնքը՝ ԷՃ մենատառերով, դիմացն ալ փոքր թուանիշներ։ Բնագրի լուսանցներում գոյութիւն ունեցող յաւելուածները աստղանշիւ կը դնենք ի ստորև. իսկ մեր յատուկ ծանօթագրութիւնքը փակագծով կամ տարբեր թուահամարներով, եթէ մեզմէ անկախ արգելքներ չըլլան։

Դարձեալ՝ կը ծանուցանեմ, որ, ինչպէս Մ. Խորենացւոյն՝ այսպէս և միւս հեղինակութեանց վերագրուած մասերում, այն տեղիքը՝ որք չեն գտնուիր կամ համաձայնիր սոանց ծանօթ գրուածոց և թարգմանութեանց, այլ կամ անծանօթ յաղբիւրներէ առնուած են, և կամ խմբագրողէն, տարբեր գրով կը տպուին կամ կ՚ընդգծուին։ Հիպպողիտոսի ժամանակագրութեան լատին հին թարգմանութեան՝ ասկէց ունեցած տարբերութիւններէն գէթ տարեթիւերը միշտ, և յատուկ անուններն ալ ընդհանրապէս՝ փակածի մէջ առընթեր կը նշանակենք Հ մենատառիւ։ Իսկ Եւսեբիոսէն — ըստ Հայեցի հին թարգմանութեան և բառացի կերպով — քաղուած իւրաքանչիւր պարբերութեան վերջը կը նշանակենք փակագծի մէջ համապատասխանող էջերը, յամին 1818 և 1877 վենետկեան տպագրութեանց համաձայն. այսինքն է՝ Քրոնիկոնի և Եկեղ. Պատմութեան։

Այս կերպով ծանօթացնելով ուշիմ ընթերցողները Շիրակացւոյ անտիպ գործին հետ, ի լոյս կ՚ընծայենք զայն, տպագրուածներն ըստ կարելւոյն ամբողջացնելու համար։ Մեր դուզնաքեայ աշխատասիրութեամբը կը յուսանք, միանգամայն, օգտակար ծառայու-

*թիւն մը մատուցած ըլլալ՝ ոչ միայն մերասեր, այլ և օտար բանասիրաց. զի անով միջոց և դիւրութիւններ պիտի ունենան՝ թէ նորանոր ուսումնասիրութիւններ և թէ կատարեալ հրատարակութիւններ ընելու նոյն՝ և նման ուրիշ գործոց, որով միայն եւ մեր աշխատութիւնը պիտի վարձատրուի։*

**Հ. Բ. ՍԱՐԳԻՍԵԱՆ**

H. B. Sargsian.



# ԱՆ. ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ 1)

## ԽՄԲԱԳԻՐ ՅՈՐԻՆԵԱԼ Յ՚ Է. ԴԱՐՈՒ

## Ի

## ՀՆԱԳՈՅՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱՑ

ՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ 2). — *Ադամ [1] նախաստեղծն, սա կեցեալ ամս երկրիւր եւ երեսուն՝ ծնանի զՍէթ։ Եւ եկեաց ամս եւթն հարիւր, մինչեւ ի հարիւր եւ հինգ ամն Մաղաղայէլի։ Սէթ [2] կեցեալ ամս երկերիւր և հինգ՝ ծնանի զԵնովս. և եկեաց ամս Չէ, մինչև ի քսան ամն Ենովքայ։ Սորա երկուքն յարձանագրութեանցն՝ ընդդէմ երկուց հանդերձելոցն, որպէս ասէ Յովսեպոս* 3). *Թէպէտև ուրն անյայտ է։ Ենովս [3] որ առաջին յուսացաւ կոչել զԱստուած։ Եւ ընդէ՞ր արդեւք այս, և կամ վասն որո՞յ պատճառանաց նախն է ասացեալ կոչելոյն զԱստուած. կամ*

1. ՋՈ. *Ծննունդք Ցադամայ և թիւք նոցին։* Ադամ *եկաց* ՄԼ
» *ամ, և ծնաւ զ*Սէթ։ 2. Սէթ *ամս* ՄԵ՝ *միաւրեայ. և*
» *լինի* ՆԼԵ։ 3. Ենովս ՃՂ. ՈԻԵ։

1). *Սոյն խորագիրը մենք դրինք, զի բնագիրն առանց խորագրի էր։*

2). *Այս վերնագրովս կը սկսի բնագիրը։ Դիտելով որ Ադամէն կը սկսի, ա՛լ չենք կարող կասկածել՝ որ պակասաւոր ըլլայ սկիզբէն։ Գուցէ ի սկզբան հակիրճ յառաջաբան մ՚ալ ունեցած ըլլար, զոր յետոյ հաւաքողք եւ ընդօրինակողք դուրս թողած են. և կամ հեղինակին ուրիշ գրուածի մը կը յաջորդէր, իբրեւ շարայարութիւն։*

3). *Իրօք՝ Սէթեան արձանագրութեան վերաբերեալ այս հատուածս կը գտնուի Յովսեպոսի քով (Հնախօս. Գիրք Ա. գլ. Բ.) աւելի մանրամասնօրէն. բայց երբայեցի հնախօսը չի նշանակեր իր աղբիւրն, ուսկից առած է։ Սինկեղլոս* (Chronologia, ed. Bonæ, p. 29) *Բերոսոսի քաղդէացւոյ և Մանեթոնի գրուածներէն յառաջ եկած կը կարծեցնէ, ըսելով.* «Qui duabus tabulis infra locandis, men-

ո՛րպէս կոչելն իմանի։ Քանզի Ադամ ճշմարտութեամբ աստուածաստեղծն, և ի բերանոյ Աստուծոյ առեալ ասի պատուէր. այլ և յանցուցեալ և ի թագստեան եղեալ, զՈ՛ւր եսն յԱստուծոյ՝ և ոչ յայլ ումեքէ հարցանի։ Սապէս և զվճիռ վարկին ի նմին բերանոյ լսէ. իսկ յետոյ և Աբէլ մերձաւոր և ծանաւթ Աստուծոյ լեալ՝ պատարագս մատուցանէ, և ընկալեալ լինի։

Արդ՝ սոցա այսպէս ընդունելութեան և ծանաւթութեան Աստուծոյ լինել, ե՞ր աղագաւ առաջին սա ասի կոչել զԱստուած, և այս յուսով։ Այդ զայդմն վասն սորա ի տեսութեանց՝ ի հրաւիրեալսն մեր յուղարկեսցուք տեղի. իսկ որ առձեռն պատրաստն է ասասցուք։ Քանզի ի պատուիրանազանցութեան գտեալ առաջինն ի մարդկանէ՝ ի դրախտէն և յԱստուծոյ՝ չարութեան աղագաւ, որպէս ասացեալ է, գտանի արտաքսահմանեալ։ Զկնի եւ ընտանեգոյնն Աստուծոյ՝ յորդւոցն Ադամայ՝ ի հարազատէն իւրմէ սպանանի յեղբաւրէ։ Յետ որոյ՝ ոչ բանիւ ինչ աստուածայնւոյ, և ոչ յայտնութեան ինչ իրիք եղելոյ, ի տարակուսանս և յանյուսութեան ազգ մարդկան համարեալ լինի. այդ և ինքնահաճոյ արդարեւ գործս. յորոց միջի սա քաջայոյս եղեալ՝ ուղղութեամբ հանդերձ՝ կոչէ զԱստուած։ Իսկ կոչելդ կրկնակի իմանի. կա՛մ անուանել որպէս մոռացեալ, կամ յաւգնականութիւն կարդալ։ Արդ՝ անուանել որպէս մոռացեալ՝ ոչ է ի դէպ. զի ոչ բազմութիւն ամաց ընդ մէջ, որ ի մոռացումն նոցա զԱստուածդ ածէր անունն, և կամ զնոյն ինքն որոյ անունն. և ոչ դարձեալ մահու և թաղման դեռ ևս յԱստուծոյ ստեղծեալն հասեալ է։ Ապա ուրեմն յաւգնականութիւն կոչէ սա զԱստուած։

Սա կեցեալ ամս ՃՂ, ծնանի զԿայինան։ Եւ եկեաց ամս ՋԺԵ, մինչև ի ԺԳ. ամն Մաթուսաղայի։

tem attentius adiecerit duorum istius modi scriptorum, quos memoravimus commentitiam scriptionem, Berosi dico et Manethonis »...։

Դիտելով՝ որ Յովսեպոսի այս տեղին Եւսեբիոսի քով չկայ, կը հետևի՝ որ Խորենացին ուղղակի Յովսեպոսէն առած է զայն. այսպէս նաև Աբգարու կնոջ Հեղինէի և ուրիշ նիւթոց վերաբերեալ այն մանրամասնութիւնքը, որոնք թէև աղերս ունին Եւսեբիոսի հետ՝ բայց անկէ կը տարբերին ուրիշ պարագաներով։ Երկրորդ՝ դիտելու արժանի կէտ մ'է և այս. այսինքն թէ՝ Սինկեղղոսէն յառաջ ապրած և գրած է Խորենացի իր Պատմութիւնը, ապա թէ ոչ՝ անոր ծանօթ պիտի ըլլար, ի հարկէ, այն ժամանակագրին՝ Յովսեպոսի յիշեալ տեղւոյ մասին տուած մեկնութիւնը, եւ նա կոչած կ'ըլլար զայն, կամ ըստ այնմ բացատրած։

Կայնան[1] կեցեալ ամս ճՀ, ծնանի զՄաղաղայէլ. եւ եկեաց ամս ՉԽ, մինչեւ ՋԱ. ամն Ղամեքայ։

Մաղաղայէլ[2] կեցեալ ամս ճԿԵ, ծնանի զՅարեդ. եւ եկեաց ամս ՉԼ, մինչեւ ԽԸ. ամն Նոյի։

Յարեդ[3] կեցեալ ամս ճԿԲ, ծնանի զԵնովք. եւ եկեաց ամս Պ, մինչեւ ՄՋ. ամն Նոյի։

Ենովք[4] կեցեալ ամս ճԿԵ, ծնանի զՄաթուսաղայ. եւ եկեաց ամս Մ մինչեւ ԼԳ. ամն Ղամեքայ, եւ հաճոյ եղեալ Աստուծոյ փոխի։ Սա յետ ծնանելոյ զՄարուսաղայ ամաց Մ.ց՝ արժանի եւ հաճոյ վարս ստացեալ, որպէս գիտէ որ հաճեցաւն, փոխեալ լինի ի միջոյ ամպարշտաց. զորոյ զպատճառն յետոյ հաստուսցուք։

Մաթուսաղայ[5] կեցեալ ամս ճԿԷ, ծնանի զՂամեք. եւ եկեաց ամս ՊԲ, մինչեւ Ո. ամն Նոյի. եւ անդէն իսկ առ ջրհեղեղաւն վախճանեցաւ։

Ղամէք[6] կեցեալ ամս ճՁԸ, ծնաւ որդի, եւ անուանեաց զանուն նորա Նոյ։ Եւ եկեաց ամս ՇԼԷ, մինչեւ ի ՇՂԵ. ամն Նոյի, եւ մեռաւ չորիւք ամաւք յառաջ քան զՄարուսաղայ հայր իւր։

ՎԱՍՆ ՆՈՅԻ. — Եւ ընդէ՞ր արդեւք զսա միայն որդւոյդ անուամբ յորջորջեաց. իսկ վասն այլոցն ամենեցուն պարզաբար ասաց՝ թէ ծնան. զորմէ ընդդէմ իմն մարգարէանայ հայրն. Սա, ասէ, հանգուսցէ զմեզ ի գործոց, և ի տրտմութենէ ձեռաց, և յերկրէ՝ զոր անէծ տէր Աստուած. որ եղև ոչ հանգիստ, այլ ջնջումն որ ինչ միանգամ ի վերայ երկրի։ Ինձ թուի, հանգուցանելն՝ դադարեցուցանել. իսկ դադարեցուցանելն զամպարշտութիւնս և զչարիս՝ սատակմամբ մարդկան երկրագործաց 1) դարուն երկրորդի։ Քանզի գեղեցկաբար ասաց, թէ ի գործոց մերոց, որ է յանաւրէնութեանց, և ի տրտմութենէ ձեռաց՝ որովք կատարեմք զպղծութիւնս։ Բայց արդարև հանգչին ըստ այսմ մարգարէութեան ոչ ամենեքեան, այլ կատարեալքն յառաքինութեան ոգիք. յոր-

1. ԶՈ. կայինայն ճՀ. ՁՂԵ։ 2. Մաղաղիէլ ճԿԵ. ՋԿ։
» 3. Յարեդ ճԿԲ. ՌՃԻԲ։ 4. Ենովք՝ ճԿԵ. ՌՄՂԵ։
» 5. Մաթուսաղա՝ ճԿԵ. ՌՆԾԲ։ 6. Ղամէք՝ ճԲ. ՌՈԼԴ։

1). Մ. խոր. Ա. գլ. Դ. ունի ուղիղը՝ «դադրագործաց»։

ժամ չարեք՝ իբրև հեղեղաւ ջնջեալք մաքրին, իբր առ Նոյիւ մո- լեալքն ի չարիս։ Իսկ որդւոյդ անուամբ՝ մեծարեաց զնա գիր, իբրև զյայտնի և զնշանաւոր, և զարժանի ժառանգ Հայրենակա- նացն ժառանգութեան։

ԱՆԴՐԷԱՍԻ. — Նոյ [1] եղեալ ամաց հինգհարիւր՝ ծնաւ երիս որդիս՝ զՍեմ, զՔամ, եւ զՅաբեթ. և յետ հարիւր ամի ծննդեանն Սեմայ՝ եկն ջրհեղեղն յամի վեցհարիւրորդի կենացն Նոյի, և կա- լաւ զերկիր ամ մի։ (Եւս. Քր. Ա. էջ 128)։ Եւ անտի յԱդա- մայ մինչև ի ջրհեղեղն ազգք տասն (Հիպ. 11), ամք ՍՄԽԲ (Հ. 2242)։

Եւ եկեաց Նոյ յետ ջրհեղեղին ամս ՅԾ, մինչև Զ. ամն Երքրայ։ Եւ այս են ծնունդք Սեմայ։ Սեմ [2] էր ամաց ՃԲ (Հ. 100), ծնաւ զԱրփաքսադ յերկրորդում ամին յետ ջրհեղեղին. եւ եկեաց ամս Շ, մինչև ի Ճ. և Ա. ամն փաղեգայ։

Արփաքսադ [3] եղեալ ամաց ՃԼԵ՝ ծնանի զԿայինան. և եկեաց Կայինան [4] ամս ՅԼ, մինչև Սաղայ [5]։ (Սաղայ) եղեալ ամաց ՃԼ, ծնաւ զԵբեր. և եկեաց ամս ՆԶ, մինչև յերրորդ ամն Սերուքայ։

Եբեր [6] եղեալ ամաց ՃԼԴ, ծնաւ զՓաղեգ. և եկեաց առ նովաւ ամս ՆԼԳ, մինչև ԼԸ. ամն Նաքովրայ։ Առ սովաւ [7] (Փա- ղեգաւ) ասի լինել բաժանումն լեզուացն, վասն զի և Փաղեգ՝ ըստ Եբրայեցւոց բարբառոյն՝ բաժանումն կոչի։ (Եւս. Ա. էջ 188)։ Եւ անտի ի ջրհեղեղէն մինչև ցՓաղեգ ազգք հինգ, ամք ՇԻԵ (Հ. 529)։ Եւ յԱդամայ՝ ազգք հնգետասան, ամք ՍՋԿԷ (Հ. 2771)։

Բաժինք երկրի յերից որդւոցն Նոյի, յետ ջրհեղեղին, Սե- մայ, Քամայ, և Յաբեթի, և բաժինք ազգաց նոցա. և անտի սահմանք նոցա, Սեմայ՝ անդրանկանն Նոյի՝ ի Պարսից և ի Բակ- տրիանէ մինչև ի Հնդիկս. և ձգին մինչև յՌինոկորուն։ Եւ Քա- մայ երկրորդի որդւոյն՝ յՌինիկորուրայ մինչև ի Գադերոն, կողմն հարաւոյ։ Եւ Յաբեթի՝ երրորդի որդւոյն՝ ի Մարաց մինչև ի Գա- դերոն կողմն հիւսիսային։ Եւ Յաբեթի՝ գետն Դկղաթ, որ մեկնէ ընդ Մարս և ընդ Բաբելոն։ Եւ Սեմայ՝ գետն Արածանի.

1. ԶՈ. Նոյ՝ Շ. ՍՃԼԴ։ 2. Սեմ՝ Ճ. ՍՄԼԳ։ 3. Արփաքսադ՝
» ՃԼԵ. ՍՑՀԱ։ 4. Կայինայն՝ ՃԼ. ՍՇԱ։ 5. Սաղա՝
» ՃԼ. ՍՈԼԱ։ 6. Եբեր՝ ՃԼԴ. ՈՉԿԵ։ 7. Փաղեկ՝
» ՃԼ. ՍՌԴ։

եւ Քամայ՝ գետն Գեհոն, որ կոչի Նիղոս։ Եւ որ խառնակեցան լեզուք յետ ջրհեղեղին՝ էին եւթանասուն և երկու։ Եւ որ զաշտարակն շինէին՝ այն ազգք և նոր լեզուքն ընդ ամենայն երկիր սփռեցան։ Եւ Նեբրովթ սկայ՝ որդի Քուշայ եթովպացի՝ որսայր նոցա երէ առ ի կերակուր բաւականի։

Եւ այս անուանք են եւթանասուն և երկու ազգացն.

Որդիք Յաբեթի, երրորդի որդւոյն Նոյի, Գամեր, և ի նմանէ Գամիրք.... Մագովգ՝ և ի նմանէ Կեղտք և Գաղատացիք. և Մադայ՝ և ի նմանէ Մարք. Յաւան՝ և ի նմանէ Յոյնք և Հեղլէնք. Թոբէլ՝ և ի նմանէ Թեսաղք. Մոսոք՝ և ի նմանէ (Հիպ. Illirii, Theras a quo) Թրակացիք. Քիտիմ և ի նմանէ Մակեդոնացիք։

Եւ որդիք Թիրասայ՝ (Հիպ. et filii Gamer) Ասքանաս, և ի նմանէ Սարմատք. և Րիփաթ՝ և ի նմանէ Սաւրոմատք, և Թորգոմ՝ և ի նմանէ Հայք. և որդիք Յաւանայ՝ Եղիսա, և ի նըմանէ Սիկեղացիք և Աթենացիք. Թարշիշ՝ և ի նմանէ Վիրք և Տիրենացիք. Կիտիս՝ ուստի Հռոմք, և Ղատինացիք, և Ռոդացիք։ Ընդ ամենայն ազգք հնգետասան։

Եւ ի սոցանէ ելին մեկնեցան կղզիք հեթանոսաց, որ են Կիւպրացիք՝ ի Կիտիացւոց, որդիք Յաբեթի։ Բայց պարձեալ գտանեմք և յայնոցիկ՝ որ են ի կողմանս հիւսիսոյ, որ ազգակից են Կիտիացւոցն։ Եւ ազգքն որ են ի Հեղաս աշխարհի՝ յայնցանէ են, որք յետոյն փոխեցան անդր, որպէս Սայեսացիքն, որ բնակեցան յԱթէնս քաղաքի պատուականացն Յունացն, եւ Թիբեացիք։ Սիդոնացիք ելին և պանդխտեցան, որ են ի Կադմեայ որդւոյ Ագենովրայ. և Կարքեդովնացիք, որ են եկք ի Տիւրոսէ (Sync. Chrom. ed. Bonæ, p. 92). և եթէ այդք ևս իցեն, որ սոյնպէս յետոյ փոխեցան. և յԾղապաս։ Բայց ուսանիմք զճշմարտութիւն սոցա յաւրինաց և ի մարգարէից։ Արդ՝ ելին, ի խառնակել լեզուացն, ազգք հնգետասան. և ունին ազգքս այսոքիկ՝ որ ելին Յաբեթէ, ի Մարաց մինչև ի Սպերիոն (Հ. Vesperum), որ ձգին մինչև յՈվկիանոս, և հային ընդ հիւսիսի։ Մարք, Ազաւանք, Լփինք, Ազանք (Հ. Gargani, Arrei), Ամազոնք, Ծիղրք, Մասքութք, Հայք, Վիրք, Եգերացիք, Խաղտիք, Գամիրք, Պափղագոնացիք, Մարիանդէնացիք, Թիբարէնացիք, Քաղիւկացիք, Մոսինիկացիք, Կողքացիք, Մեղանք, Ղենացիք, Սարմատք, Սաւրոմատք, Մեովտացիք, Սկիւթացիք, Տաւրացիք, Թրակացիք, Բաստառնացիք, Իղիւրիկացիք, Մակեդոնացիք, Յոյնք, Ղիբացիք,

Իստրացիք, Հոնք, Դաւնացիք, Ցապիւգացիք, Կաղաբրացիք, Ոպիկացիք, Ղատինացիք, որ են Հոռոմք. Տիւրենացիք, Գաղիանոսք, Կեղտք, Ղիգուսիանոսք, Կեղտիբերք... Գաղիացիք, Ակիւտանացիք... Ղիւսիտանացիք, Վակիացիք, Կիւնացիք, Բրիտանիկեցիք, որ ի կղզիսն բնակեալ են ։

Եւ այս ազգք են՝ որ գիտեն ի սոցանէ զպրութիւն։ Իբերացիք, Ղատինացիք՝ որով Հոռոմք վարին. Սպանիացիք, Ցոյնք, Մարք, Հայք, որ են սահմանք սոցա ի Մարաց՝ ընդ կողմն հիւսիսոյ մինչև ի Գադիրոն։ Եւ ձգին ի Պաւտամիւղոյ գետոյ մինչև ի Մաստուսիա (Հ. Mastusiadilion), որ է Իղիան։ Եւ այս ազգք եւ երկիրք են նոցա։

Ատրպատական (Հ. Media), Աղուանք, Ամազոնիա, Հայք մեծք եւ փոքունք, Կապադովկիա, Պափղագոնիա, Գաղատիա, Կողքիս, Հնդիկք, Բոսպորիա, Մէ՛ոտիս, Դեռիս, Մարմա՛տիս, Տաւրինիս, Սաւրոմա՛տէս, Սկիւթիա, Եատղիա, Ատտիկէ, Աքայիա, Պեղենիս, որ կոչի Պողոպոնէսիոս, Ակարնէ՛ա, Հէպիրո՛տիս, Իղիւրիս, Ղիքնի՛տիս, Ադրիակէ, յորմէ ծովն Անդրիական. Դաղիա, Ղիւսիտանիա, Իտաղիա, Թուսկենէ, Մասաղիա, Կե՛ղտիս, Գաղիա, Սպանոգաղի՛ա, Իբերիա, Սպանիա մեծ։ Ամ սպառին սահմանքն Ցաբեթի՝ մինչև ի կղզիս Բրիտանիկեցւոց, եւ Հային ամենեքին ընդ հիւսիսի։ Եւ այս են կղզիք նոցա։ Սիկեղիա, Բրիտանիա, Կիբի՛ա (Հ. Eubœa), Ռո՛դոս, Քիոս, Ղե՛սբոս, Կիթեռա, Զակիւնթոս, Կեփաղենիա, Իթակէ, Կորկիւրա, և Կիւղա՛դէս. և մասն մի յԱսիա՝ որ անուանեալ կոչի Յովանիա (Հ. Jonia). և գետն Դկղաթ մեկնէ ի մէջ Մարաց և Բաբիւղոնի։ Այս են սահմանք Ցաբեթի։

Որդիք Քամայ՝ Քուշ, և ի նմանէ Եթովպացիք. Մեստրայիմ՝ եւ ի նմանէ Եգիպտացիք. Փուդ, և ի նմանէ Տրոգղացիք ծակամուտք, Քանաան, և ի նմանէ Աֆրիկացիք և փիւնիկեցիք։ Որդիք Քուշայ՝ Սաբա, և Եւիղաթ, և Սաբեկաթա, և Հռեգամայ, և Սաբաթա։ Եւ որդիք Հռեգամայ՝ Սաբա, եւ Ցուդադան (Հ. Dadan)։ Եւ Քուշ ծնաւ զՆեբրովթ։ Եւ Եգիպտացիք՝ հանդերձ Մեստրայիմաւ հարբն իւրեանց առնին ութ. քանզի ասէ, թէ Մեստրայիմ ծնաւ զՂուդիիմ, և ի նմանէ ծնան Ղիւդացիք. և զՆիգիիմ (Հ. Enemim, և ի նմանէ Պամփիւղացիք. և զՂաբաիմ, և ի նմանէ Ղիւբիացիք. և զՆեփթաղիմ (Հ. Neptoim), եւ զՊատրոսոնիիմ, և ի նմանէ Կրետացիք. եւ զՔեսղոնիիմ՝ և ի նմանէ Ղիւկիացիք, յորմէ ելին Փղշտացիք, և զԲաճարփորիիմ, և ի նմանէ Դակիացիք, յորոց ելին Փիղիստիիմացիք։

Ամենայն ազգք Քանանացւոց՝ հանդերձ Քանանաւ հարբն իւրեանց՝ երկոտասան. քանզի ասէ, թէ Քանան ծնաւ զՍիդոն զանդրանիկն իւր, և ի նմանէ Սիդոնացիք, և զՔետացիս, և զՅեբուսացիս, և զԱմովրացիս, և զԳերգեսացիս, և զԽեւացիս (Հ. Euveum), և զԱրուակացիս. և ի նոցանէ Տրիպոլիսք, և զԱսեննացիս, և զԱրադիոն, ի նմանէ Արադացիք. և զՇամրիմ (Հ. Samareum), ի նմանէ Որթոսեցիք. և զԱմաթի, և ի նը-մանէ Ամաթուսեցիք. ընդ ամենայն ազգք երեսուն և երկու. եւ է բնակութիւն նոցա ՚յՌինոկորուրայ մինչև ի Գադերոն, որ է ընդ հարաւակողմն։

Եւ այս ազգք են՝ որ ծնանին ի նոցանէ։

Եթովպացիք, Տրոգղացիք ծակամուտք, Աղեացիք (Հ. Aggei), Սառակինոսք, Իսաբինացիք, Ճկներք Հեղենացիք, Եգիպտացիք, Փիւնիկեցիք, Լիբեացիք, Մարմարիդացիք, Կարացիք, Փիւղիտացիք, Միւսացիք, Մոսոնիկեցիք, Փռիւգացիք, Միքոնացիք (Հ. Magones), Բիւթինացիք արևմտականք, Նոմադացիք, Լիւկիացիք, Մարիան-դենացիք, Պամփիւղացիք, Մեսիւգացիք (Հ. Minesci) Պիսիդացիք, Աւգաղիացիք, Կիդիկեցիք, Մաւրիտացիք։

Եւ այս ազգք են որ ծնան ի նոցանէ։

Կրետացիք, Մագարացիք, Նումադացիք, Մակրոնացիք, Նա-մասոնացիք (Հ. Nasamones). սոքա ունին յԵգիպտոսէ մինչև ցՈվկիանոս ։

Եւ այս են կղզիք նոցա։

Եպիւկիևիա, Իդակոպուշտա, Լիւպա՛դուսա,, Գա՛ւղոս (Հ. Agaudius), Մե՛ղիտէ, Կերկի՛նա, Մէնի՛գա, Սարդոնի՛է (Հ. Cardinia), Գաղատէ, Գո՛րսիւնա, Կրե՛տէ, Գաւդոս, Լե՛գէ, Թե՛րա, Կարէա՛թոս, Աստիպաղե՛ա, Քի՛ոս, Լե՛սբոս, Տենե՛տոս, Ի՛մբրոս (Հ. Imbrus), Իյա՛րսոս, Սա՛մոս, Կո՛ւլաս, Կնի՛դոս, Նի-սիւրոս և Կիւպրոս մեծ կղզի։

Եւ որ գիտեն ի սոցանէ դպրութիւն՝ են այսոքիկ։

Փիւնիկեցիք, Եգիպտացիք, Պամփիւղացիք, Փռիւգացիք. և են սահմանք Քամայ յՌինոկորուրայ, որ մեկնէ զԱսորիս, և զԵթովպէ, և ձգին մինչև ի Գադիրովն (Հ. Garira)։

Եւ այս են անուանք աշխարհաց նոցա։

Եգիպտոս, Եթիովպէ, որ հայի ընդ Հնդիկս. և միւս ևս Եթիովպէ՝ յորմէ Քուշացւոց (Հ. Aethiopum) գետն ելանէ. Եւրիթրա՝ որ է Կարմիր ծով, որ հայի ընդ արևելս. Թեբայիս,

Ղիւբիէ (Հ. Thebea Libyae), որ ձգի մինչև ի Կորկիւրնենս, Սամմա՛րեն, Սիւրտիս, յորում բնակեալ են ազգք քամն Ամովնացւոց (Հ. Nazamonas), Մակաւք, Տաւտամէացիք, Լիւբէ՝ որ ձգի ի Ղիւպեայ մինչև ի փոքր Սիւրտէոս. Նումիդիա, Մեսոււրիս (Հ. Masseria), Մաւրիտանիա, որ ձգի մինչև յարձանսն Հերակղեայ, որ կայ դէմ յանդիման Գադերոնին (Հ. Heracleites Stalas), և որ առ ծովեզերբ զաւառսն ունի, որ են ի Հիւսիսոյ՝ զԿիղիկիա, զՊամփիւղիա՛, զՊիսիդիա, զՄիւսիա, զԼիգոնդնիա՛ (Հ. Lycaoniam), զՓռիւգիա, զԿամաղիա, զԼիւկիա, զԿարիա, զՄիւս ևս զՄիւսիա, զՏրովա՛դա, զՈվղիկրա, զԲիւթինիա (Հ. Bityniam Veterem), զառաջին փռիւգիա։

Ունի և կղզիս զՍարդովնիա, զԿրէ՛տէ, զԿիւպրոս, և զգետն Գեհոն, որ անուանեալ կոչի Նիղոս, որ մէկնէ ի մէջ Քամայ եւ Ցաբեթի, սկիզբն Երեկորեայց ծովուն, այսինքն է՝ ծով Արեմաից կոչեցեալ։ Այս են ազգք Քամայ։

Երեց որդին Նոյի՝ Սեմ. և ի Սեմայ են ազգք քսանևհինգ, որ բնակեցան յարևելս. որդիք Սեմայ՝ Եղամ, և ի նմանէ Էղամացիք*. Ասուր, և ի նմանէ Ասորեստանեայք. Արփաքսադ՝ և ի նմանէ Քաղդեացիք et (Հ. Lydii). Ղուդ՝ և ի նմանէ Ղազոնացիք. Արամ՝ և ի նմանէ Էեստացիք առաջինք։ Զսոսա կասորեաց Աբրահամ։ Եւ որդիք Արամայ՝ Ովս և Ուղ (Հ. Oscevi), և ի նմանէ Ղիւղացիք և Գաթեր (Հ. Gart), ի նմանէ Գասփենացիք. և Մոսոք՝ և ի նմանէ Մասենացիք։

Եւ Արփաքսադ՝ ծնաւ զՍաղա. Սաղա ծնաւ զԵբեր, ի նըմանէ Եբրայեցիք. եւ Եբերեայ եղեն երկու որդիք. փաղեգ՝ (Հ. et Deboc) ի նմանէ կարգի ազգն Աբրահամու։ Եւ (Հ. Tactem et) Յեկտան ծնաւ զԵղմովդադ, ի նմանէ Հնդիկք։ Սաղեփ, ի նմանէ Բակտրիանոսք. և զԱսրամովթ, ի նմանէ Արաբացիք. և զԵդովրամ (Հ. Duran), ի նմանէ կամեղացիք. և զԱգովրա (Հ. Derra), ի նմանէ Արադացիք (Հ. Mardii). զԵզեղ, ի նմանէ Արիանացիք. և զԴէկղամ, ի նմանէ Կէդրուսացիք. և զԳեբաղ, ի նմանէ Սկիւթացիք (Հ. priores). և զԱբիմեէղ, ի նմանէ Վրկանիկք. և զՍաբաթ, ի նմանէ Աբաբացիք առաջինք. և զՈւփիր, ի նմանէ Արամացիք (Հ. Armenii). և զԵւիղաթ, ի նմանէ Գիմնոսոփիստայք, որ կոչին մերկիմաստակք։ Ամենեքեան սոքա յերից որդւոցն Նոյի, ազգք եւթանասուն և երկու։

* Լուս. «Խուժիկք»։

Եւ է բնակութիւն որդւոցն Սեմայ ի Բակտրոնէ մինչև յՌինոկորուրոյն, որ մեկնէ ընդ Ասորիսդ և ընդ Եգիպտոս և ընդ ծովն կարմիր, ի բերանոյ ծովուն՝ որ է յանդիման Ասինեայ. այսինքն է՝ Հնդկաց աշխարհին։

Եւ այս ազգք են որ եղեն ի նոցանէ.

Հեբրայեցիք՝ որ են Հրեայք, Պարսք, Մարք, Պայկաստան, Արուայիկք, Ասորեստանեայք, Վրկանիկք, Հնդիկք, Տապրիկք (Հ. Macardi), Պարթեւք, Գերմակացիք (Հ. Germai), Քղամացիք (Հ. Helymei), Քուշանք (Հ. Cessei), Արաբացիք առաջինք, Կեդարք, Սկիւթացիք, Արտաքացիք (Հ. ultra), Գիմնոսոփիստայք՝ որ կոչին Մերկիմաստք։ Եւ ձգին բնակութիւնք սոցա մինչև յՌինիկորուրոն և ի Կիւղիկիա։

Եւ այս ազգք են ի սոցանէ՝ որ գիտեն դպրութիւն.

Եբրայեցիք՝ որ են Հրեայք, Պարսք, Մարք, Քաղդեացիք, Հնդիկք, Ասորեստանեայք։ Եւ է երկայնութիւն բնակութեան որդւոցն Սեմայ՝ ի Հնդկաց մինչեւ յՌինիկորուրոն, և լայնութիւն ի Պարսից եւ ի Բակտրոնէ մինչեւ ի Հնդիկս։ Եւ այս են անուանք աշխարհաց (Հ. gentium) նոցա. Պարսք՝ հանդերձ ազգաւքն որ շուրջ զնոքաւք են Տապրիկք (Հիպ. Bactrianæ), Վրկանիկք, Բաբիլոն, Կորդուք (Հ. Corbulia), Ասորեստան, Միջագետք, Արաբիա առաջին, Եղամ, Հնդիկք, Արաբիա փառաւոր, Կողմն Ասորւոց (Հ. Cælessyria), Կոմագենէ, և Փիւնիկէ՝ որ է որդւոցն Սեմայ։ Եւ ընդ ամենայն ազգք երից որդւոցն Նոյի եւթանասուն և երկու։

Եւ ազգք՝ որոց ընտրին ի միմեանց լեզուք, են այսոքիկ.

Եբրայեցիք (Հ. et Judei), Ասորեստանեայք, Քաղդեացիք, Պարսք, Մարք, Արաբացիք, Մադիանացիք, Ադիաբենացիք, Տայանոսք, Աղամոսանացիք, Տաճիկք, Մոգք, Կասբք, Աղուանք, Հնդիկք, Քուշանք՝ որ են Եթիոպացիք (Հ. Libyes), Եգիպտացիք, Ղիւբէացիք, Քետացիք, Քանանացիք, Փերեզացիք, Խեւացիք Ամովրհացիք, Գերգեսացիք, Յեբուսացիք, Եդովմայեցիք, Սամարացիք, Փիւնիկեցիք, Ասորիք, Կիւղիկեցիք՝ որ են Տարսացիք, Գամիրք, Հայք, Եգերացիք, Վիրք (Հ. Librani), Սկիւթացիք, Կողքեցիք, Խաղտիք (Հ. Sanni), Բոսպորացիք, Ասինացիք, Սաւրացիք Ղիւկաոնացիք, Պիսիդացիք, Գաղատացիք, Պափղագոնացիք, Փռիւգացիք (Հ. Achai, Thessali, Macedones, Traces), Միսեցիք, Բեսիւացիք, Դարդանացիք, Սարմատացիք, Գերմանացիք, Պանոնացիք՝ որ են Պէոնացիք,

Նովրիկեցիք, Դաղմատք, Հոռոմք՝ որ են Ղատինացիք, Ղիգրացիք, Գաղիացիք՝ որ են Կեղտացիք, Ակւտանացիք, Բրիտանացիք, Սպանիացիք՝ որ են Տիւրենացիք, Հոնք, Մաւրացիք, Բակուացիք, Դեղուտացիք, Սեղեւկացիք, Ափրեացիք, Մազիկացիք, Գարմանք՝ որ են Բերեղացիք (Հ. Marmaredæ), որ երկայնեալ ձգին մինչև յԵթիովպիէ։

Լաւ համարեցայ համառօտիւ ցուցանել եւ զևան եկաց ազգաց՝ որ գնացին յիւրաքանչիւր բնակութենէ, և չոգան բնակեցան յաւտար տեղիս ուրեք ուրեք։

Եւ արդ սկսանիմք յարեւելից. ի Պարսից և ի Մարաց չոգան բնակեցան ի Պարթեւս. և ազգքն որ շուրջ զնոքաւք են՝ չոգան հասին մինչև ի կողմանս Ասորւոց։ Եկք Արաբացւոց՝ Արաբացիք փառաւորք, քանզի այսպէս անուանեցաւ Արաբիա փառաւոր։ Եկք Քաղդեացւոցն՝ Միջագետեայք։ Եկք Մաղիանացւոց՝ Կինեպոկողպիտք, Տրոգղացիք ձկնկերք, և ազգս Յունաց*, որ ունին անուանս հինգ՝ Յունի՛դէս, Արկա՛դէս, Բրիովտացիք, Եողացիք, Ղակոնացիք։ Եւ եկք սոցուն են այսոքիկ. Պոնտացիք, Բւթանացիք, Սպանիացիք, Տրովացիք, Ասիանացիք, Կարացիք, Ղիւկիացիք, Պամփիւղացիք, Կիւրենացիք, և կղզիք բազումք, որ ունին զՄիրտովևական համատարածն։ Եւ ի սոցանէ կղզիք մետասանէ շուրջ զծովուն՝ որ կոչի Հետոմիւրտոս։ Եւ են այսոքիկ. Ա՛նդրոս, Դեննոս, Տե՛ովն (Հ. Tenoemteo), Նա՛քսոս, Կե՛ովս, Կի՛րսոս (Հ. Gyarus), Դե՛ղոս, Սի՛ւփնոս (Հ. Fynus), Ռենեկի՛ւրնոս (Հ. Renea, Cyrnos), Մա՛րաթոն։ Եւ այդ ևս կղզիք մեծամեծք երկոտասան, յորս և քաղաքք բազում բնակեալ են, որ անուանեալ կոչին Սպորա՛դէս, այսինքն՝ ցանք և ցիրք, յորս պանդխտութեամբ բնակեցան Յոյնք։ Եւ են այսոքիք. Եւբի՛ա, Կրե՛տէ, Սիկեղի՛ա, Կի՛պրոս, Կո՛ղաս, Սա՛մոս, Ռո՛դոս, Քի՛ոս, Թա՛սոս, Ղե՛մնոս, Ղե՛սբոս, Սամովթրակէ։ Եւ ի Բիւթացւոց՝ Եւբիա, որպէս ի Յունացն՝ յունական քաղաքք վեշտասան. և են այսոքիկ. Կղազոմենէ (Հ. Cladiomena), Միւտիւղինէ, Փովկէ՛ա, Պրիե՛նէ, Երի՛ւթրէ, Սա՛մոս, Սաե՛ոս (Հ. Teos), Կողո՛փոն, Քի՛ոս (Հ. Cius), Եփեսոս, Սմի՛ւռնա, Պերի՛նթոս, Բւզա՛նդիոն, Քաղկեդո՛ն, Պոնտոս, և Ամի՛սոս, Եղեւթերա։

Հոռմայեցւոց եւ Կիտիացւոց ազգք և եկք են այսոքիկ. Թուսկք, Կիմեղեաւացիք (Հ. Emilienses), Պիւկենացիք, Կամպանացիք, Ապուղեսացիք, Կաղաբերացիք, Ղուկանացիք։

* Լուս. «Եղղենացւոց»։

Ազգք եւ եկք Ափրիացւոց՝ Նեբբենացիք (Հ. Lebdeni), Կինղացիք, Նումիդացիք, Նասամոնենացիք (Հիպ. Saci)։ Եւ են կղզիք հինգ, յորս և քաղաքք հինգ. Սարդոնիա, Կորսիկիա, Գիրբաւ (Հ. Girda) և Բենինգա (Benigga), Կերկինա, Գաղատէ ։

Ազգք և եկք Մաւրացւոց. Ղուսինացիք, Մուսուլենացիք, Տինգիտացիք, Կեսարանացիք։ Ազգք Սպանիացւոց՝ որ են Տիւրենացիք (Հ. Tyrrani et Turrenorum, qui et) Դիէսարակոնեսացիք, Ղիւսիտանացիք, Բետիկացիք, Աւտրիգոնացիք, Բասկոնացիք, Կաղիւկեցիք, որ են Ոսպորացիք 1) (Հ. Astures)։ Այս են ազգք եւ եկք Գաղիացւոց՝ որ կոչին Արքուտացիք, Ղ...ւտենացի, Բաղինացիք, Սիկենացիք, Աւրինացիք։

Ազգք և եկք Գերմանացւոց են այսոքիկ. Մարկոմոնացիք, Բերդինեղացիք, Կիւղացիք, Բիւրենադացիք, Ամոգիւղացիք ։ Եւ ազգք և եկք Սարմատացւոց՝ Ամաքսիքացիք, Գրեկացիք՝ որ կոչին Դրեկոսարմատք։

Եւ զայս ես լաւ համարեցայ յայտ առնել քեզ զանգէտ կողմանս ամենայն ազգաց, և զլերինս անուանիս, և զգետս երեւելիս. որպէս զի և՛ յայսցանէ մի ինչ անտեղեակ գտանիցիս։

Եւ արդ սկսանիմ առնել զազգացն, և առնեմ սկիզբն յարեւելից։ Արուայաստան (Հ. Adiabenici) և Տաձկաստան (Taleni) անդր քան զԱրաբացիս են. Տաճիկն բուն (Հ. Atalenos) անդր քան զՏաճկաստան (Հ. Arabeam) է։ Եւ Աղուանք անդր են քան զԴրունս Կասպից։ Եւ Մեծն Մադիամ՝ ընդ որս մարտեաւն Մովսէս, է՛ անդր քան զԿարմիր ծով (Հ. Mesopotamiam et). և փոքր Մադիամ մերձ առ նա՝ սահմանակիցք են Եգիպտոսի, ուր թագաւորեացն Ռագուէլ (Հ. qui et Jothro) աներ Մովսիսի։ Եւ անդր քան զԳամիրս յաջմէ կողմանէ Հայք, Եգերացիք, Վիրք (Հ. Birrani), Կողքեցիք, Սկիւթացիք, Բոսպորացիք, Խաղտիք, Նաւացիք՝ որ կոչին Սանիտացիք, որ ձգին մինչև ի Պոնտոս, ուր էր բանակն Ափսարուսայ, և Սեբաստոպոլիս, և Նաւահանգիստն Հիւսիսոյ (Հ. Ussilimen) և Փասիս գետ։ Եւ հասանեն ազգքս այսոքիկ մինչև ի Տրապեզոնտ։

Այս են անուանք տասն և երկու լերանցն անուանեաց. Լիբանան, Կաւկաս, Տաւրոս, Ա՛տղաս, Պառնասոս, Կիւթերոն,

1). Աստ պակասին ի հայն 5 տողք. այսինքն՝ անուանք կղզեաց և քաղաքաց Սպանիոյ ։

Եղիկոն, Պարթենիոս, Մասիք (Հ. Nysa), Ղիւկաբանտոս, Պենիոլս, Ողիմպոս (Հ. Libanus)։

Գետք մեծամեծք և անուանիք են քառասուն (Հ. 41). Հինդոս՝ որ է Փիսոն. Նիղոս՝ որ է Գեհոն, Գիղաթ, Եփրատ՝ որ է Արածանի. Յորդանան (Jordanis), Կեփիսոս, Տանայիս, Մէնոս, Եղիմանթոս, Հաղիս, Ասոպիս, Թերմոդոն, Երասխ (Հ. Erasinus), կուր գետ (Հ. Rius), Բոլրիսթենէս, Աղփիոս, Տաւրոս, Եւրոտոս, Մեանդրոս, Ե՛րմոս, Աքսիոս, Պիւրամոս, Բլոս (Հ. Bajus), Ե՛բրոն, Սանգարիս, Քեղոոս (Հ. Achelous), Պաէնեոս (Հ. Peneus), Եւենոս, Եսպարքիոս (Հ. Sperchius) 1), Կահիստրոս, Սիմոիս, Սկամա՛նդրոս, Ստրիւմոն, Պարթենիս, Իստրոս, Ռե՛նոս, Բետէս, Րոդանոս, Եւրիդանոս, Թիբրիս՝ որ այժմ անուանեալ կոչի Տեբե՛րիոս. ընդ ամենայն քառասուն։

Արդ՝ վասն զի յայտ եղև վասն ազգացն՝ յերից որդւոցն Նոյի, որ ընդ ամենայն երկիր սփռեցան, թէ ո՛վ յումէ՛ ծնաւ։ Սեմ՝ անդրանիկ՝ կալաւ զկողմն արևելից. Քամ զկողմն հարաւոյ. Յաբեթ զկողմանս արևմտից և հիւսիսոյ։

Պարտ և պատշաճ է այսուհետև ընթանալ զհետ ամացն թուոց. Փաղէգ[1] եղեալ ամաց հարիւր և երեսուն՝ ծնաւ զՌագաւ. Ռագաւ[2] եղեալ ամաց հարիւր երեսուն և երկուց՝ ծնաւ զՍերուք. Սերուք[3] եղեալ ամաց հարիւր եւ երեսուն՝ ծնաւ զՆաքովր. Նաքովր[4] եղեալ ամաց հարիւր և ինն՝ ծնաւ զԹարայ. Թարայ[5]

1. ՁՈ. փաղեկ՝ ՃԼ. ՍՊԱ։ 2. Ռագաւ՝ ՃԼԲ. ՍՁԻԷ։ 3. Սե-
» րուք՝ ՃԼ. ՎԿԷ։ 4. Նաքովր՝ ՀԹ. ՎՃԼՁ։ 5. Թա-
» րա՝ Հ. ՎՄՁ։

1). Մինչեւ այս տեղ համեմատուած տարբերութիւններէն կը տեսնուի, որ Հիպպողիտոսի լատ. խմբագրութիւնը՝ տեղ տեղ աւելի կատարեալ է բովանդակութեան կողմէն, մինչդեռ հային մէջ կը պակսին։ Սակայն վերջինս ընդհանուր հին անուանց ձևագրութեան եւ տեղեկութեանց մէջ՝ բնագրին — ուսկից թարգմանուած է — աւելի հաւատարիմ մնացած կ'երևի. և այս կողմանէ շատ աւելի հետաքրքրական է, բնագրի քննութեան և վերակազմութեան համար։

Հաւանական է՝ որ փակագծի մէջ դրուած տարբերութիւններէն ոմանք՝ Դինդորֆի հրատարակութեան մէջ ուրիշ կերպ ըլլան. և ասոր համար է, որ կը ցաւինք զանի ձեռքերնիս չունենալուն վրայ։ Յամենայն դէպս՝ այսպիսի պարագայի մէջ իսկ մեր բաղդատութիւնները դիւրութիւն պիտի ընծայեն զանիկակ բա դատել ուզողներուն։

եղեւ ամաց եւթանասնից՝ ծնաւ զԱբրահամ. Աբրահամ[1] էր ամաց եւթանասուն և հնգից, ի ժամանակի իբրև հրաման ետ Աստուած՝ ելանել նմա ի տանէ հարց իւրոց, և գալ յերկիրն Քանանացւոց։ Արդ՝ առնին ի բաժանացն երկրի՝ մինչև ի գալ Աբրահամու յերկիրն Քանանացւոց՝ ազգք հինգ, ամք ՌԺԶ. եւ յԱդամայ՝ ազգք քսան, ամք ՎՅՁԴ (Հ. 3387)։

Բնակեաց Աբրահամ յերկիրն Քանանացւոց ամս քսան և հինգ, և ապա ծնաւ զԻսահակ։ Իսահակ[2] եղեւ ամաց վաթսուն՝ ծնաւ զՅակոբ. Յակոբ[3] եղեւ ամաց ութսուն և երկուց՝ (Հ. 86) ծնաւ զՂեւի. Ղեւի[4] եղեւ ամաց քառասուն և վեցից՝ (Հ. 40) ծնաւ զԿահաթ. Կահաթ[5] եղեւ ամաց վաթսնից՝ ծնաւ զԱմրամ. Ամրամ[6] եղեւ ամաց եւթանասուն՝ ծնաւ զԱհարոն. և յամին ութսներորդի երրորդի կենացն Ահարոնի ելին որդիքն Իսրայէղի յերկրէն Եգիպտացւոց՝ ի ձեռն Մովսիսի[7] առաջնորդին իւրեանց։ Եւ առնին ամք բնակութեան որդւոցն Իսրայէղի յերկրին Եգիպտացւոց՝ ամք չորեքհարիւր (Հ. 470), և յանապատին[8] ամս քառասուն։

Յեսու[9] որդի Նաւեայ իբրև անց ընդ Յորդանան գետ, եկեաց յերկրին Քանանացւոց ամս քսան և եւթն, և ի պատերազմունս՝ ամս վեց. յետ ժառանգեցուցանելոյ զերկիրն վիճակաւք՝ եկաց ամս քսան եւ մի (Հ. 20)։ Արդ՝ առնին, յորմէ հետէ եկն Աբրահամ յերկիրն Քանանու, մինչև ի մեռանելն Յեսուայ որդւոյ Նաւեայ՝ ազգք եւթն, ամք Շ. և յԱդամայ՝ ազգք քսան և եւթն, ամք ՎՊՁԴ (Հ. 3384)։

Յետ մահուան Յեսուայ մեղաւ ժողովուրդն, և մատնեցան Քուսանայ[10] արքային Միջագետաց, և ծառայեցին նմա ամս ութ. և իբրև աղաղակեցին առ Աստուած, յարոյց նոցա իշխան զԳոթոնիէլ՝[11] զեղբայր Քաղեբայ զկրտսեր, որ էր ի ցեղէ Յուդայ։ Սա մարտեաւ ընդ Քուսանայ, և սպան զնա, և տիրեաց ժողովրրդեանն ամս քառասուն (Հ. 31)։ Յաւուրս Սամեղարայ՝ Պամիղեւս

1. ՁՈ. Աբրահամ՝ Ճ. Վ,ՑՁ։ 2. Իսահակ՝ Կ. Վ,ՆՀԲ։ 3. Յա-
» կոբ՝ ՁԵ. Վ,ՇԾԹ։ 4. Ղևի՝ ԽԶ. Վ,ԿԵ։ 5. Կահաթ՝
» Կ. Վ,ՌԿԵ։ 6. Ամրամ՝ Հ. Վ,ՁԼԵ։ 7. Մովսէս՝ Ձ.
» Վ,ՊԺԵ։ 8. Յանապատն՝ Խ. Վ,ՊԾԵ։ 9. Յեսու Նա-
» ւեայ՝ ԻԵ. Վ,ՊՁ։ Փենիէս՝ ԻԴ. Վ,ՋԴ։ 10. Քուսար-
» սաթ՝ Ը. Վ,ՋԺԱ։ 11. Գոթոնիէլ՝ Խ. Վ,ՋԾԱ։

և Պիմիրեա, Պիսոս, Ատղաս, Պանո՛պտես, Դեւկա՛ղիոն ճանաչին (Ափր. առ Սինգեղղոսի, Chron. p. 391)։

Դարձեալ մեղուցեալ՝ մատնեցան Եգղոմայ [1] արքայի Մովաբու, և ծառայեցին նմա ամս ԺԸ. և իբրև դարձան առ Աստուած, յարոյց նոցա իշխան զԱւովդ՝ [2] յազգէ Եփրեմի, որ սպան զԵգղոմ, և տիրեաց ժողովրդեան ամս ութսուն ։ Յետ մահուան Նահովդայ մեղաւ ժողովուրդն, և մատնեցան Յաբխայ [3] արքայի Քանանացւոց, ամս քսան ծառայեալ նմա ։ Ի սորա աւուրս մարգարէացաւ Դեբովրա [4] կին Աղփիդովթայ՝ յազգէ Եփրեմի. և ի նորա ձեռն տիրեաց, զաւրու, որդւոցն Իսրայէղի Բարակ՝ որդի Աբենեեմայ (Հ. Aminoen), ի ցեղէ Նեփթաղէմայ ։ Սա մարտեաւ ընդ Սիսարայի սպարապետին Յաբինայ, և յաղթեաց նմա, եւ տիրեաց որդւոցն Իսրայէղի. եւ զատեցաւ Դեբովրայ զժողովուրդն ամս քառասուն ։ Յաւուրս Դեբովրայ մարգարէուհւոյ՝ որ ընդ Բարակայ, որք ի Դիոսէ (Դիոդորոսէ) վիպասանին, ուստի Պիպկոս անուանեալն Զեւս, Կրոնայ ազգական, յարեւմուտս թագաւորեաց 1). որ ունէր դստերս Երովպեմինոս, Անտիոպէ, Աղկմենէ, Սեղինէ, Դանայովէ, Պերսեւս, Եղեգս՝ կին Զեւսայ ։ Զեւս՝ կենդանութին կոչի, Եշղիդա՝ այր, վասն տուրեւսա չնչոց ։

Յետ մահուանն Դեբովրայ մեղաւ ժողովուրդն, և մատնեցան Մադիանացւոց ամս եւթն ։ Ի սոցա վերայ չոգաւ Գեդէոն [5] երեքհարիւր արամբ, և սատակեաց կորոյս ի նոցանէ բիւրս երկոտասան ։ Սա տիրեաց ժողովրդեանն զամս քառասուն, որ էր յազգէ Մանասէի ։ Յաւուրս Գեդէովնի՝ Զեփոս և Ամփիովն, որդիք Զեւսայ, երեւէին ։ Եւ սորին որդի Աբիմեղէք [6] ամս երիս ։ Յաւուրս Աբիմեղէքայ՝ որք ըստ Գանեմիդեայն, և Պերսեայն, և որք ըստ Երակղեայն, և Արգոսին, և որք ըստ Ղիկուրգոսի աւրինադիր էին՝ ճանաչէին ։

Յետ սորա տիրեաց Թովղա՝ [7] որդի Փիղեայ Աքարեանց (Հ. Caram), որ էր ի ցեղէ Եփրեմի, և տիրեաց ամս քսան եւ

1. ԶՈ. Եգղոմ՝ ԺԸ. ՎՋԿԹ։ 2. Աւովք՝ և Ամէկ՝ Զ. ՏԽԹ։
» 3. Աբիսացիք՝ Ի. ՏԿԹ։ 4. Դեբովրա՛յ՝ Խ. ՏՃԹ։ Ու-
» րէ՛բ, Զէ՛բ՝ Է. ՏՃԺԶ։ 5. Գեդէոն՝ Խ. ՏՃԾԶ։ 6. Աբի-
» մեղէք՝ Գ. ՏՃԾԹ։ 7. Թովղա՝ ԻԴ. ՏՃՁԲ։

1). Ափրիկանոսէն առնուած է այս տեղիս ։ Տես Πεῖκος Δία, առ Հեն. Գելցէրի, Jul. Africanus, I. S. 77–78։

երիս (Հ. 20)։ Յետ սորա Յայիր [1] Գաղաադացի՝ յազգէ Մանասէի. և տիրեաց ամս քսան և երկուս։ Եւ յետ սորա մեղաւ ժողովուրդն, և մատնեցան Ամոնացւոց [2] ամս ԺԸ. և աղաղակեցին առ Աստուած, և յարոյց նոցա իշխան զՅեփթայէ [3] Գաղայադացի յազգէ Մանասէի, և տիրեաց ամս վեց։ Յետ սորա տիրեաց Եսեբովն [4] Բեթղեհեմացի՝ յազգէ Յուդայ՝ ամս եօթն։ Յետ սորա տիրեաց Աղղոմ [5], յազգէ Զաբուղոնի, ամս տասն։ Յետ սորա տիրեաց Եբրոմ [6], որդի Աղեղայ Ափրաթոմացի, յազգէ Եփրեմի՝ ամս ութ ։

Յետ սորա մեղաւ ժողովուրդն, եւ մատնեցան այլազգեաց [7] ամս քառասուն։ Եւ իբրև դարձան՝ յարոյց նոցա իշխան զՍամփսոմ [8] որդի, Մանուէի՝ յազգէ Դանայ, որ մարտեաւ ընդ այլազգիսն, և տիրեաց ամս քսան։ Յաւուրս Սամփսոնի Դեղաղ՝ որ հիւսն Մաժան կոչի, և Երակղէս՝ որդի Զևսայ, ի յԱղկմենեայ ծնեալ, և Երմես եռամեծ երևէին։

Յետ սորա տիրեաց Սամեգար [9] ամս երեսուն (Ափր. X 30)։ Յետ այսորիկ անիշխանութիւնն [10] կալաւ, որպէս Ափրիկանոսն պատմէ, ամս քառասուն (Ափր. 40)։ Յետ սորա Հեղի [11] քահանայ դատեաց զժողովուրդն ամս քսան (Ափր. 20). և տապանակն Աստուծոյ եղև առ այլազգիսն ամիսս եօթն (Ափր. 7)։ Յաւուրս Հեղեայ քահանայի Ի՛դիոն հրկէզ եղեւ, և քաջքն ի մաւտ կային ։

Յետ սորա Սամուէղ [12] մարգարէ, որ ած զՍաւուղ ի թագաւոր. և յետ այսորիկ դարձոյց Սամուէղ զտապանակն յայլազգեացն, և եդ ի տան Ամինադաբայ, և եկաց անդ ամս քսան։ Եւ դատեաց զԻսրայէղ ամս քսան և երկուս (Հ. 20)։ Եւ թագաւորեաց Սաւուղ [13] ամս քառասուն (Հ. 30). և էր նորա սպարապետ Աբեններ՝ որդի Ներեայ։

Յետ այսորիկ իբրև թագաւորեաց Դաւիթ, եհան զտապանակ կտակարանացն ի տանէ Ամինադաբայ. և ի հանելն՝ թիւրեաց զնա եզնն. իբրև մատեաւ ուղղել զնա Ոզա, հարաւ անդէն և

1. ՋՈ. Յայիր՝ ԻԲ. ՏՄԴ։ 2. Ամոնացիք՝ ԺԸ. ՏՄԻԲ։ 3. Յեփ-
» թայի՝ Զ. ՏՄԻԸ։ 4. Եսեբոն՝ Է. ՏՄԼԵ։ 5. Աղղոնն՝
» Ժ. ՏՄԽԵ։ 6. Աբդոն՝Ը. ՏՄԾԳ։ 7. Փղշտացին՝ Խ.
» ՏՄՂԴ։ 8. Սամփսոն՝ Ի. ՏՅԺԴ։ 9. չունի։ 10. Ան-
» իշխան՝ Խ. ՏՅԾԴ։ 11. Հեղի՝ Ի. ՏՅՀԴ։ 12. Սա-
» մուէլ Ի. ՏՅՂԴ։ 13. Սաւուղ Խ. ՏՆԺԴ։

մեռաւ։ Իբրև ետես Դաւիթ՝ զահի հարաւ. և եկաց անդ ամիսս երիս։ Այս Սամուէլ աւծ զԴաւիթ ի թագաւոր։ Եւ առնէին ի Յե-սուայ որդւոյ Նաւեայ մինչև յառնուլն Դաւթի զթագաւորութիւնն, որ էր յազգէ Յուդայ, ազգք երբե (Հ. 9), ամք ՆՁԷ (Հ. 480), և յԱդամայ ազգք երեսուն և չորս, ամք ՏՅԿԳ։

Յետ այսորիկ թագաւորեաց Դաւիթ [1] ամս քառասուն, և ամիսս վեց. ի Քեբրոն ամս եւթն ամիսս վեց. և յԵրուսաղէմ ամս երեսուն և երիս։ Ի սորա աւուրս էր քահանայապետ Աբիաթար՝ որդի Աբիմելե-քայ. և ի միւսմէ ցեղէն՝ Սադովկ։ Եւ մարգարէանային յաւուրս Դաւ-թի՝ Գադ, Նաթան, և Ասափ. և էր սպարապետ Դաւթի՝ Յովաբ որդի Սարուհեայ, քեռ Դաւթի։ Սա թուեաց զցեղսն Իսրայէղի. և էր թիւն, զոր թուեաց Յովաբ որդի Սարուհեայ զորդւոցն Իսրայէղի, անձինք իբրև հազարիցս հազար 1), և հարիւր հազար. և որդիքն Յուդայ ՆՀՌ 2)*։ Բայց Ղևի և Բենիամին ոչ թուեցան. և վասն թուելոյն նորա զԻսրայէղ, անկան յԻսրայէղէ եւթանասուն հազար։

Յետ Դաւթի թագաւորեաց Սողոմոն [2], որդի նորա, ամս քա-ռասուն. և ի նորա աւուրս դարձեալ մարգարէանայր Նաթան, և Աքիա Սեղովնացի, և քահանայապետ նորա էր Սադովկ։

Յետ սորա թագաւորեաց Ռոբովամ [3] որդի իւր ամս եւթնե-տասն. առ սովաւ բաժանեցաւ թագաւորութիւնն։ Եւ ի Սամարիա թագաւորեաց Յորոբովամ ծառայ Սողոմոնի, յազգէ Եփրեմի, և մարգարէանայր առ Յորոբովամաւ Աքիաս Սեղովնացի, և Սամեա որդի Հեղումայ ։

Յետ սորա թագաւորեաց Աբիա [4] որդի իւր՝ ամս վեց (Հ. 17)։ Յետ սորա թագաւորեաց Ասա՝ [5] որդի նորա, ամս քառասուն և մի։ Սորա ի ծերութեան ցաւեցին ոտք իւր, եւ մարգարէանայր յաւուրս նորա Ազարիա (Հ. Azarias)։

Յետ սորա թագաւորեաց Յովսափատ [6] որդի իւր ամս քսան-եւհինգ։ Ի սորա աւուրս մարգարէանայր Եղիաս, և Միքեէ՝ որդի Յեմբղեայ, եւ Աբդիու՝ որդի Անանիայ, և էր յաւուրս Միքէի մարգարէ մի սուտ՝ անուն Սեդեկիա, որդի Քանանեա։

1. ՋՌ. Դաւիթ՝ Խ. ՏՆԾԳ։ 2. Սողոմոն՝ Խ. ՏՆՂԳ։ 3. Ռոբո-
» վամ՝ ԺԷ. ՏՇԺ։ 4. Աբդիու՝ Գ. ՏՇԺԳ։ 5. Ասա՝ ԽԱ.
» ՏՇԾԵ։ 6. Յովսափատ՝ ԻԵ. ՏՇՀԹ։

1)․ Հիպ. ունի « Millies centies milleni ».
2)․ Հիպ. «quatrities septies milleni» .
* Ի լուս. բն. « ԹՃՌ » ։

Յետ սորա թագարեաց Յովրամ[1] որդի իւր՝ ամս քսան. ի սորա աւուրս մարգարէանային Եղիա և Եղիսէոս:

Յետ սորա թագաւորեաց Ոքոզիա[2] որդի իւր՝ ամ մի: Ի սորա աւուրս կերաւ ժողովուրդն, ի Սամարիա, զորդիս իւրեանց և զաղբ աղաւնեաց, ի ժամանակին իբրև թագաւորեալ էր Յովրամ ի Սամարիա. և յաւուրս Ոքոզիայ մարգարէանայր Եղիսէոս և Աբադադովնէ (Հ. Gothol et Labdone):

Յետ սորա թագաւորեաց Գոթողիա[3], մայր Ոքոզիայ, ամս ութ: Սա կոտորեաց զթոռունս իւր, զի յազգէ էր Աքաաբու արքայի Իսրաէղլի. բայց քոյրն Ոքոզիա և Յովսաբէ՝ կին Յովիդայեի քահանայապետի՝ գողացան զՅովաս որդի Ոքոզիայ. և ի նորա վերայ եդ Յովիդայէ զթագաւորութիւնն: Եւ մարգարէացաւ առ Գոթողիաւ՝ Եղիսեոս :

Առ Յովիդայիւ քահանայապետիւ իմաստասէրք էին Սենեփովն, և Պղատովն, և Սոփոկղէս, Երակղիտոս, և Հերոդոտոս, և Իւրըպիդէս ողբերգակ, և Սոկրատէս ճարտասան, և Փիդիաս նկարչագործ, և Թեմիստէոս ուսումնատուր, և Դիմոկրիտոս Աբդիրացի, և Իպոկրատէս բուժական, և Թուկիդիդէս ճարտասան, և Մենիտէս, և Եմպեդոկղէս, և Գորգիա, Զենոն, Սոկրատէս, Պարմենիդէս, Պերիկղէս, Պողիս, և Արիստոփանէս կատակերգակ երևէին: (Եւս. Քր. Բ. էջ 208, 210, 212):

Յետ սորա թագաւորեաց Յովաս[4] որդի Ոքոզիայ՝ ամս քառասուն: Սա սպան զԶաքարիա որդի Յովիդայէի քահանայապետի: Յետ սորա թագաւորեաց Ամասիա[5] որդի իւր, ամս ութ: Յետ սորա թագաւորեաց Ոզիաս[6] որդի իւր՝ ամս յիսուն եւ երկու: Սա բորոտեցաւ եւ մեռաւ. եւ դատէր յաւուրս նորա զժողովուրդն Յովաթամ որդի նորա, որ չեւ եւս էր թագաւորեալ: Եւ մարգարէանային յաւուրս Ոզիա, Ամովս եւ Եսայի որդի իւր, եւ Ովսէէ՝ որդի Բէերայ, Յովնան որդի Ամաթեայ՝ ի Դովմերեայ:

Յետ սորա թագաւորեաց Յովաթամ[7] որդի իւր ամս վեշտասան. առ սովաւ մարգարէանային Եսայի, Ովսէէ, եւ Միքէ՝ Մորաստացի, եւ Յովէլ՝ որդի Բաթուելի: Յետ սորա թագաւորեաց Աքազ[8] որդի իւր ամս հնգետասան. Ի սորա աւուրս մարգարէանային Եսայի եւ Ովսէէ. եւ պաշտէր զքահանայապետութիւնն

1. ՉՈ. Յովրամ՝ Ը. ՏՇՁԷ: 2. Ոքոզիա՝ Ա. ՏՇՁԸ: 3. Գոդողիա՝
» Է. ՏՇՂԷ: 4. Յովաս՝ Խ. ՏՈԼԽ: 5. Ամասիա՝ ԻԹ.
» ՏՈԿԴ: 6. Ոզիաս՝ ԾԲ. ՏՁԺԶ: 7. Իյովաթամ՝ ԺԶ. ՏՁԼԲ:
» 8. Աքազ՝ ԺԶ. ՏՁԽԸ:

Ուրիաս։ Ի սորա աւուրս Սաղմանասար, արքայ Ասորեստանեաց, փոխեաց զբնակիչս Սամարեայ՝ ի Մարս եւ ի Բաբելոն։

Յետ սորա թագաւորեաց Եզեկիաս [1] որդի իւր ամս քսան և ինն (Հ. 25). առ նովաւ մարգարէանային Եսայի, Ովսէէ, և Միքեէ։ Յետ սորա թագաւորեաց Մանասէ [2] որդի իւր՝ ամս յիսուն և հինգ ։

Յետ սորա թագաւորեաց Ամոն [3] որդի իւր՝ ամս երկոտասան (Հ. 2)։ Յետ սորա թագաւորեաց Յովսիա [4] որդի իւր՝ ամս երեսուն և մի։ Սա եղ զխաղխաղակոյտ ոսկերաց մարդկան՝ ի վերայ պատկերաց կռոցն, որպէս և գրեալ է։ Ի սորա աւուրս եղև Զատիկն, յամի ութուտասներորդի թագաւորութեան իւրոյ։ Քանզի յորմէ հետէ մեռաւ Յեսու որդի Նաւեայ, ոչ արար Զատիկ ժողովուրդն մինչև ցայնժամ. և Քեղկիա քահանայ՝ հայր Երեմիայի մարգարէի՝ եգիտ ի տաճարին զգիրս աւրինացն՝ յութուտասաներորդի ամին Յովսիայ արքայ։ Ի սորա աւուրս մարգարէանային Ողդա՝ կին Սեղեեայ հանդերձապետի՝ որդւոյ քահանայապետին. և Սոփոնիա, և Երեմիա։ Եւ առ Երեմիայիւ էր մարգարէ մի սուտ, Անանիա 1) անուն նորա։

Յետ սորա թագաւորեաց (Յով) Աքազ [5] որդի իւր՝ ամս երիս (Հ. menses quatuor)։ Զսա կապեաց Նեքաւով արքայ Եգիպտացւոց, եւ իջոյց յԵգիպտոս. եւ անդ կացոյց զԵղիակիմ [6] եղբայր նորա, որ եւ Յովակիմ կոչեցաւ։ Ի սորա աւուրս մարգարէանային Երմիա, եւ Բուզի, եւ Ուրիա՝ որդի Սամեայ՝ ի Կարիաթարիմ գեղջէ։ Եւ թագաւորեաց ամս մետասան։ Զսա կապեաց Նաբուքոդոնոսոր պղնձի կապանաւք, եւ տարաւ ի Բաբիլոն։

Յետ սորա թագաւորեաց Յովակիմ [7] ամս երիս, եւ զսա տարաւ իւր առ Նաբուքոդոնոսոր արքայ Բաբելացւոց, եւ զայլս ընդ նմա. եւ կացոյց փոխանակ նրա զՍեդեկիա [8], որ կոչեցաւ Յեքոնիա։ Սա էր եղբայր Յովակիմայ արքայի, որ թագաւորեաց ամս մետասան. եւ յերկոտասաներորդ ամին տարաւ զնա Նաբուքոդոնոսոր [9] ի

1. ԶՈ. Եզեկիա՝ ԻԹ. ՏՁՀԵ։ 2. Մանասէ՝ ԾԲ. ՏՊԼԲ։ 3. Ա-
» մովս՝ Բ. ՏՊԼԴ։ 4. Յովսիա՝ ԼԱ. ՏՊԿԵ։ 5. Յո-
» վաքազ՝ Ա. ՏՊԿԶ։ 6. Եղիակիմ՝ ԺԱ. ՏՊՀԷ։
» 7. Յովակիմ՝ Ա. ՏՊՀԸ ։ 8. Սեդեկիա՝ ԺԱ. ՏՊՀԹ ։
» 9. Նաբուգոդոնոսոր՝ ԺԱ. ՏՋԺ։ Նիրիկղիադ՝ Ե.
» ՏՋԺԵ։ Բաղդասար՝ Գ. ՏՋԺԸ։

1). Լատ. խմբ. Հիպպողիտեայ կը դնէ հոս՝ ընդհակառակն՝ թագաւոր ոմն Սոփոնիաս, որուն կու տայ 5 ամ և 11 ամիս։

Բաբելոնի՝ աչաւք խաւարելովք։ Ապա եւ զժողովուրդն փոխէր առ ինքն, բայց ի սակաւուցն, որ իջին յԵգիպտոս։ Եւ մարգարէանային յաւուրս Սեդեկիայ՝ Երեմիայ եւ Ամբակում։ Եւ յամի հինգերորդի թագաւորութեան նրա մարգարէացաւ Եզեկիէլ ի Բաբելոնի. եւ յետ սորա մարգարէացաւ Նաւում՝ ի Բաբելոնի, եւ Մաղաքիա, և Դանիէլ։ Եւ տեսանէ զտեսիլ եւթներորդացն, յառաջին ամի թագաւորութեանն Դարեհի՝ [1] որդւոյ Արշաւրայ, ի զաւակէ Մարաց, որ թագաւորեաց ի վերայ տէրութեան Քաղդէացւոց։

Յետ սորա թագաւորեաց Կիւրոս. եւ յամի երկրորդի (Հ. 1) թագաւորութեան իւրոյ եհան զժողովուրդն՝ երթալ յԵրուսաղէմ։ Եւ մինչ շինէր տաճարն՝ մարգարէանային ի միասին Անգեոս եւ Զաքարիա. եւ յետ Անգեայ եւ Զաքարեայ՝ Նէեմի որդի Աքեղեայ, յազգէ Իսրաէղի, որ շինեաց զքաղաքն Երուսաղէմ. եւ էր տակառապետ Արտաշէսի արքայի Պարսից։

Յետ սորա Եւսեբեայ եւ Մուրլքէի պատմութիւնն կարգի։ (Եւս. Քր. Բ. 216)։ Եւ է (ի) Դաւթայ մինչեւ ի Սեդեկիա, եւ ի գերութիւնն Յեքոնիայ ազգք հնգետասան (Հ. 18), ամք ՆՀԳ (478) եւ ամիսք ինն։ Եւ յԱդամայ մինչեւ ի գերութիւնն Բաբելացւոց՝ որ եղև յաւուրս Յեքոնիայ, ազգք յիսուն եւ մի, ամք ՏՊԽԲ, ամիսք ինն։ Եւ ի գերութենէն Բաբելացւոց մինչև ի ծնունդն Քրիստոսի ազգք չորեքտասան, ամք ՈԿ (Հ. 660). եւ ի ծննդենէն Քրիստոսի մինչև ի չարչարանս նորին ամք ԼԲ (Հ. 30)։ Եւ ի չարչարանացն Քրիստոսի մինչև յամն երկոտասաներորդ՝ (Հ. 13) քսաներորդ առաջնորդի թագաւորին Հռովմայ Աղեքսանդրի 1), առ-

1. ԶՌ. Դարեհ — մար՝ ԺԸ. ՏԶԼԶ։

1). Դիտել կու, տանք որ Հիպ. լատին թարգմանութիւնն հետեւեալ խօսքերով « Usque ad hunc annum, qui est Alexandri Imper.», և այլն, յայտնի ապացոյցը տուած է իր ժամանակագրութեան գրութեան ժամանակին և հարազատութեան, հաշուելով Ադամէն մինչեւ այդ տեղն 4842 ամ եւ 9 ամիս, որը կը հաստատուի նաեւ հայերէն խմբագրութեամբ։ Սակայն երբ վերջինս ուրիշ դարագլուխ մ'եւս կը յաւելու, նոյն կայսրէն մինչեւ Արկադէոս եւ Ոնորիոս, այս առանց նշանակութեան չէ. այսինքն, թէ Հիպպողիտեայ ժամանակագրութեան հայերէն թարգմանութեան առթիւ եւ Ե. դարուն յաւելցուած է։ Վասն զի եթէ Ան. Շիրակացին ըլլար զանի թարգմանողն, ուրիշ դարագլուխներ եւս պիտի դնէր ըստ ինքեան, ինչպէս տեսանք Զ. Ոսկեփորիկէն եւ Է. Ճառընտրէն։ Սակայն ես այս կէտիս վրայ պնդել չեմ ուզեր. որովհետեւ ուրիշ անյայտ պատճառէ եւս կարող էր յառաջագայիլ այդ երեւոյթը։

նին ամք երկերիւր հինգ, եւ ամիսք վեց (Հ. 206)։ Եւ յԱղեքսանդրէ Մամեայ մինչեւ յԱրկադէս եւ յՕնորէս՝ որդիս Թէոդոսի՝ ամք հարիւր եւթանասուն եւթն, եւ ամիս մի. Ցորեղեան ՂԺԲ *։

## ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՒՈՐՔ

Կիւրոս [1] Թագաւորեաց ամս երեսուն։ Կամբիւսէս [2] ամս ութ (Հ. 9)։ Մոգքն ամիսս եւթն (Հ. 8)։ Դարեհ Վշտասպեան՝ ամս երեսուն եւ վեց։ Առ Դարեհիւ Զօրաբաբէլ Եբրայեցւոց վերակացու եղեալ, հանդերձ Յեսուաւ քահանայապետիւ, եւ կատարեաց զշինած տաճարին. եւ մարգարէանային Անգեոս եւ Զաքարիաս։ Քսերքսէս պարեհեան Թագաւորեաց ամս քսան եւ մի։ Արտաւան ամս եւթն։ (Եւս. Քր. Բ. 198)։

Արտաշէս Երկայնաձեռն՝ ամս քառասուն (Հ. 36). առ նովաւ եկեալ Եզրաս յԵրուսաղէմ, ուսուցանէր զաւրէնսն։ Եւ ի քսաներորդի ամի նորին թագաւորութեան Նեեմի, տակառապետ թագաւորին, խնդրեալ ի նմանէ և հրաման առեալ՝ եկ յԵրուսաղէմ, եւ շինեաց զպարիսպս քաղաքին, եւ կազմեաց զհրապարակն եւ զփողոցս նորա։ (Եւս. Քր. Ա. եր. 190)։ Երկրորդ Քսերքսէս Թագաւորեաց ամիսս երկուս. Սոգդիանոս՝ ամիսս եւթն։ Դարեհ խորթ ամս իննեւտասն (Հ. 18)։ Արտաշէս Ուշիմ՝ Թագաւորեաց ամս քառասուն (Հ. 62)։ Արտաշէս՝ որ եւ Ովքոս՝ ամս վեց (Հ. 23, ամիսս 7)։ Արմեսորքու՝ ամս չորս (Հ. 3)։ Դարեհ Արշամայ՝ Թագաւորեաց ամս վեց (Հ. 12). զնա սպանեալ Աղեքսանդրի՝ յեւթներորդ ամի թագաւորութեան իւրոյ, որ տեւեալն էր ամս երկերիւր երեսուն (Հ. 255) . եւ թագաւորեաց ընդ նորա ա՛յդ եւս հինգ ամ, եւ ամիսս եւթն, յետ ունելոյն զԲաբելոնն։ Եւ ընդ ամենայն եղեն առուրք թագաւորութեան նորա ամք երկոտասան, եւ ամիսք եւթն 1)։ (Եւս. Քր. Բ. 191 եւ 223)։

1. ՋՈ. Կիւրոս՝ ԼԲ. ՏՋԿԸ։ 2. Կամբիսիոս՝ Ը. ՏՋՀՁ ։

1)․ Հիպ. լատին Թարգմանութիւնն ունի — համաձայն Cod. Vetus Colleg. Soc. Jesu, Paris. գրչագրին — այս տեղ Ոլիմբիադս 253, մինչեւ Աղեքսանդր Մամէա, եւ ամս 1012։ Սա ալ ընենք, որ հոս կ'աւարտի նաեւ այդ հնագոյն գրչագրի ներկայացուցած խմբագրութիւնը կամ Թարգմանութիւնը, որուն համար կ'ըսուի, թէ Մեծն Կարոլոսի ժամանակ, կամ քիչ յառաջ Թարգմանուած ըլլայ.

* Լուս. «յԱդամայ»։

Յետ Աղեքսանդրի թագաւորեաց յԵգիպտոս, յԱղեքսանդր քաղաքի, Պտղոմէոս Ղագոս ամս քառասուն (Հ. 52)։

Պտղոմէոս Եղբայրասէր՝ թագաւորեաց ամս երեսուն եւ ութն (Հ. 38). առ սովաւ Եբրայեցւոց իմաստունքն զաւրէնսն թարգմանեցին (Եւս Ա. եր. 191)։

Պտղոմեոս Բարերար՝ թագաւորեաց ամս քսան եւ վեց (Հ. 30). առ սովաւ էր Յեսու Սիրաքայ, որ զամենապրուեստ իմաստութիւնն կարգեաց։

Պտղոմեոս Մայրասէր՝ թագաւորեաց ամս քսան եւ չորս (Հ. 17). առ սովաւ Մակաբայեցւոց իրք կատարեցին։

Պտղոմեոս Բարերար՝ թագաւորեաց ամս քսան եւ ինն (Հ. 26)։

Պտղոմեոս Փրկիչ՝ թագաւորեաց ամս հնգետասան (Հ. 20)։

Պտղոմեոս՝ որ եւ Աղեքսանդրոս՝ ամս երկոտասան (Հ. 20)։

Պտղոմեոս եղբայր Աղեքսանդրի՝ ամս ութ (Հ. 18)։

Պտղոմեոս, որ եւ Դիոնիսիոս, ամս ութ (Հ. 29)։

Պտղոմեուա՛ դուստր Կղեոպատրայ, ամս քսան եւ երկու (Հ. 24)։ Զնա սպանեալ Աւգոստի կայսեր, ի չորեքտասաներորդի ամի թագաւորութեան իւրոյ, կալաւ զԵգիպտոս, քարձեալ զթագաւորութիւն Պտղոմեայցն, որ տեւեաց ամս երկերիւր իննսուն եւ չորս (Հ. 346)։

Իշխանք 1) Եբրայեցւոց՝ որք ի քահանայից անտի՝ առաջնորդեցին ժողովրդեան որդւոցն Իսրայէլի յետ դարձին ի Բաբելոնէ ։

Յեսու [1] որդի Յովսեդեկեայ՝ հանդերձ Զորաբաբելիւ՝ առ Կիւրոսիւ թագաւորաւ։

Յակիմոս [2] որդի Յեսուայ։ Եղիասիբոս [3] որդի Յակիմայ։ Յովդայէ՝ [4] որդի Ասիբայ։ Յովաննէս [5] որդի Յովդայեայ։ Յադդաս [6] որդի Յովաննու, առ որով Աղեքսանդրոս զԱղեքսանդր շինեաց. եւ եկեալ յԵրուսաղէմ, Աստուծոյ երկիր եպագ։ (Եւս. Բ. եր. 222)։ Ոնիաս [7] որդի Ադդայ։ Եղեազարոս, առ որով եւթանասունքն

1. ԶՈ. Յեսու առաջնորդ՝ ԼԲ. ՐԸ։ 2. Իովակիմ՝ Ր. ՀԼԸ։
» 3. Եղիասիբոս՝ Խ. ՐՀԸ։ 4. Յովիդայէ՝ ԼԶ. ՐՃԺԴ։
» 5. Իյովաննէս՝ ԼԲ. ՐՃԽԶ։ 6. Աքեդուս՝ Ի. ՐՃԿԶ։
» 7. Աւնիաս՝ ԻԲ. ՐՃՁԸ։

1) Ասկէ ետքը կը գտնէ հայերէնի նմանութիւնը, թէ եւ ոչ աղերսը, Հիպպողիտոսի լատին խմբագրութեան հետ։

զաստուածեղէն գիրս թարգմանեցին։ Ոնիաս որդի Սիմոնի, եղբայր Եղիազարու։ Սիմոն[1], առ որով Յեսու Սիրաքայ ճանաչէր։ (Եւս. Բ. 234)։ Ոնիաս[2] առ որով Անտիոքոս զՀրէայս պաշարէր, և ի հեթանոսութիւն դառնալ բռնադատէր. յետ որոյ եւ Յուդաս՝ որ կոչէր Մակաբէոս. սա սրբեաց զաշխարհն յամպարըշտաց անտի։ Յետ որոյ քահանայապետ եղեւ Յովնաթան՝ եղբայր Յուդայի։ Սիմոն՝[3] եղբայր Յովնաթանու։ Յովհաննէս[4] որդի Սիմոնի, որ է Հիւրկանոս։ Արիստաբուղոս[5], որ նախ թագ եդ թագաւորական՝ առ քահանայապետութեամբն, զոր ունէր. եւ Յաննէոս՝ որ կոչէր Աղեքսանդրոս[6], թագաւոր միանգամայն եւ քահանայապետ *։ (Եւս. Բ. կան, էջ 234)։

Արդ, մինչեւ ի նա աւծեալքն, որ եղեն իշխանք, ի Կիւրոսէ առեալ ամս չորեքհարիւր ութսուն եւ երեք, որք լինին եւթներորդք ամաց՝ վաթսուն եւ ինն, որք առ Դանիէղիւ ասացան զայս աւրինակ, թէ Գիտասցես եւ իմասցիս յելից բանին տալ պատասխանի, և ի շինածոյն Երուսաղէմի մինչեւ ցաւծեալն առաջնորդ՝ եւթներորդք վաթսուն եւ երկու։ Առաջին եւթներորդք թուին ի Կիւրոսէ ի Դարեհ, առ որով շինած տաճարին կատարեցաւ. իսկ այլ եւս վաթսուն եւ երկու եւթներորդքն ձգին ի Դարեհէ ի յառաջիկայս։ (Եւս Քր. Բ. կան. էջ 254)։

Յաննէոս[7], որ եւ Աղեքսանդրոս՝ աւծեալ և առաջնորդ, իբրու թէ առէր զինքն թագաւոր եւ քահանայապետ. առ որով

1. ՁՈ. Սիմոն ԺԵ. ՐՄԵ։ 2. Աւնիաս ԺԴ. ՐՄԺԹ։ Եղիազար՝
» ԼԲ. ՐՄԾԱ։ Մանասիս՝ ԻԶ. ՐՄՀԷ։ Սիմոն՝ ԻԵ.
» ՐՅԲ։ Իոնիաս՝ Է՛. ՐՅԻԶ։ Իեսուս՝ Զ. ՐՅԼԲ։
» Իոնիաս՝ Է. ՐՅԼԹ։ Իոնիաթէս՝ ԺԷ. ՐՅԾԶ։
» 3. Սիմոն երկրորդ՝ Ը. ՐՅԿԴ։ 4. Իովաննէս՝ Լ.
» ՐՅՂԴ։ 5. Արիստաբուղոս՝ Ա. ՐՅՂԵ։ 6. Աղեքսան-
» դրոս՝ Թ.ՐՆԴ։ 7. Յաննէոս՝ Լ. ՐՆԼԴ։

* Ի դատարկ ուրեք վայրի այդ պատճենի մատենին՝ մանրագիր յաւելեալ է յումեմնէ, կ'ըսէ Հ. Եփ. Սեթեան, « Հերովդէս սպան զՀիւրկանոս, եւ կացոյց ի տեղի նորա զԶաքարիա՝ հայր Յովհաննու Մկրտչի. եւ չտայր մատուցանել պատարագ ըստ աւրինացն Մովսէսի։ Իբրեւ անց զհրամանաւ նորա, եւ մատուցանէր զպատարագսն եւ զողջակէզսն, սպան զնա՝ ընդ մէջ տաճարին եւ սեղանոյն. եւ կլեալ ծածկեցաւ մարմին նորա ի տաճարին. եւ արիւնն գոչէր, թէ սպանաւ Զաքարիա։ Եւ ապա անարժանից վաճառէր զքահանայութիւն. առ որով ծնեալ Տէրն մեր եւ Փրկիչ Յիսուս Քրիստոս, ըստ մարգարէութիւնն Յակոբայ » ։

սպառեցան որք ըստ յաջորդութեան ի քահանայիցն առաջնորդք, եւ աւծեալք ի մարգարէութենէն անուանեցան։ Յետ որոյ Թագաւորէ (Մե) սաղինա, որ էր կին Աղեքսանդրի, վասն որոյ հակառակութիւն եղեալ ընդ միմեանս որդւոցն նորա, Պոմպէոս զաւրավար Հռովմայեցւոց պաշարեալ զքաղաքն Երուսաղէմ՝ առնու, եւ մտանէ ի տաճարն։ Յայնժամ ամենայն ազգն Հրէից ընդ հարկաւ եղեն Հռովմայեցւոց։ Եւ տայ Պոմպէոս զքահանայապետութիւնն Հիւրկանեայ [1], եւ զԱնտիպատրոս ոմն՝ զԱսկաղոնացի՝ ի Պաղեստինի վերայ կացուցանէ. առ որով նախ Հռովմայեցւոց միահեծան՝ Գայիոս Յուղիոս [2] կայսր թագաւորեաց ամս չորս, եւ ամիսս եւթն (Եւս. Բ. կան. էջ 250)։

Աւգոստոս [3] թագաւորեաց ամս յիսուն եւ վեց, եւ ամիսս վեց։ (Եւս. Բ. էջ. 252)։

Սա զԵբրայեցւոց թագաւորութիւն ի մետասաներորդ ամի թագաւորութեան իւրոյ տայ հեթանոսաց, Հերովդի ումեմն՝ որդւոյ Անտիպատրոսի Ասկաղոնացւոյ, որոյ զՀիւրկանոսն սպանեալ էր. ո՛չ ևս որոց ըստ յաջորդութեանն էր, այլ եւ գձուձ ումանց զքահանայապետութիւնն բաժանէր։ Առ որով ծնեալ Տեառնն եւ փրկչին մերոյ՝ Յիսուսի Քրիստոսի, լնու եւ մարգարէութիւն Մովսէսի եւ Յակոբու, որ ասէն, թէ Մի՛ պակասիցէ իշխան ի Յուդայ, եւ մի՛ պետ յերանաց նորա, մինչեւ եկեսցէ որոյ էն, եւ նա է ակնկալութիւն հեթանոսաց։ (Եւս. Քր. Բ։ կան. էջ. 254)։

Ծնանի փրկիչն մեր եւ Տէր ի քառասներորդ երկրորդ ամի Աւգոստեայ. և Թագաւորէ Հրէից Հերովդէս [4] ամս երեսուն եւ եւթն. յորոյ յերեսուն եւ երկրորդ ամի թագաւորութեանն ծնանի ի Բեթղեհէմ Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Յետ Հերովդի՝ թագաւորէ Հրէից Արքեղաւոս որդի նորա ամս ինն։ Յետ որոյ Հերովդէս՝ եղբայր Արքեղաւոսի՝ թագաւորեաց ամս քսան եւ ութ. առ որով չարչարեցաւն Քրիստոս։ (Եւս. Բ. 254)։

Ի սորա աւուրս Յովաննէս՝ որդին Զաքարիայի՝ քարոզէ յանապատին Յորդանան գետոյ. եւ տայ աւետիս ամենեցուն, թէ ի միջի նոցա է աւծեալն Աստուծոյ։ Նաեւ ինքն իսկ Յիսուս աւծեալն Աստուծոյ՝ անտի առնէ սկիզբն կենարար և աւետաբեր վարդապետութեանն, արդեամբք և բանիւք զաստուածեղէն զաւրու-

1. ՋՈ. Հիւրկիանոս՝ ԼԴ. ՐՆԿԸ։ 2. Յուլիոս՝ Դ. ՐՆՀՋ։
» 3. Աւգոստոս՝ ԾՋ. ՐՇԼԲ։ 4. Հերովդէս՝ Դ. ՐՆՀԲ։

թեանն զառաքինութիւն տեսաւղացն ցուցանէր. սկսեալ զքարոզելն, ի հնգետասան ամի Տիբերի կայսեր, Յիսուս աւծեալն Աստուծոյ Տէր մեր. ըստ մարգարէութեանցն, որ զնմանէ էին, գայ ի չարչարանսն յիննեւտասաներորդ ամի Թագաւորութեանն Տիբերի։ (Եւս. Բ. էջ 262–264)։

Ըստ որում ժամանակի եւ այդ ի յունական յիշատակս գտաք՝ որ ըստ նմին աւրինակի պատմեալ, թէ արեգակն նուաղեաց. Բիւթինիա շարժեցաւ, Նիկիա մեծ մասն կործանեցաւ. որ եւ միաբան իսկ պատմեն վասն իրացն որ ի չարչարանս կենարարին մերոյ գործեցան։ (Եւս. Բ. էջ 262)։

Գրէ եւ Փղեգմոն՝ որ զՈղիմպիադացն անդսաւին ի նոցանէ յերեքտասաներորդում պատմութեան ճառին ասէ զնոյն ձեւ աւրինակ բանից՝ թէ. Ի չորրորդում ամի երկերիւրերորդի երկրորդի Ողիմպիադին՝ մեծ նուազութիւն եղեւ արեգական, քան զոր յառաջագոյն ոք գիտէր. եւ գիշեր եղեւ ի վեցերորդ ժամուէ աւուրնջեանն, մինչեւ աստեղաց յերկինս երեւել. և շարժումն մեծ ի Բիւթանիա. եւ մեծ մասն Նիկիա կործանեցաւ։ Զայս՝ այժմու յիշատակեալ այրս, եւ այս իսկ մեծ նշանակ է յամին՝ յորում կենարարն չարչարեցաւ, ըստ վկայութեան Յովաննու աւետարանչի, որ յետ հնգետասաներորդ ամին Տիբերի կայսեր, երեքամեայ ժամանակս վարդապետութեան նորա լեալ վկայէ։ (Եւս. Քր. Բ. 264)։

Ըստ նոցին ժամանակաց և Յովսեպոս պատմէ թէ, Յաւուրն Պենտակոստեից եղեւ դղրդիւն եւ սաւսափիւն։ Նախ զքահանայապետուքն պատէր, եւ ապա յանկարծակի բարբառ ի տաճարին՝ ի ներքուստ ի քաւարանէ անտի, որպէս ձեւ բանի ասելով. Գնամք աստի, գնամք. եւ այդս սոյնպիսիս Յովսեպոս գրէ, որ եհաս ազգին Հրէից՝ վասն չարչարանացն Տեառն մերոյ, որ եղեւ յիննուտասներորդ ամի Տիբերի կայսեր։ (Եւս. Քր. Բ. 266)։

Յետ Արքեղայոսի Թագաւորէ Ագրիպաս աւագ՝ ամս վեց։ Յետ սորա Ագրիպաս մանուկ՝ ամս քսան եւ հինգ. առ որով Երուսաղէմի վերջին աւերածն եղեւ՝ ի Վեսպասիանոսէ եւ ի Տիտոսէ ։

Ժողովին ամենայն ժամանակն, ի հնգետասաներորդէ ամեայ Տիբերեայ կայսեր, ի յիսկզբան քարոզութեան Փրկչին մերոյ, եւ յԱղեքսանդրէ Մակեդոնացւոյ ամք երեքհարիւր յիսուննեւութ։ Եւ ի Սողոմոնէ և ի տաճարին շինածոյ՝ մինչեւ ցԿիւրոս ամք չորեքհարիւր իննսուն եւ հինգ։ Եւ յելիցն յԵգիպտոսէ, որ ի ձեռն Մովսիսի, մինչեւ ի շինուած տաճարին ամք Ն...., եւ ի Ջրհե-

զեղէն մինչեւ ցելսն Իսրայէլի ամք ՌՆԽԵ. եւ յԱդամայ մինչեւ ի Ջրհեղեղն ամք ՍՄԽԲ (Եւս. Քր. Ա. եր. 189, տարբերութեամբք)։ Միանգամայն յԱդամայ մինչեւ ի չարչարանսն Քրիստոսի ամք ՑՇԼԴ. եւ ի հնգետասաներորդ ամէն Տիբերի կայսեր՝ մինչեւ ի հալածումն եկեղեցեաց, որ եղեւ յիննուտասաներորդ ամի Դիոկղետիանոսի, ամք ՄՀՋ (Եւս. Ա. 195 տարբերութեամբ). ժողովին ամենայն աւուրքն եւ լինին ամք ՐՊԺ։

Առաջին մենիշխանութեանն Հռովմայեցւոց՝ Գայիոս Յուլիոս Կեսար, որ զբեսեքտոնն եւ զլուսնի ընթացս նոցա հանճարեաց, ուստի կայսերք անուանեցան, ամս չորս եւ ամիսս եւթն։

Ըստ որում ժամանակի Կղէոպատրայ, Եգիպտոսի թագաւորէ կայսր Սեբաստոս Ոկտաբիոս, որ եւ Աւգոստոս, ամս յիսուն եւ վեց. եւ ետ հիպատիս ԺԳ. եւ մեռաւ ի պաղատան։ Յորմէ հետէ աւգոստեանք եւ սեբաստեանք անուանեցան թագաւորք Հռովմայեցւոց. եւ ի քառասուն եւ երկու ամի թագաւորութեան նորա եկն տէր մեր Յիսուս Քրիստոս։

Տիբերիոս[1] ամս քսան եւ երիս, եւ ետ հիպատիս Թ. եւ մեռաւ ի Մէկէնս. յութուտասն ամի տէրութեան սորա չարչարեցաւ Քրիստոս։

Գայոս[2] Գաղոս՝ ամս երիս, եւ ամիսս տասն (Եւս. 4). եւ ետ հիպատիս Դ. մեռաւ ի պաղատան։

Կղաւդիոս[3] ամս չորեքտասան եւ ամիսս ինն (Եւս 8). եւ ետ հիպատիս Դ. մեռաւ ի պաղատանն։

Ներոն[4] նորին որդի՝ երեքտասան, եւ ամիսս ութ (Եւս. 7), եւ ետ հիպատիս Դ։ Յաւուրս սորա քարկոծեցին Հրեայք զեղբայրն Տեառն. եւ ինքն սպան սրով զՊաւղոս եւ զՊետրոս. եւ ինքն փախեաւ, եւ կենդանոյն զանձն թաղեաց։

Գաղբաս՝ ամիսս եւթն. սպանաւ ի Հռովմ։

Ոթոն՝ ամիսս երիս, եւ զինքն սպան։

Վիտեղիոս ամիսս ութ. սպանաւ ի պաղատան։

Վեսպիանոս[5] * ամս տասն. եւ ետ հիպատիս Թ. եւ վճարեցաւ ի Սաղուստեան բուրաստանսն։

1. ՁՈ. Տիբերիոս՝ ԻԲ. ՐՇԾԴ։ 2. Գայիոս՝ Դ. ԻՇԾԸ։ 3. Կղօ-
» դիոս՝ ԺԴ. ՐՇՀԲ։ 4. Ներոն՝ ԺԲ. ՐՇՁԵ։ 5. Վես-
» պիանոս՝ Ժ. ՐՇՂԵ։

* Լուս. « Ի Վեսպասիանոսէ եղեւ աւերումն Երուսաղէմի եւ քանդումն Հրէից՝ վասն չարչարանացն Տեառն, որպէս Յովսեպոս ժամանակագիր պատմէ »։

Տիտոս [1] նորին որդի՝ երկու (ամ). եւ ետ հիպատոս Թ. եւ վճարեցաւ ի պաղատանն։

Դոմետիանոս [2] ամս եւթնեւտասն (Եւս. եր. 16). եւ ետ հիպատոս Ժ. եւ սպանաւ։

Ներուաս՝ ամս երկուս (Եւս. եւ ամիսս 3), եւ ետ հիպատոս Դ. եւ վճարեցաւ ի Սաղուստեան բուրաստանսն։

Տրայիանոս * [3] իննեւտասն (Եւս. եւ ամիսս 6), եւ ետ հիպատոս Ե. եւ վճարեցաւ ի Սեղինունդ։

Ադրիանոս՝ [4] քսանեւերկուս (Եւս. 21). եւ ետ հիպատոս Գ. եւ վճարեցաւ ջրգողեալ Թանչակալ (Եւս. ի Բայիէս)։

Անտոնինոս Բարեպաշտ՝ քսան եւ երիս. եւ ետ հիպատոս Գ, համդերձ որդւովքն իւրովք Աւրեղիւ, եւ Բերաւ, եւ Ղուշեկիւ. եւ վճարեցան ի Ղոմրիոս։

Մարկոս [5] Անտոնինոս՝ չորեքտասան (Եւս. 19). եւ ետ հիպատոս Գ. Բերոսաւ եւ Ղուկիոսիւ. եւ վճարեցաւ ի Պաննոնիա։

Աւրեղիոս Բերոս (Վերոս) ամս իննեւտասն. ետ հիպատոս Գ, եւ վճարեցաւ։

Կոմոդոս՝ [6] ամս երեքտասան, ետ հիպատոս Է. եւ թաղեցաւ կենդանի ի Վիտիղեան ապարանսն։

Էլ՛իոս Պերտինակս՝ ամիսս վեց (Եւս. ամ մի). եւ սպանաւ ի պաղատան։

Դիդիոս Յուղիանոս՝ ** ամս հինգ եւ սպանաւ։

Ապա Սեւերոս [7] ամս հնգետասան. ետ հիպատոս Ե.

Անտոնինոս [8] Գետաս, եւ Անտոնինոս [9] Կարակաղոս՝ ամս եւթն. եւ եառուն հիպատոսս Զ. եւ սպանան ի Խառան։

Մակրիանոս՝ ամ մի, եւ ետ հիպատոսի Ա. եւ սպանաւ ի Հռոմ (Եւս. յԱրքեղայ)։

1. ՋՈ. Տիտոս՝ Գ. ՐՇՂԸ։ 2. Դոմետրիանոս՝ Ժ. ՐՈԸ։ 3. Տր-
» րայիանոս՝ ԺԹ. ՐՈԻԷ։ 4. Ադրիանոս՝ ԻԱ. ՐՈԽԸ։
» Տիտոս՝ ԻԴ. ՐՈՀԲ։ 5. Մարկոս՝ ԺԹ. ՐՈՂԱ։ 6. Կո-
» մոդոս՝ ԺԴ. ՐՁԵ։ 7. Սեւերոս՝ ԺԹ. ՐՁԻԴ։ 8. Ան-
» տոնինոս՝ Է. ՐՁԼԱ։ 9. Միւս Անտոնինոս՝ Գ. ՐՁԼԵ։

* Լուս. «Տրայիանոսի աւուրս յերկարեալ, առէ, ղկեանս իւր Յովաննու աւետարանչի»։

** Լուս. «Ի Յուղիանոսի աւուրս վերամբարձեցաւ Տով»։

Աղեքսանդրոս [1] Մամէ՝ որդի (Եւս. 13). եա Հիպատի Ա. եւ սպանաւ ի Մոգոնտիանոս։

Մաքսիմիանոս [2] չորս (Եւս. 3). եա Հիպատի Ա. եւ սպանաւ յԱ-կիւղէիա։

Բաղբինոս եւ Պուպղիոս՝ ամիս տասն, եւ սպանան։

Գորդիանոս [3] ամս վեց, եւ զանձն իւր խեղդեաց (Եւս. յԱփրիկէ)։

Միւս Գորդիանոս՝ եւթն. եա Հիպատիս Գ։

Դեկիոս՝ [4]* ամս երկուս. եա Հիպատիս Ա. սպանաւ ի Հրապարակին Սեմպրոնէի (Եւս. յապարանն Աքրիպդայ)։

Պուպիկկիոս եւ Բաղբինոս սպանան ի Հռովմ։

Փեղիպպեանք [5] ամս վեց (Եւս. նոյնպէս). եաուն Հիպատոս Ե. սպանան ի Տիբերեան բուրաստանին։

Գաղոս [6] ամս երիս. եա Հիպատիս Բ. եւ սպանաւ ի Հրապարա-կին Փաղամինայ։

Ոստիղիանոս՝ եւ Մեղիանոս՝ (Եւս. Եմիլիանոս) ամս վեց. եաուն Հիպատիս Բ. եւ սպանան ի Մեդիոլան։

Ուվաղերիոս՝ [7] հնգետասան. եա Հիպատիս Է. եւ սպանաւ ի Պարսս։

Գաղինոս [8] ամս երկուս. եա Հիպատի Ա։

Կղաւդիոս [9] ամս երիս (Եւս. ամ մի եւ ամիս երիս). եա Հիպա-տիս Բ. եւ վճարեցաւ ի Սիրմիոս։

Կիւնտիղղոս՝ ամս երկոտասան. եա Հիպատիս Գ. սպանաւ յԱկիղէիա (Եւս. յԱկուիլէա)։

Աւրեղիանոս [10] ամս վեց. եա Հիպատի Գ. սպանաւ ի նոր բան-տին (Եւս. ի Հռենոս գետ)։

Տակիտոս ամիս չորս (Եւս. 7). եւ սպանաւ ի Պոնտոս։

Փղորիանոս՝ ամիս չորս (Եւս. աւուրս 84). եւ սպանաւ ի Տարսոն։

Պռոբոս [11] ամս վեց (Եւս. եւ ամիս 4). եա Հիպատիս Ե. եւ սպանաւ ի Սերտէոս (Եւս. ի Սիրմիոն)։

1. ՁՌ. Ալէքսանդր՝ ԺԳ. ՐՁԽԹ։ 2. Մաքսիմիանոս՝ Գ.
» ՐՁԾԲ։ 3. Գորգիանոս՝ Ձ. ՐՁԾԸ։ 4. Դեկոս Բ.
» ՌՁԿՁ։ 5. Փիլիպպոս՝ Ձ. ՐՁԿԴ։ 6. Գաղդ(ղ)ոս՝ Ժ.
» ՐՁԿԹ։ 7. Վաղերիանոս՝ ԺԵ. ՐՁՁԴ։ 8. Գաղիանոս՝
» Բ. ԻՁՁՁ։ 9. Կղաւդէոս՝ Ա. ՐՁՁԷ։ 10. Աւրեղիանոս՝
» Ձ. ՐՁՂԳ։ Աւենտիղոս՝ Ա. ՐՁՂԴ։ 11. Պռօբոս՝ Է.
» ՐՊԱ։

* Լուս. « Ի Դեկիայ աւուրս ննջեցին սուրբ մանկունքն յԵփեսոս »։

Կարոս՝ [1] վախճանեցաւ ի Միջագետս (Եւս. ի Սելեւկիա Բաբե-լոնի). եւ Կարինոս սպանաւ ի պատերազմին Կոռնակայ (Եւս. ի Մարգեան կամ յԱրիսեան դաշտի). եւ Նումերիանոս սպանաւ ի Թրակ, ամս երկուս. եւ նոյն հիպատոս Բ։ Լինին ընդ ամենայն յԱւգոստեայ ամք ՅԺԵ։

Դիոկղետիանոս [2] * ամս քսան եւ երկուս (Եւս. 20). եւ հի-պատի Ժ. եւ մեռաւ ի Դաղմատիա (Եւս. ի Սաղոնա)։

Մաքսիմիանոս նորին որդի՝ իննեւտասն. եւ հիպատոս Ը. եւ ի յՈւմբիոսին խեղդեցաւ (Եւս. ի Գաղղիա)։

Մաքսիմոս եւ որ ընդ նմա՝ ութեւտասն. եւ նոյն հիպատի Ը. ընդ Կարինոսի պատերազմեալ մեռան։

Կոստան(դ)ոս՝ ամս չորեքտասան. եւ հիպատոս Զ. եւ մեռաւ ի Գաղլիա ի պաղատան։

Մաքսիմիանոս, նորին որդի, ամս եւթն. եւ հիպատի Ա. եւ ի Տիբերիս գետ անկաւ։

Սեւերոս՝ ամս հինգ. եւ հիպատոս Բ։

Ղիկինոս՝ ամս եւթնեւտասն. եւ հիպատոս Դ։

Մաքսենտիանոս եւ Գաղլինոս՝ իննեւտասն. եւ հիպատոս Ժ. եւ մեռան ի Կիւղիկիա։

Գրատիանոս՝ ամս երիս, եւ մեռաւ։

Մեծն Կոստանդիանոս [3] ** երեսուն եւ երկու (Եւս. 20). եւ հիպա-տոս Ը. եւ մեռաւ ի Կոստանդնուպօլիս։

Կոստանդոս [4], նորին որդի, ամս երեսուն եւ ինն. եւ հիպ. Ժ։

Կոստանտոս [4], նորին եղբայր, ամս վեշտասան. եւ հիպ. Դ։

Կոստանդինոս [4] կրտսեր ամս քսան եւ երիս. եւ հիպ. Դ։

Յուղիանոս [5], փեսայ Կոստանդինոսի, ամս երկուս եւ կէս. եւ արար այլ կեսար ամս հինգ. եւ հիպ. Դ։

1. ՋՍ. Կարուս՝ Բ. ՐՊԳ. 2. Դիոկղետիանոս՝ ԻԲ. ՐՊԻԷ (Ե)։
» 3. Կոստանդիանոս՝ ԻԲ. ՐՊԽԷ։ 4. Նորին որդիքն՝
» ԻԴ. ՐՂՁԱ (?)։ 5. Յուլիանոս՝ Ա. ՐՂՁԲ։

* «Առ որով հալածումն եկեղեցեաց. եւ կենարար վարդապետութիւն Քրիս-տոսի պատմեցաւ Հայոց, ի ձեռն սրբոյն Գրիգորի Պարթեւի»։

** «Մեծն Կոստանդիանոս շինէ զԲիւզէս կզզի. առ սովաւ գտաւ փայտ խա-չին. առ սովաւ պայծառանայր մեծն Աթանասիոս Աղեքսանդրի եպիսկոպոս։ Եւ Արիանոսք զաւրացան, եւ որոշեցաւ Աթանաս. լինի ժողով ի Նիկիա, եւ մերժի անաւրէնն Արիոս»։

վաղենտիանոս [1] * ամս երկոտասան. եւ հիպ. Դ։
վաղէս [2] նորին եղբայր՝ ամս չորեքտասան. եւ հիպ. Զ։
վաղենտիանոս կրսեր քսան. եւ հիպատոս Գ։
Գրատիանոս [3] եւ որ ընդ նմա՝ ութնեւտասան. եւ հիպատոս Ե։
Թէոդոս մեծն [4] ** երեսուն եւ վեց. եւ հիպատոս Դ։
Արկադիոս որդի [5] նորա քսան եւ երեք. եւ հիպատոս Զ.
Ոնորիս՝ [5] նորին եղբայր՝ երեսուն եւ վեց. եւ հիպատոս ԺԳ ։
Թէոդոս [6] որդի Արկադի՝ յիսուն եւ երկուս. եւ հիպատոս ԺԸ։
վաղենտիանոս վերերեւեալն, եւ որք ընդ նմա՝ երեսուն. եւ հիպատոս Ը ։
Մարկիանոս [7] *** ամս հինգ. եւ հիպատոս Ա։
Ղեւոնն [8] մեծ՝ ամս ինննեւտասան. եւ հիպատոս Է։
Անթեմիս՝ ամս վեց. եւ հիպատոս Ը։
փոքր Ղեւոնն՝ ամ մի. եւ հիպատի Ա։
Զենոն [9] **** նորին հայր՝ ութեւտասան, ամիսս չորս։
Անաստասիոս՝ [10] քսան եւ ութն, ամիսս երկուս։
Յուստիանոս [11] ամս ինն, աւուրս քսան եւ չորս։
Յուստինիանոս [12] երեսուն եւ ութ, եւ ամիսս հինգ։
Տիբերիոս [13] ամս երիս։
Մաւրիկիս [14] ամս քսան, ամիսս չորս։
փոկաս՝ [15] ամս ութ ։
Երակղիս [16] ամս երեսուն ։

1. ՁՈ. վաղենտիոս՝ Է. ՐՊՁԹ։ 2. վաղէս՝ Զ. ՐՊՂԵ։ 3. Գրա-
» տիանոս՝ Զ. ՐՁԱ։ 4. Թէոդոս մեծ ԺԵ. ՐՁԺԶ։ 5. Նո-
» րին որդիքն՝ ԻԴ. ՐՁԽ։ 6. Թէոդոս փոքր՝ ԼԷ. ՐՁՀԷ։
» 7. Մարկիանոս՝ Է. ՐՁՁԴ։ 8. Ղեւոնդեանք՝ ԺԹ. ՑԳ։
» 9. Զենոն՝ ԺԸ. ՑԻԱ։ 10. Անաստաս՝ ԻԵ. ՑԽԸ։ 11. Յուս-
» տիանոս՝ Թ. ՑԾԷ։ 12. Յուստինոս՝ ԼԸ. ՑՂԵ։ Իուս-
» տինոս՝ ԺԱ. ՑՃԶ։ 13. Տիբերիոս՝ Զ. ՑՃԺԲ։ 14. Մաւ-
» րիկոս՝ Ի. ՑՃԼԲ։ 15. փոկաս՝ Ը. ՑՃԽ։ 16. Երակլիոս՝
» Լ. ՑՃՀ։ կոստանդինոն՝ Ա. ՑՃՀԱ։ կոստանդին՝ Բ.
» ՑՃՀԳ։ Լինին յԱդամայ ցայս վայր ամք ՑՃՀԳ։

* «Ի Վաղէսեանց աւուրս պայծառանայր Նանձիանձունն աստուածաբան, եւ որոշեցաւ սուրբն Ներսէս պարթեւն»։

** «Ի Թէոդոսի աւուրս լինի ժողով յԵփեսոս, եւ որոշի անաւրէնն Նեստոր։ Եւ երեւեցան ի Հնդկաց գազանք, ցլափիղք, եւ ուղտիձք, եւ ձիանմանք, եւ այլք բազմադիմիք։ Եւ ի սորա ԺԹ. ամին զարթեան սուրբ մանկունքն ի յայրին Նիւքղոս»։

*** «Ի սորա աւուրս եղեւ ժողով ի Քաղկեդոնի. եւ որոշի երանելին Դիոսկորոս ի փլաբիանոսէ հերձուածողէ։

**** «Ի Զենոնի աւուրս պայծառանայր սուրբն Սիմէոն Սիւնական ի վերին Աղեքսանդրի։ Եւ ի Ղեւոնի աւուրս պայծառանայր Տիմոթէոս Աղեքսանդրի երէցն»։

## ԹԱԳԱՒՈՐՔ ՊԱՐՍԻԿՔ ՍԱՍԱՆԱԿԱՆՔ.

*Արտաշիր ի սասանեան, յիսուն։*
*Շապուհ յարտաշրեան՝ եւթանասուն եւ երեք։*
*Ներսեհ ի շապհեան՝ տասն։*
*Որմզդի շապհեան՝ չորս։*
*Շապուհ որմզդեան՝ եւթանասուն եւ երեք։*
*Արտաշիր ի շապհեան՝ չորս։*
*Վռամ յարտաշրեան՝ մետասան։*
*Յազկերտ վռամեան՝ քսան եւ մի։*
*Վռամ յազկերտեան՝ քսան եւ երկու։*
*Յազկերտ վռամեան՝ իննեւտասն։*
*Պերոզ յազկերտեան՝ քսան եւ եւթն։*
*Վաղարշ յազկերտեան՝ չորս։*
*Ջամասպ ի Պերոզայ՝ երկու։*
*Կաւատ ի պերոզեան՝ քառասուն եւ մի։*
*Խոսրով ի կաւատեան՝ քառասուն եւ եւթն։*
*Որմզդի խոսրովեան՝ երկոտասան։*
*Խոսրով որմզդեան՝ երեսուն եւ ութ։*

**ԵՒՍԵԲԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԻ.** — *Առ Մովսէսիւ եւթն ամիս գործեցաւ խորանն* (*Եւս. Քր. Բ. էջ* (106)։ *Որթոյ գիւտ ի Դիոնիսեայ ծանեաւ, ոչ ի Մեղեսացւոյն. զՍամփսոնէ ասեն թէ կարի նշանաւոր էր զաւրութեամբ, մինչեւ համեմատել Հերակղի գործոցն* (*Եւս. Բ. էջ.* 136)։ *Առ Սողոմոնիւ Հոմերոս պւեաէտ ճանաչէր* (*Եւս. Բ. էջ.* 142, 148)։ *Եւ ութ ամ կատարեաց զշինուած տաճարին Երուսաղեմի* (*Եւս. Բ. էջ.* 168)։ *Եւ առ սովաւ ոմանք զՀոմերոս եւ զԵսիո́դոս պատմեն* (*Պորփ. ժամանակագրականք*) *լեալ*։

*Յովրամայ ութերորդ ամին Եղիաս վերացաւ յերկինս. եւ Գոդողիաի Ովնադաբ որդի Ռեքաբայ ճանաչիւր* (*Եւս. Բ. էջ.* 160)։

*Ի Յովաթամայ առաջին ամին՝ Յունաց Ողիմպիադն կարգեցաւ։ Առ Ամովսաւ եւ Պողղա կին մարդ ի Հեբրայեցիս մարգարէացաւ* (*Եւս. Բ.* 170, *ըստ Ափրիկանոսի*)։

*Եղեւսինեակ Եղղեոս Թագաւորեաց, մինչ Տրիպտողմեոսն՝ զորմէ ասէ Փիղորոքոս՝ երկայն նաւու շրջել, եւ ցորեան բաշխել.*

*եւ կարծել՝ թէ թմչուն ամ իցէ նաւն. քանզի եւ ձեւն այնպիսի իմն էր (Եւս. Բ. էջ 114)։*

ԵՊԻՓԱՆՈՍ. — *Բեղոս Թագաւորեաց ամենայն Ասորեստանեաց ամս վաթսուն եւ երկուս, բայց ի Հնդկաց։ Բեղոս՝[1] յունարէն Դիոս, Հայերէն Արամազդ, պարսկերէն Որմիզդ։ (Եւս. Քր. Ա. եր. 25)։*

*ԶՇամիրամայ բիւր առասպելս յաւելեն. որ ունի զԱսիա. եւ զհող երկրին հարթէ վասն ջրհեղեղացն. եւ զԲաբիլոնի նորոգէ եւ պարսպէ։ (Եւս. Ա. 84 և 92)։*

*Ցերեսուն եւ հինգ ամի Շամիրամայ, Աբրահամու քառասուն եւ հինգ. սկիզբն քառասուն եւ մի յոբելինին։*

*Ցոբեղն՝ ըստ Եբրայեցւոց՝ յիսուն ամ է։ (Եւս. Բ. եր. 66)։*

*Պերսեւս ի Պարսից վերայ զաւրաժողով եղեւ, եւ զԳորգոնա գլխատեաց. եւ մինչ այլ կին արար զեղեցիկ, որ ապշեցուցանէր զտեսաւղսն զեղանին, մինչեւ քարանալ համարել։ Զոլմէ Դիկիմոս ասի (Եւս. Բ. եր. 118 անթերի). . . . . . . . . .*

*. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .*

*Ամփիոնի Թեբայեցի թագաւորեաց. զոլմէ ի վիպի գայ՝ վէմ հին հարկանել, եւ զքարինս շարժեցուցանել. քանզի էին ապուշք ոմանք լսաւղքն։ (Եւս. Բ. եր. 120–122)։*

*Առ Սիկոնացւոց թագաւորութեամբն Պեգասոս՝ թերեւս ձի ինչ էր երագ, ստացուած կնոջ ուրուք։ Իսկ Պաղեփատոս ասէ, թէ նաւ էր Բաղերեփոն Տիպէսասոն։ (Եւս. Բ. էջ. 118)։*

*Դեգաղոսի իրքն՝ որ կարծեցուցանէր, թէ պատկերս շարժունս առնիցէ. քանզի նախ զոտս պատկերացն ի միմեանց զատանէր, զի այլքն կից գործեալ հասանէին։ Եւ պատմէ Պաղե-*

1. ՁՈ. կայսերաց Ա. Ցանկէն անմիջապէս վերջ ունի. «Թագաւորք
» Հայոց ի Նոյէ նահապետէ մինչեւ ց Վ. բորբ յԱ-
» դամայ. ի նմանէ սկիզբն ազգք բազմացան եւ եղեն
» առաջինքն Հայոց. — Յաբ(ե)եթ, Գամեր, Թիրաս, Թոր-
» գոմ, Հայկ, Արմենակ, Արամայիս, Ամասիա, Գե-
» ղամ, Հարամ, Արամ, Արայն, Անուշաւան, Պարէտ,
» Արբակ, Զաւան, Փառնակ, Սուր, Հաւանակ, Վաշ-
» տակ, Հայկակ, Ամբակ, Անակ, Շաւաշ, Նորայն,
» Վստամ, Կար, Գոռակ, Հրանդ, Ընծակ, Գլակ, Հօ-
» րա, Զարմայր, Պերճ, Արբուն, Բազուկ, Հոյ, Յու-

փառոս՝ եթէ որպէս հանդերձ որուոց իւրով Ն(ի)կարոսիւ նաւէ կալեալ փախեաւ ի Նինեայ. եւ վասն չգտանելոյ պատսպարան փախստեանն՝ համարեցաւ թռանել: (Եւս. Բ. էջ. 126):

Դիղաւկոս Քիացի, որ զերկաթոյ զաւդ իմացաւ, ճանաչէր (Եւս. Բ. եր. 180):

Եւ զՀիպրեայ՝ զկնոջէ ումեմնէ, Պղատոնն պատմէ, թէ անհնարին.. փիսաէս էր: Առ Նինեաւ թագաւորութեամբն Ասորեստանեայց, Եգիպտացւոց կշռի վեշտասաներորդ հարստութիւն. ըստ որում թագաւորէին վեշտասաներորդ Թեբէացիք՝ ամս հարիւր իննսուն: (Եւս. Բ. էջ. 128):

Եւթնեւտասներորդ հարստութիւն՝ Հովիւքն թագաւորէին ամս հարիւր եւ երեք: ԶԵգիպտացւոց թագաւորս Հովիւս՝ ի դէպ է անուանել զՅովսէփ եւ զեղբարսն. զի երեւէին սոքա ի ժամանակին՝ առ Հովուացն Եգիպտոսի իշխանութեամբ իջեալ Եգիպտոս: (Եւս. Բ. էջ. 78):

Փրիքսոս, ըստ ոմանց, համարեցաւ հեծանել ի խոյ ոսկի գիսակ, եւ շրջել ընդ ալիս՝ հանդերձ Եղղեաւ քերբն իւրով փախուցեալ ի մաւրուէն, որ սպանանել կամէր զնա. եւ դիպեցաւ նաւ, որոյ նշանակն խոյ էր. իսկ... (Պաղեփատոս ասէ թէ) դայեակն որ ապրեցոյց զնա, խոյ կոչիւր: (Եւս. Բ. էջ. 116):

Ափրիկանոս՝ առ թագաւորութեամբն Արտաշէսի համարէր զիմաստասէրսն. ուստի եւ Նեկտանեբոս վերջին թագաւոր Եգիպտոսի, որ Փարաւոն կոչիւր, գերծեալ զհեր գլխոյ՝ յայղակերպս փախեաւ: Վասն Դանիմիդեայ առեւանգութեանն՝ Տրովայ հաւրն Գանիմիդեայ եւ Տանտաղայ ճակատք լինէին, որպէս պատմէ Փանոկղէս: Ապա ուրեմն զուր են առասպելքն պւետիկոսին, որ իբրեւ զարծուոյ ինն կուռ բանս կարկատէր: (Եւս. Բ. էջ. 118):

Զ Ո. սակ, կապակ, Պարոյր, Հրաչեայ, փառնաւազ, Պաճոյճ,
» կոռնակ, Միւս Հայկակ, Երուանդն սակաւակեաց,
» Վ,ադարշակ, Արշակ, Արտաշէս, Տիգրան: իսկ զկնի
» այսոցիկ թագաւորէ Արշակ քաջ՝ ի զաւակէ Աբրահա-
» մու, ի Քետուրական ծննդոց՝ որ եկեալ ի Հայս,
» անուանք այս են. Աշրամ, Աբգար, Սանատրուկ,
» Երուանդ, Արտաշէս, Տիրան, Վ,ադարշ, Խոսրով,
» Տրդատ, Խոսրով, Ս(Տ)իրան, Աբշակ, Պապ, Վ,արազ-
» դատ, Արշակ, Վ,ադարշակ, Խոսրով, Վ,ռամ, Շապուհ,
» Խոս(ր)ով, Արտաշիր՝ սկայորդի »:

Աթենացւոց թագաւորաւն աղջկանն յափշտակութեան իրք յԱիդոնեայ Մողոսացւոց թագաւորի, որոյ էր շուն մի յաղթանդամ Կերպերոս, զոր Պերիթուս սպան, եկեալ ի կնոջն առեւանգութիւն՝ Թեսեաւ հանդերձ, եւ զԹեսեւ արգելոյց՝ որ մերձն էր յապականել, պատահեալ Հերակլի։ Իսկ վասն յայտնի վտանգին՝ ի դժոխոց ելեալ կարծէր։ Եւ պատմէ զայս Փիլոքորոս՝ յերկրորդում ատթիդոյնն։ (Եւս. Բ. էջ. 114–116)։

Եւ Որփեւս Թրակացի, որ աշակերտ Մուսայ եւ Սեպայ էր. առ որովք Պորփիւրեանն Ոսիրդոս պետէս ճանաչէր։ (Եւս. Բ. 126–127)։

Առ Ղատինացւոց թագաւորաւն Իշացլուցն եւ Ղապիթեացն կռիւն. Իշացուլք՝ Թեսաղացւոց հեծեալքն էին, որպէս պատմէ Պաղեփատոս յառաջնում ատթիդւոջն։ (Եւս. Բ. էջ. 128)։

Մինոտաւրոսի իրքն, զոր Փիլոքորոսն պատմէ, յերկրորդում ատթիդին, թէ Մինոտաւրոս անուն զաւրավար ոմն էր՝ անագորոյն եւ խիստ բարոյիւք. զի Մինոս ի կռուի ագոնեաւ ի վերայ Անդրոգէ դնէր. զոր սպանին Աթենացիքն, եւ ընդ կռուոյն յաղ(թեալ) պարգեւ զորդիսն առյր զԱնդրիկեցիսն։ Ուժգին էր Տաւրոս, եւ ամենեցուն (Եւս. Բ. էջ. 130 ամբողջ) . . . . . . . . . . . . . . . . . . . . եւ զխոստացեալ որդիսն արգելուցանել ի պատերազմին ամբոխելոյ։ Եւ վասն սոցին իրաց վկայ լինել Եղանոսացւոցն (Եւս. Կնոսացւոցն)։

ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՒՈՐՔ. — Առաջին Կիւրոս, երկրորդ Կամբիւսէս. թագաւորեն Մոգքն եղբարք՝ ամս եւթն։ Առ սոքաւք սկսան զհուր պաշտել Պարսիկք, որ բերաւ յԵրուսաղէմէ ի Բաբելացիս։ Եւ անուն յԱթաշ փոխեցաւ. զի եւ անուն մոգին Աթաշվշնասպ կոչէր։ Առ Արտաշէսիւ թուի լեալ Եսթերայ իրքն, որ ի Հրէից պատմի, թէ նոյն իցէ որ առ Եբրայեցիսն Արշաւիրն անուանի, եւ ըստ եւթանասնից թարգմանութեան՝ Արտաշէս կոչի։

Նեէմի եբրայեցի, տակառից պետ Արտաշէսի արքայի, արձակեալ կանգնէ զքաղաքն, եւ ածէ զպարիսպն, եւ կատարէ զգործն յերեսուն եւ երկու ամի նորին Երկայնաձեռն Արտաշէսի։ Առ Դարեհիւ խորթիւ արար սպառումն թագաւորութեան Պարսից եւ Մարաց, Քաղդեացւոց, եւ Ասորւոց, եւ Գպաց, եւ այդ բազում ազգաց՝ մակեդոնեան Աղեքսանդրոս. եւ միահեծան կալաւ զթագաւորութիւնսն։ (Եւս. Բ. եր. 224 և Ա. եր. 104)։

Ի Դարեհէ արշաւրայ՝ Բաբեղացւոց թագաւորութիւնն ի Պարթեւս փոխեցաւ, ի յիններորդի հնգերորդի ողիմպիադին. եւ Պարթեւք ի Մակեդոնացւոց ապստամբեցին, եւ ի նոցանէ թագաւորեաց Արշակ քաջ (Եւս. Բ. 232). որք կային զթագաւորութիւնն ամս չորեքհարիւր քսան եւ երկուս, մինչեւ յաւուրս Արտաշրի։

Նումաս Պոմպիլիոս կայսր՝ երկուս ամիսս յաւել ի տարի, զՅանուարի եւ զՓեբրուարի. զի յառաջ տասն ամիս էր տարին. նաեւ զԿապիտոլիոնն ի հիմանց շինեաց։ Նոյն եւ... (զԳոնգիարիոն ետ Ասսարիս՝ փայտեղէն եւ խեցեղէն լումայս)։ (Եւս. Քրոն. Բ. էջ 178)։

Իսկ Տուղղոս (Ոս)Տիղիոս, Հռովմայեցւոց թագաւոր, արկանէ ի կիր զծիրանիս, զոսկի գաւազանսն. եւ վասն նորին ի տուն նորա փայլատակունք տեղացին յերկնից. եւ նա խարշեալ սատակէր։ (Եւս. Բ. 184)։

Զի Ովհաննէ առաքելոյ եւ աւետարանչէ՝ մինչեւ ցՏրայիանոսի ժամանակն պատմէ յերկարել զկեանս իւր Իրէնէոս։ (Եւս. Բ. էջ. 280)։

Եւ Բասիլիդէս հերձուածող ընդ այն ժամանակս էր։ (Եւս. Բ. էջ. 286)։

Նովատէս յեկեղեցւոյ ճեղքեցաւ, որ զնաւատիանոսաց հերձուածն յարոյց։ (Եւս. Բ. էջ. 298)։

ՅԱնտիոք եպիսկոպոս նստաւ Պաւղ Սամոսատցի, որ հերետիկոս գտեալ՝ մերժեցաւ. վասն զի զառողջ կանոնս որոշեալ, զԱրտեմոնի աղանդն նորոգեաց (Եւս. Բ. էջ. 300), որ ընդ հակառակն գնաց Յովհաննու աւետարանչին՝ կարգաւք եւ կրաւնիւք։

---

# ԿԱՅՍԵՐՔ ՀՌՈՎՄՈՑ 1) ԹԷ ՈՐՉԱՓ ԱՄՔ ԿԱԼԱՆ ԿԱՄ ԱՄԻՍՔ,

# ԵՒ ԶԻ՛ՆՉ ԳՈՐԾ ԳՈՐԾԵՑԱՆ[1]

ԳԱՅԻՈՍ՝ *որ կոչեցաւն Յուլիոս՝ ամս երիս, եւ ամիսս երիս* (ԻԲՈ. *«չորս»*)։ *Սա առաջին եկաց ի Հռովմ ինքնակալ կայսր, յերրորդ ամին Կղէոպատրեայ Եգիպտոսի եւ Աղեքսանդրի թագաւորի, յետ գաղարելոյն Անտիոքայ Ասորւոց թագաւորութեանն, ի* ՃՁԴ 2) *Ողիմպիադին, ի* ՁԸ. *ամի Հռովմ քաղաքի շինութեան։ Ի Հրէից քահանայապետութեանն Հիւրկանոսի, որ էր աներ Հերովդի՝ հաւրն Արքեղաւոսի, եւ Լիւսինեայ, եւ Անթիպատրոսի, եւ Հերովդի, եւ Փիղիպպոսի. որ եւ ինքն իսկ Յուլիոս եգիտ զլուսնացոյցն Հռովմոց. եւ զԲեսեքստոնն* (Bissexti) *կարգեաց...* (ԻԲՈ. *«որք»*) *են ամք յառաջ քան զլինել նշանջին. եւ զԿւինտիղոս* (ԻԲՈ. *«զԿնի Տիւղոս ամսոյ»*) *ամիս՝ Յուլիս անուանեաց. վասն յայն ամսեան ծնանելոյն։*

1. ՁՈ. *Հայկ — Արշակունի թագաւորաց ցանկէն անմիջա-*
» *պէս ետքը կը յարէ. «Հռովմոց թագաւորք». —*
» *Գայիոս Յուլիոս, առաջին թագաւոր Հռովմոց, կա-*
» *լաւ ամս* Ե։ *Յետ սորա Աւգոստոս՝ ամս* ԾԶ։ Ի *սորա*
» ԽԲ. *ամին ծնանի Յիսուս Քրիստոս՝ որդին* Աս-

1). *Գրուածիս տպագրութիւնը յառաջացած ժամանակ՝ գտանք, վանացս Մատենադարանին մէջ, ուրիշ օրինակ մ'ևս. այն է՝ թիւ* 1245 (ԻԲ. Ոսկեփորիկը) *գրուած ի թու.* ՌՃԳ, *որ կը պարունակէ ամբողջապէս կայսերաց պատմութիւնը. այսինքն է՝ Գայիոս Յուլիոսէն սկսեալ՝ մինչեւ Խազրաց տիրապետութիւնը Հայոց վրայ. յամին* ՃԼԴ, *հետեւեալ վերնագրի ներքեւ.* Կայսերք Հռոմայեցւոց, եւ գործք *նոցա ։*

*Գրչագիրս՝ որչափ որ ընդհանուր կերպով կը զուգընթանայ Շիրակացւոյ Ժամանակագրութեան, բայց մասնական իրաց նկատմամբ՝ ունի անկէց նշանաւոր տարբերութիւններ, որոնք մերթ ընդ մերթ* ԷՃ *գրչագրին կը համաձայնին։ Գէթ յատուկ անուանց եւ թուականներուն վերաբերեալ տարբերութիւնքը փակագծի մէջ կը նշանակենք, առընթեր Շիրակացւոյ բնագրին —* ԻԲՈ *մենատառերով —. իսկ աւելին կամ պակասորդ տեղերն ալ կը գտնենք ի ստորեւ, մեր ծանօթագրութեանց կարգին մէջ, ի հարկէ նոյն մենատառերով եւ չակերտիւ։*

2). *Աստի մինչեւ «շինութեան» չունի* ԻԲՈ ։

ԱՒԳՈՍՏՈՍ, *ամս յիսուն եւ վեց, եւ ամիս վեց. Սեբաստոս Հոքաւորոս, յորջորջեցաւ եւ զՍեբաստոս* (ԻԲՈ. « *զՍեբաստոս* ») *ամիս՝ Աւգոստոս անուանեաց, վասն ի նոյն ամսեան իւրոյ ծնըն-դեանն լինելոյ:* (*Եւս.* Բ. 256):

*Նա համարէն տիրեաց ամենայն Հռովմայեցւոց եւ Յունաց:* Ի *սորա քսաներորդի* (ԻԲՈ. «*Ի. գի*» *միայն*) *եւթներորդի ամի սպա-նաւ Կղեոպատր Աղեքսանդրի եւ Եգիպտոսի թագաւոր. եւ եղեն նուաճեալք ընդ Հռովմայեցւոց:* Ի *սորա քառասներորդ երկրորդ ամի ծնանի Յիսուս Քրիստոս ի Բեթղեհէմ Հրէաստանի:* (*Եւս.* Բ. *էջ* 252–253): *Լինին յԱդամայ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ամք* ԲՄԿԴ:

*Եւ* 1) *էր Հրէից թագաւոր Հերովդէս այլազգի, Անտիպատրեայ Ասկաղոնացւոյ, եւ մայր Եւպրեայ արաբացւոյ:* (*Եւս.* Բ. *էջ.* 254):

Ի *սորա երեսուն եւ մի ամի եղեւ ծնունդն Քրիստոսի. եւ յերեսներորդի երրորդի կոտորեաց զմանկունսն ի Բեթղեհէմ. եւ* 2) *յետ երեք ամի գառն հարուածովք սատակեցաւ: Այս ի սորոյ ժամանակագրական պատմութենէ ընդաւրինակեցաւ:* (*Եւս.* Բ. *էջ* 260): *Իսկ ըստ այլոց՝ այսպէս ունի պատմութիւնք. ըստ Հրէից մինչեւ ի ծնունդն՝ ամք չորս հազար. ըստ Յամբրացւոց՝ չորս հազար. ըստ յունակ*(*ց*) *Եպիփանու Կիպրացւոյ պատմութեանն* 3) *հինգ հազար հինգ հարիւր.* (*Մալ. Ժամանակագր. էջ* 228). *ըստ Քրոնիկոնի բազմավէպ պատմութեանն՝ հինգ հազար հարիւր ինն-սուն եւ ութ:*

ՏԻԲԵՐԻՈՍ՝ *ամս քսան եւ երիս* (ԻԲՈ. « *քսան և չորս* »). *ի սորա հնգետասան ամին գայ ի մկրտութիւն Յիսուս Քրիստոս՝ ի*

ՁՈ. *տուծոյ, ի Բեդղէէմ Հրէաստանի. ի սմին ամի ժողո-*
» *վին Աբրահամէ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ամքս*
» ... ԺԵ: *Տիտոս՝* (*Տիբերիոս*) *ամս* ԻԴ: Ի *սորա* ԺԵ *ամին*
» *մկրտի Քրիստոս, եւ ի* ԺԹ. *չարչարի: Միւս Գայիոս՝ ամս*
» Դ: *Կղօդիոս՝ ամս* ԺԴ: *Ներոն՝ ամս* ԺԳ: *Վեսպիանոս՝*
» *ամս* Ժ: *Տիտոս՝ որ զՀրէայս պաշարեաց, եւ Երուսա-*
» *ղէմ ի հիմանց բրեաց. եւ* ԾՋ *բիւր արանց կոտո-*
» *րեաց սրով եւ սովով, որպէս պատմէ Յովսիպոս, եւ*

1). *Աստի մինչեւ « Արաբացւոյ » չունի* ԻԲՈ:
2). *Անկէ մինչեւ « սատակեցաւ » չունի* ԻԲՈ:
3). *Նօտրագրուած բառերը չունի* ԻԲՈ:

*Յորդանան գետ, առ Յովաննէս. եւ ի վեշտասան ամին գլխատեցաւ Մկրտիչն. եւ յութուտասներորդին* (ԻԲՈ. « *յեւթն և տասներորդին* ») *խաչեցաւ Քրիստոս ի Հրէից. եւ յիննեւտասներորդ ամին՝ քարկոծեցաւ Ստեփաննոս. եւ ի նոյն ամի ընտրեցաւ Պաւղոս յառաքելութիւն: Եւ էր յԵրուսաղէմ եպիսկոպոս Յակոբոս եղբայրն Տեառն. եւ ի նոյն ժամանակս էր Յովսեպոս պատմագիր* 1): (*Եւս. Բ. էջ.* 266):

*Եւ տեղեկացեալ Տիբեր վասն սքանչելագործ նշանացն Քրիստոսի, խնդրեաց առ ինքն զՊիղատոս: Իսկ նա երկուցեալ ի տանջանաց, մինչդեռ յովկիանոս նաւէին, մատն անձին իւրոյ եղեւ, եւ ընկեցաւ ի ծով:* (*Եւս. Բ. էջ* 266 *տարբեր*):

*Առ սովաւ էր Աբգար Թագաւոր Հայոց՝* 2) *յՈւրհայի, որոյ գրեալ թուղթ առ Փրկիչն ի ժամանակի խաչելութեանն, ընկալեալ թուղթ պատասխանւոյ, աւրհնելով զքաղաքն, ցուցեալ նմա զկատարումն ելիցն իւրոց՝ որ յԵրուսաղէմ. եւ յուսայ ի գրեալսն առաքել առաքեալ մի առ նա, յաշակերտաց իւրոց՝ բժշկել զհիւանդութիւն նորա. զի էր նա պատագրոս յոտից իւրոց: Իսկ ըստ հրամանի Փրկչին մերոյ Թադէոս, որ էր մի յեւթանասնիցն, եկն յՈւրհա առ Աբգար Թագաւոր, եւ բժշկեաց զնա, եւ մկրտեաց ամենայն տամբ իւրով: Եւ շինեալ անդ եկեղեցի՝ ձեռնադրեաց քահանայ զԱդդէ, որ էր կերպասագործ Թագաւորին:*

*Եւ եկեալ գնաց անտի ի Հայս՝ քարոզել զբանն կենաց: Իբրեւ զգաց զգալուստ նորա Սանատրուկ արքայ Հայոց, գնաց ընդ առաջ նորա, եւ սպան զնա յԱրտազ գաւառի, ի գեաւղն ի Բազրատ:*

ՁՈ. այլ Խ բիւր գերեաց՝ վաճառակուր արարեալ: Եւ
» պատճառն այնչափ բազմութեան ի քաղաքին գտանե-
» լոյ՝ զզատիկ պասեքաց տօնն ասէ լինել. յորժամ ա-
» մենայն ազգն ի մի վայր ժողովեալ էին, եւ միանգա-
» մայն իբրեւ ի բանտի արգելեալն: — Պարտ եւ պատ-
» շաճ էր նոցա, որ զկենարարն մեր՝ յայնմ տաւնի
» նենգեցին, յայնմ տաւնի եւ զհատուցումն ընդունել:

1). ԻԲՈ *ունի հոս « եւ Փիլոն ժամանակագիր »:*

2). *Յուլ. Ափրիկանոսէն եւ Լաբուբնայէն սկսեալ՝ շատեր կը պատմագրեն Թագաւորիս եւ Քրիստոսի Տեառն մերոյ հետ ունեցած յարաբերութեան մասին. սակայն այս հատուածս իր ազգայնական մանր պարագաներով Մ. Խորենացիէն առնուած կ'երեւի, ըստ վկայաբանութեան սրբոյն Սանդխտոյ եւ Թադէոսի:*

ԳԱՅԻՈՍ՝ *ամս երիս, եւ ամիսս երիս* (ԻԲՈ. « *և ամիսս Դ* »)։ *Ի սորա յառաջնում ամին Մարկոս աւետարանիչ յԱղեքսանդրէ՝ յեգիպտոս քարոզեաց զաւետարանն, եւ եկեաց ամս քսան եւ երկուս, եւ մարտիրոսացաւ ի Բիկուղուս* 1)։ (*Եւս. Քր. Բ. եր.* 268)։ . . . . . . . . . . . . . . . . .

ԿՂԱւԴԻՈՍ՝ *ամս չորեքտասան* (ԻԲՈ. « *երեքտասան* »), *եւ ամիսս ինն։ Առ* 2) *սովաւ եղեւ սովն համաշխարհական։* (*Եւս. Բ.* 268)։ *Եւ ընդ նոյն ժամանակս Հերովդէս՝ եղբայր Արքեղայոսի՝ սպան զՅակոբոս զեղբայրն Յովաննու սրով. որ յառաջագոյն գլխատեաց զՄկրտիչն Յովաննէս։*

*Եւ ի նոյն ժամանակս Պետրոս առաքեալ՝ զԱնտիոքացւոց եկեղեցին հաստատեաց։ Եւ գնացեալ ի Հռովմ, անդ զաւետարանն քարոզեաց։ Եւ եկաց անդ առաջնորդ եկեղեցւոյն ամս քսան։ Իսկ յետ Պետրոսի առաքելոյ՝ եկաց եպիսկոպոս առաջին յԱնտիոք՝ Եւոդիոս։* (*Եւս. Բ. էջ* 268)։

ՆԵՐՈՎՆ, *ամս երեքտասան եւ ամիսս ութ* (ԻԲՈ. « *ինն* »)։

*Ի սորա եւթներորդում ամի՝ Յակոբոս եղբայրն Տեառն քարկոծեցաւ ի Հրէից, վասն (քարոզելոյն) զՅիսուսէ՝ գոլ որդի Աստուծոյ։ Եւ եկաց յետ նորա եպիսկոպոս յԵրուսաղէմ Սիմոն։* (*Եւս. Բ. եր* 270)։

*Եւ յերեքտասաներորդին* (ԻԲՈ. « *յեւթնևտասաներորդին* ») *սպան զՊաւղոս եւ Պետրոս, ի Հռովմ, Ներոն։* (*Եւս. Բ.* 272)։ *Եւ յետ սակաւ աւուրց յարուցեալ քաղաքն ի վերայ նորա, փախեաւ, եւ կենդանւոյն թաղեցաւ։* (*Եւս. Բ. էջ* 273 « *անձին արար* » *կ'ըսէ*)։ *Եւ եկաց յետ առաքելոյն Պետրոսի առաջին եպիսկոպոս ի Հռովմ Ղինոս՝ ամս երեքտասան* (ԻԲՈ. « *ԺԴ* »)։

ՁՈ. Եւ *ժողովի ամենայն ժամանակն մինչեւ յերկրորդ*
» *ամն Վէսպիանոսի, յորում եղեւ յետին աւրն, եւ ի*
» *ԺԷ. ամի Տիբերեայ կայսեր. եւ իսկ ի սմանէ կենա-*
» *րար քարոզութեանն՝ ամք* Խ։ *Տիտոս՝ ամս* Բ։ *Դեմե-*
» *տիանոս՝ ամս ԺԶ։* Եւ *երկրորդ յետ Ներոնի՝ Դոմե-*
» *տիանոս հալածեաց զքրիստոնեայս. առ որով առա-*
» *քեալն Յովհաննէս ի Պատմոս կղզին տուաւ, ուր*
» *զՅայտնութիւնն լինէր նմա տեսանել։ Ներուա՝ ամս* Ա։

1) ԻԲՈ. « *ի Բուկղոս Իրոսացն* ? »։ *Յետ նորա նստաւ առաջին եպիսկոպոս յԱղեքսանդրիա՝ Անիանոս ամս* ԻԶ »։

2). *Աստի մինչեւ « համաշխարհական » չունի* ԻԲՈ։

ՎԵՍՊԻԱՆՈՍ՝ ամս տասն. ի սորա եւթներորդում (ԻԲՈ. «Ե. դի») ամին Տիտոս որդի նորին պարշարեաց զԵրուսաղէմ, և առ զնա ի Զատկին. և բրեաց ի հիմանց զքաղաքն. և (ԻԲՈ. «մեց») զբիւրս արանց կոտորեաց: Պատմէ և Յովսեպոս՝ սովաւ և սրով՝ հարիւր քսան բիւրս կոտորեալ. և այլ ևս բիւրս յիսուն՝ գերեաց, և վաճառակուր արար յաւտար ազգս: (Եւս. Բ. 272):

Իսկ հաւատացեալքն՝ որ էին ի քաղաքին, յառաջագոյն հրամանաւ առեալ ի հրեշտակէ սրբոյ՝ գնացին ի քաղաքէն, և եկեալ բնակեցան ի քաղաքի մի, որ կոչի Փաղաղեղայ (ԻԲՈ. «Փաղեղա»), մաւտ ի կողմանս Սկիւթացւոց Պողայ 1):

ՏԻՏՈՍ՝ ամս երկուս. առ սովաւ Բեսխոս (ԻԲՈ. «Բեռխոս») լեառն պատառեցաւ, և հուր շնչեաց, զքաղաքս և զգաւառս այրեցեալ: (Եւս. Բ. էջ 276):

ԴՈՄԵՏԻԱՆՈՍ՝ եւթնեւտասն (ԻԲՈ. «Դեմեախանոս ամս ԾԶ»): Ի սորա չորրորդ (ԻԲՈ. «երրորդ») ամի տուաւ Յովաննէս ի Պատմէոս (ԻԲՈ. «ի Պատմոս») կղզի՝ վասն բանին Աստուծոյ: Առ սովաւ երևեցաւ Մենանդրոս, որ էր աշակերտ Սիմոնի կախարդի. և 2) էր նա շամրտացի, ի գեղջէ Քփրաւա 3). և ասէր նա զանձնէ, թէ՝ Ես եմ փրկիչն, որ ի վերուստ իջեալ. և թէ որք ինձ հաւատան և մկրտին, յինէն կեանս յաւիտենականս, մշտնջենաւորս ունին յայսմ աշխարհի. և կան մնան առանց ծերանալոյ և մեռանելոյ: Եւ ի սոյն ժամանակի էր հերձուածն Աբիոնի (Եբիոնի), և Կերինթոսի, և Նիկողաւոսացւոցն: Քանզի Աբիոնի՝ ի հեբրայեցւոց լեզուն աղքատ կոչի. և ասէր նա, թէ զծնունդն Տեառն ի կուսէն և ի Հոգւոյն սրբոյ ոչ ուրանամ. բայց ի սկզբաննէ ոչ էր նա ընդ Հաւր, և իմաստութիւն և զաւրու-

ԶՈ. Տրայիանոս՝ ամս ժԹ: Անդրիանոս ամս ԻԱ: Ան-
» տոնինոս, որ կոչեցաւն Բարեպաշտաւն, ամս ԻԴ:
» Մարկոս՝ ժԹ: Կոմոդոս՝ ժԴ: Պերտինաքս՝ Ա: Սեւերոս՝
» ժԸ: Անտոնն՝ Դ: Աղեքսանդր՝ ժԴ: Մաքսիմինոս՝
» Դ: Գորդիանոս՝ Զ: Փիլիպպոս՝ Է: Դեկոս՝ Ա: Գաղ-
» ղոս Դ: Վաղերիանոս՝ ժԵ: Կղօդիոս՝ Ա: Աւրելիա-
» նոս՝ Զ: Տակիտոս և Պրոբոս՝ Զ: Կարոս՝ Դ: Դիոկ-
» ղետիանոս՝ Ի: Կոստանդիանոս՝ ԼԴ: Կոստաս և

1). Վերջին բառերը չունի ԻԲՈ:
2). Ասկէ մինչև «նենգութիւն» չունի ԻԲՈ:
3). Յուստինոս՝ Քափարդէ (տես և Եւս. Պատմ. եկ. եր. 202) և Քրփրապիա:

*թիւն Աստուծոյ։ Եւ զշաբաթս եւ զայլ վարս իբրեւ զՀրեայս պահէր. բայց զմիաշաբաթ իբրեւ զհաւատացեալս պահէր. եւ զատաքեալ կոչէ աւրէնս խոստորնակս։*

*Իսկ Կերինթոս ասէր, ասէ. Ուսեալ եմ ես ի Հրեշտակաց, թէ յետ յարութեանն լինելոց է արքայութիւն ի վերայ երկրի։ Եւ դարձեալ զցանկութիւն մարմնոյ միւսանգամ ի մէջ Երուսաղէմի եմք լինելոց գործել. եւ ըստ թուոյ հազար ամաց լինելոց է սուտ հարսանեաց։ Եւ ի սոյն ժամանակս էին եպիսկոպոսք տեսուչք եկեղեցեաց ի կողմանս կողմանս, որք գրեցին խաւսս ընդդէմ Մարկիոնի եւ Վաղենտիանոսի. Երուսաղեմի եկեղեցւոյն՝ Կասիանոս, Աղեքսանդրացւոց՝ Ագրիպիանոս, Անտիոքացւոց՝ Թէոփիղոս, Հռովմայեցւոց՝ Սոտեր, յետ որոյ Աղիւթիւրոս. Փիղիպպոս՝ Գորտինացւոց, Մեղէտոս՝ Սարդիացւոց, Ապողինարիս՝ Յարապաւղիս, Դիոնեսիոս՝ Կորնթացւոց, Պոպղիոս՝ Աթենացւոց։ Սա պատմէ վասն քաղաքին իւրոյ, թէ ապականեցան ի հաւատոց, եւ մերձ էին յետս դառնալ. յետ որոյ Կոդրատոս եկաց եպիսկոպոս եւ հաստատեաց զնոսա ի հաւատս աւետարանին։ Եւ պատմէ վասն իւր, թէ աղաչեցին զիս եղբարքն՝ գրել թուղթ առ Կորնթացիսն՝ վասն հաւատոցն. եւ առին լցին զնոսա առաքեալքն՝ սատանայի որոշմամբ։ Եւ չեն ինչ զարմանք. զի եւ ի գիրս Տեառն մերոյ փոփոխեցին ոմանք, եւ արկին նենգութիւն։ (Եւս. Պատմ. եկ. եր.* 204)։

**ՄԱՐԿՈՍ ԱՆՏՈՆԻՆՈՒ** 1) *ամս հնգետասան* (*ԻԲՈ. «ԺԹ, և ամիս մի»*)*։ Սա եւ ի պատերազմ ի Կուադս* (*ԻԲՈ. չունի*) *ընդ*

ՁՈ. *Կոստանդիին՝* Ա։ *Յոբիանոս՝* Ա։ *Վաղէս՝* Ձ։ *Վա-*
» *ղենտիանոս՝* Է։ *Գրատիանոս՝* Է։ *Թէոդոս մեծն՝*
» ԺԷ։ *Արկադ եւ Ոնորիոս՝* ԻԴ։ *Թէոդոս փոքրն* ԼԲ։
» *Մարկիանոս՝* Զ։ *Ղեւոնդ՝* Է։ *Մարկոս* (?) Է։ *Անաս-*
» *տաս՝* Ժ։ *Յուստինոս՝* Ժ։ *Յուստանոս՝* ԼԹ։ *Տի-*
» *բեր՝* Ե։ *Մաւրիկ՝* Ի։ *Փովկաս՝* Ը, *մինչեւ ի գալն*
» *Խոսրովու յՈրմզդան արքայից արքայի։ Յադամայ*
» *մինչեւ ի Ջրհեղեղն ամք* ՍՄԽԲ։ *Եւ ի Ջրհեղեղէն մինչեւ*

1). *Հոս կը ծանօթագրէ գաղափարողն. «Ի լուս. յաւել ոմն՝ ոչ նոր գրիչ. Ասա պակաս Ներուաս, եւ Տրայիանոս, եւ Ադրիանոս, որ թէ ընդօրինակես, եւ զնոսա գրեա. — եւ զգիշին որդին ի քարի յիշեա։* A proposito ԻԲՈ *գրչագիրն ունի ամբողջապէս, այսպէս. «Ներուաս՝ ամ մի եւ ամիսս* Դ։ *Զսա մեկնիտոսն*

Գերմանիկս, եւ ընդ Սարմատս. եւ նեղեցան զաւրն ի ծարաւոյ. եւ գունդ մի ի զինորացն՝ որ էին քրիստոնեայք՝ ի Մելիտինէայ (ԻԲՈ. չունի), յաղաւթս կացեալ առ Աստուած 1) ծունր եդեալ ի վերայ երկրի. եւ մինչդեռ Թշնամիքն զարմացեալ հայէին, եղեւ յանկարծակի շարժումն մեծ, եւ որոտումն, եւ կայծակունք տեղացին ի վերայ Թշնամեացն, եւ... ցան (ԻԲՈ. «սաստկեցան»). եւ անձրեւով ջրոցն ընդարձակեցան զաւրքն: (Եւս. Բ. էջ 290): Ի նոյն ժամանակս 2) յարեաւ հերձուածն Կրետացւոց, որոց պատճառք Տրայիանոս եղեւ հերձուածոյն Կրետացւոց, աշակերտ Ցուստիանոսի: Զի կաշխարհ աներեւոյթ ասէին, եւ զամուսնութիւն՝ պոռնկութիւն եւ ապականութիւն. եւ զկերակուրս խոտեն: Իսկ Սեւերոս հաստատեաց զայս աղանդ, եւ կոչին Սեւերիանոսք: Սոքա հայհոյեն զՊաւղոս, եւ զԳործս առաքելոցն ոչ ընդունին. բայց ինքն Տրայիանոս հաստատեաց եւ եդ աւետարան. եւ կոչեաց Ցատակատովն. այսինքն է՝ խառնակումն. եւ առ բազումս կայ մինչեւ ցայսաւր: Ի նոյն իսկ ի ժամանակս էր Բարդածան արամացի՝ յՈւրհայի. այր երեւելի եւ իմաստուն, եւ լեզուաւ կ(որովի) ընդդէմ ամենայն հերձուածողաց: Բայց էր սա յառաջ յունման ընդ Վաղենտիանոսի. եւ իբրեւ գիտաց՝ անարգեաց զբազում պատմութիւն նորա, այլ ոչ

ԶՈ. յառաջին ամն Աբրահամու՝ ամք ՋԽԲ: Եւ յառաջին ա-
» մէն Աբրահամու՝ մինչեւ ի Մովսէս եւ յելսն իսրայէղի
» ՇԷ: Եւ յելից ժողովրդեանն՝ մինչեւ ցՍողոմաւն եւ ի
» շինուած տաճարին՝ ամք ՆՋ: Եւ ի շինուածոյ տաճարին՝
» մինչեւ ցԶօրաբաբէլ եւ յերկրորդ շինուած տաճարին՝
» ամք ՇԺԲ: Եւ ի Զօրաբաբելէ եւ ի շինուածէ տա-

տասուած համարեցաւ. եւ սաստկեցաւ ախտիւ՝ ի Սաւղուստան բուրաստանին: Առ սովաւ արձակեալ Յոհաննէս ի կղզոյն՝ դարձաւ յԵփեսոս, եւ անդ զաւետարանն գրեաց:

Տրաիանոս՝ Թագաւորէ ամս ԺԹ, եւ ամիսս Զ: Առ սովաւ եղեւ հալածումն եկեղեցւոյ: Ի ձեռն սորա խաչեցաւ Շմաւոն Կղէոպեանց՝ եպիսկոպոս Երուսաղէմի, յետ Յակոբոս եղբօր Տեառն, որ էր եղբաւրորդի հաւր նորա՝ ապանաւ, կացեալ ամս ՃԻ. եւ ի Ժ. երորդ ամի Տրայիանոսի հանգեաւ Յոհաննէս յԵփեսոս:

Ադրիանոս՝ Թագաւորէ ամս ԻԱ: Սա եկեալ յԵրուսաղէմ, ետես յատակեալ զքաղաքն, եւ հրամայեաց շինել զնա:

Տիտոս՝ հանդերձ որդւովքն Աւրելաւ եւ Կոմոդիանոսիւ՝ Թագաւորէ ամս ԻԳ»:

1). Անկէ մինչեւ «հայէին» չունի ԻԲՈ:

2). Անկեց մինչեւ «հերձուածոյն» չունի ԻԲՈ:

լիով կատարելապէս ջնջեալ զառաջին հերձուածոյն։ (Եւս. Պատմ. եկ եր. 312)։

ԿՈՄԻՏՈՍ՝ ամս չորեքտասան (ԻԲՌ. «Կոմիդոս՝ ամս ԺԳ»). ի սորա 1) աւուրս Թէոդոտոն Պոնտացի՝ ի հերձուածոյն Մարկիոնի՝ երրորդ թարգմանութիւն արար։ Առ սովաւ էր աղանդն Ապեղղեայ, որ հպարտացեալն էր յայլոց ծերութեանն. եւ մի սկիզբն խոստովանի. եւ վասն մարգարէութեանցն ասէ, թէ ի հոգւոյ հակառակութեանց են. եւ ասէր զանձնէ իւրմէ ուսուցիչ եւ վարդապետ. եւ ոչ գիտէր հաստատել՝ զոր ուսուցանէրն։ Եւ բազում ինչ հայհոյեաց զՄովսէս, եւ ընդ նմին զԲանն Աստուծոյ հայհոյեաց բազում խաւսիւք իւրովք. զի եւ նա ի հրապոյրս անկեալ ի բանս կուսի միոյ դիւահարի։ Եւ պատմէ Արազոնն՝ աշակերտ Տերտիանոսի՝ ի Հռոմ քաղաքի, որոյ եղեալ էր գիրս նշանաւորս ընդդէմ Մարկիոնի. եւ ի սոյն ժամանակս էր հերձուած սուտ մարգարէութեանն փռիւգացւոց, եւ աղանդն փղաբիանոսի, եւ փաղեստոսի, եւ մոլորութիւնն Թարցիանոսի։ (Եւս. Պատ. եկ. 368–371, և Քր. Բ. էջ 290)։ Զի փռիւգացւոց կուրութեան եղեւ առաջնորդ Մոնտանոս, որ էր ի միւսում փռիւգացւոց ի գեղջէ, զի անուն էր նորա Բէբլու (Արբեղբու կամ Արդաբա). եւ արկ զթոյնս իւր ի կողմանս Ասիացւոց. եւ ասէր Մոնտանոս զանձնէ, թէ Ես եմ հոգին բարեխաւս։ Եւ Պրիսկիղա եւ Մաքսիմիղա կանայք մարգարէք Մոնտանեայ. եւ ոգլին պիղծ Մաքսիմիղա՝ ասէր, թէ Հալածիմ ես գայլ ի գառանց. չեմ գայլ, այլ բան եւ հոգի եւ զաւրութիւն։ Եւ պատմէ Մեղոտէս աւրինակագիր եկեղեցւոյ, եւ ասէ, գտի ես ի խաւսս նոցա, թէ Ոչ է պարտ մարգարէի խաւսել արտաքոյ կամաց իւրոց. եւ ասէ զՄոնտանեայ եւ զկանանցն, թէ չարժեցան յապականիչ ոգւոյ, եւ սպանին զանձինս իւրեանց ուրոյն ուրոյն

ԶՈ. Ճարին՝ մինչեւ ցկենարարին Յիսուսի Քրիստոսի
» ծնունդն՝ ամք ՇԺԸ։ Եւ ի ծննդենէ Տեառն մերոյ՝
» մինչեւ ցկոստանդիանոս՝ ամք ՄՂԳ։ Եւ միանգամայն
» յԱդամայ՝ մինչեւ ՚յ Լ. ամն խոսրովու Որմզդեան...։
» Եւ յԱդամայ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ԲՄ ամ։
» Եւ յԱբրահամէ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ՍԺԵ
» ամ։ Եւ յելիցն իսրայէղի՝ մինչեւ ի ծնունդն Քրիս-
» տոսի ՌԺԱ ամ։ Եւ յԱղեքսանդրէ Մակեդոնացոյ

1). Աստի մինչեւ «լուծցեն զնա» չունի ԻԲՌ։

*ժամանակս, ըստ մահուն Ցուղայի մատնչի։ Իսկ Փղաբիանոս անգաւ ի Հռոմ քաղաքի, անգեալ յերիցութենէ եկեղեցւոյն, եւ ընդ նմին Բաղէսսոս։ Սոքա զբազումս մոլորեցուցին զկնի իւրեանց, եւ եղեն հակառակք ճշմարտութեանն. եւ Թարլաաոս (Թեպաո) որպէս թէ ընդ երկինս վերանայցէ, անկաւ եւ մեռաւ չարաչար, որ սաս րում (Աօղերիայ) Որբանոս։ (Եւս. Պատմ. եկ. եր.* 371–379)։

*Ի սոյն իսկ յերեքտասաներորդ ամին Կոմիդեայ, ելից զպաշտաւն եկեղեցւոյն Հռովմայեցւոց Աղիւթերոս. եւ յետ նորա Բեկտոր։*

*Եւ Աղեքսանդրացւոց՝ Դոմետրիոս, Անտիոքացւոց՝ Սարապւոն Կեսարեայ Պաղեստինացւոց՝ Թեոփիղոս, Երուսաղէմի՝ Նարկէոս, ի Կորնթոս Խեղագացւոց՝ Բաքիղոս, Եփեսացւոց՝ Պողիկարպոս, եւ Գաղիղէացւոց՝ Ղունդուճի (Լուգտոնի) Բենիոս։ Ի նոցունց աւուրս եղեւ խնդիր բազում յուզման սրբոյ Զատկին. զի Ասիացւոց եկեղեցիքն զչորեքտասան լուսնոյ զատկացն՝ յորում եւ դիպէր յաւուրց շաբաթուն՝ լուծանէին եւ առնէին Զատիկ։ Իսկ եպիսկոպոսն Հռովմայ Բեկտոր՝ կամեցաւ հատանել ընկենուլ զԱսիացւոց եկեղեցեացն առաջնորդս, իբրեւ ոչ ողջամիտս. վասն ոչ ի միաշաբաթուն լուծանել զԶատիկն։ Իսկ Իրենեոս ըստ անուան իւրոյ՝ էր նա խաղաղարար. գրեաց թուղթ առ Բեկտոր, եւ աղաչեաց ի խաղաղութիւն։ Ցայնժամ ամենայն եպիսկոպոսունքն միով հաւասարութեամբ խորհեցան առնել զաւրն զատկաց. զի ի միաշաբաթին լուծցեն զնա։ (Եւս. Պատմ. եկ. եր.* 393–402, *ուղղին խանգարմունքն*)։

ԵՂԻՈՍ ՊԵՐՏԻՆԱԿՍ *ամ մի. առ սովաւ սաստիկ հրայրեացք եղեն, եւ պաղատն, եւ կուսանաց տունն այրեցաւ ի Հռովմ։ (Եւս. Քր. Բ.* 294)։

ՍԵՒԵՐՈՍ՝ *ամս հնգետասան (ԻԲՈ. «Սեւերիոս՝ ամս ԺԸ»). սա յարոյց սաստիկ հալածանս ի վերայ եկեղեցեաց, յորում անթիւք եղեն վկայք։ Եւ Ղեւոնդէս՝ հայրն Ովրիգենի մարտիրոսա-*

ՋՈ. մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ՑԼԴ ամ։ — Ասսացուք
» եւ վասն ժամանակաց եւ դարուց։ — Յառաջին դա-
» րուն՝ Ենովք յերկինս փոխեցաւ։ Երկրորդ դարուն՝
» ջուր ջրհեղեղին երեւեցաւ։ Յերրորդն՝ բաժանումն լե-
» զուացն. ուստի ՀԲ ազգ սփռեցան ընդ ամենայն
» երկիր։ Չորրորդն՝ աւետիքն Աստուծոյ լինին առ Ա-
» բրահամ. որով փրկեցան ամենայն տիեզերք։ Եւ հին-
» գերորդ Սողոմոն տաճար անուան Աստուծոյ շինէր։

ցաւ (ԻԲՈ. «վկայեաց») 1)։ Եւ ի սորին աւուրս երրորդ թարգմանութիւն յԵրիքով գտաւ, ի կարաս թագուցեալ։ (Եւս. Բ. 294)։

Եւ ի սորին աւուրս էին Ասկղեպիդէս, եւ Բիգասոս, եւ Ուկղողէս, եւ Թեոտրատէս, եւ Հերմոպաւղիս, եւ Կապողնիդէս։ Սոքա համարձակ ձեռնամուխ եղեն ի գիրս Աստուծոյ, եւ ասէին՝ թէ ուղղեմք. եւ կարծեցին զանձինս իմաստուն գոլ քան զՀոգին Սուրբ. եւ ոչինչ էին նոքա, թէ ոչ՝ դիւահարք։ (Եւս. Պատմ. եկ. 409–411)։ Եւ ի սոյն ժամանակի էր Ափրիկիանոս ժամանակագիր։

ԱՆՏՈՆԻՆՈՍ ՍԵՒԱՑ (ԻԲՈ. «Անտոնինոս Սեւերեայ») ամս եւթն. առ սովաւ էր Նարկէսս (ԻԲՈ. «Նարկէսոս») եպիսկոպոս յԵրուսաղէմի, այր սքանչելի. զի 2) էր երբեմն հսկումն՝ մեծ տաւնին Զատկաց, եւ պակասեաց ձէթ ճրագացն։ Իսկ Նարկէսս հրամայեաց բերել ջուր. եւ եկաց յաղաւթս ի վերայ ջրոյն, եւ հրամայեաց արկանել ի ճրագսն՝ պինդ հաւատովք. եւ շրջեցան ջուրքն ի բնութիւն ձիթոյ։ (Եւս. Պատմ. եկ. 438–439)։ Եւ եկաց Նարկէսս ամս հարիւր ինն եւ տասն։ Իսկ 3) Աղեքսանդրոս եպիսկոպոս՝ ի կողմանց անտի Գամբրացւոց՝ եկն յաղաւթս կալ յԵրուսաղէմ. եւ արգելին զնա եղբարքն անդէն, լինել եպիսկոպոս փոխանակ Նարկէսեայ՝ ի հրամանէ Աստուծոյ։ Եւ սոյն իսկ Աղեքսանդրոս գրեաց առ Անկղիպիդէս եպիսկոպոս, ասէ. Մեք եղբարք, զՊաւղոս եւ զՊետրոս եւ զայլ առաքեալսն իբրեւ զՔրիստոս ընդունիմք։ Այլ որ ինչ յանուն նոցա ստութեամբ գրեալ է, խոտեմք։ Իբրեւ ոչ ընթերցայ ես զաւետարանն՝ զոր յանուն Պետրոսի ունէին ոմանք ի ձէնջ, զի այժմ գիտացի՝ թէ հերձուածք թագուցեալ են ի միտս նոցա ի հերձուածոյն Մարկիոնի։ (Եւս. Պատմ. եկ. եր. 442–445)։

ՉՈ. Իսկ ի վեցերորդին՝ Տէր մեր Յիսուս Քրիստոս մարմ-
» նացաւ ի սուրբ եւ յանարատ կուսէն Մարիամայ։
» Յադամայ մինչեւ ցԽ. ամն Յարեդի՝ Ռ ամ։ Եւ ի
» Խ. ամէն Յարեդի՝ մինչեւ յՇՂ. ամն Նոյի՝ Ռ ամ։ Եւ
» յՇՂ ամեն Նոյի՝ մինչեւ ցՂԵ. ամն Սերուքայ Ռ ամ։ Եւ
» ի ՇԵ. ամէն Սերուքայ՝ մինչեւ ի ԺԹ. ամն Յայիրայ Ռ
» ամ։ Եւ ի ԺԹ. ամէն Յայիրայ՝ մինչեւ ի Գ. ամն Պղտ-
» ղոմեայ, եւ ի ԻԴ. ամն Անտիոքու մեծի Ռ ամ։ Եւ ի չոր-

1). Աստի մինչեւ «դիւահարք» չունի ԻԲՈ։
2). Աստի մինչեւ «հաւատովք» չունի ԻԲՈ։
3). Աստի մինչեւ «թագուցեալ» չունի ԻԲՈ։

*Եւ ի սոյն ժամանակին գտաւ վեցերորդ թարգմանութիւնն յԵմմաւուս՝ ի կարաս թաքուցեալ։*

ՄԱԿՐԻԱՆՈՍ (*ԻԲՈ. «Մարկինոս»*) *ամ մի. առ սովաւ հանգիսիցն տեղիք շուրջ տեսան(եղ)եաց այրեցան ի Հռոմ։* (*Եւս. Քր. Բ. էջ* 296)։

ԱՆՏՈՆԻՆՈՍ *միւս՝* (*ԻԲՈ. «Թագաւորէ ամս Գ»*) *ամս չորս. առ սովաւ հին Եմաւուս* (*ԻԲՈ. «Եմմաւուսն»*) *նորոգեցաւ եւ Նիկապաւղիս կոչեցաւ յԱփրիկիանոսէ։* (*Եւս. Քր. Բ. էջ* 296)։

ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ ՄԱՄԵԱՑ *որդի՝ ամս չորեքտասան* (*ԻԲՈ. «ԺԴ»*)։ *Առ սովաւ Հիպերպոս Բոսպորացի* (*ԻԲՈ. «Հիպողիտոս Բոստրացի»*) *գնէր խաւսս բազումս վասն Զատկի. եւ զտասնամեայ կանոնսն, եւ վասն վեցաւրեայ ծննդոց, եւ վասն աւրհնութեան աւրհնութեանցն, եւ սակաւ ինչ յԵզեկիէղէ։* (*Եւս. Պատմ. եկ. էջ* 467)։ *Եւ ի սոյն աւուրս էր Ովրիգինէս՝ յԱղեքսանդր, եւ ներքինեցոյց զինքն։*

ՄԱՔՍԻՄԻԱՆՈՍ *ամս չորս* (*ԻԲՈ. «Մաքսիանոս՝ ամս Գ.»*)։ *Սա յարոյց հալածանս ի վերայ եկեղեցեաց, եւ հրամայեաց զամենեսեան կոտորել։*

*Եւ* 1) *ի սոյն ժամանակս Ովրիգինէս եղեալ յԱղեքսանդրի Կեսարեայ Կապուդկացւոց, եթող վարդապետ եկեղեցւոյն զՀերակղէս զաշակերտն իւր. որ յետ Դեմետրի կալաւ զեպիսկոպոսութիւն Աղեքսանդրի։* (*Եւս. Պատմ. եկ. էջ* 475)։

ԳՈՐԳԻԱՆՈՍ՝ *ամս վեց։ Սա յաւուրս զատկի տաւնին կամեցաւ խառնիլ յաղաւթս՝ ընդ ժողովուրդս եկեղեցւոյ. եւ ոչ հրամայեաց նմա եպիսկոպոսն Փղաբիանոս՝ մինչչեւ խոստովանեալ. եւ* 2) *նախանձն առնոյր յամենայն մտաց իւրոց։* (*Եւս. Պատմ. եկ. էջ* 384)։

Ձ Ո. *բորդ ամէն* Պտղոմեայ, *եւ ի* ԻԴ. *ամացն* Անտիոքու՝
» *մինչեւ յ*ԼԵ. *ամն* Խոսրովու *որմզդեան՝* ՊԻԷ *ամ։* Եւ
» *պիտոյ է լրումն* Ց.*աց՝* ՃՀԳ *ամ։* Իսկ *զ*Է.*րդ* Դ.Ն՝
» *չաբաթ հանգստեան, արասցէ կատարած աշխարհիս,*
« *կամ թէ ի թիկանց աշխարհիս խառնեսցէ՝* Աստուած
» *գիտէ, եւ ոչ այլ ոք։* Իսկ Գ.*րդ* Ժ.*ներեակն եւ կէս*
» Ժ.*երեկի՝ ի տեսիլ սրբոյն* Սահակայ ԳՃԾ *ամ է.*

1). *Աստի մինչեւ «Աղեքսանդրի» չունի* ԻԲՈ։
2). *Աստի մինչեւ «վաթանից» չունի* ԻԲՈ։

Առ սովաւ էր Բերիւլլոս եպիսկոպոս Բոստրայ, ի կողմանս Արաբացւոց. սա ժպրհեցաւ ասել վասն Փրկչին մերոյ, թէ Ո՛չ էր նա անձամբ գոյութեան յառաջ՝ մինչեւ եկեալ էր յաշխարհ, եւ մարմնացեալ. եւ չիք նմա յասել աստուածութիւն անձին իւրոյ, այլ աստուածութիւն Հաւր իւրոյ բնակեալ էր ի նմա։ (Եւս. Պատմ. եկ. 482–483)։ Իսկ էին այլք՝ որ ասէին, ի նմին կողմանց, թէ Շունչք ընդ նոսին մարմնոցն մեռանին եւ ապականին, եւ ի յարութեանն նորոգի ի նա. իսկ աղաչեցին զՈվրիգենէս, եւ նա դարձուցանէր զնա ի ճշմարտութիւն։ (Եւս. Պատմ. եկ. էջ 487). եւ էր նա ամաց վաթսնից։ (Եւս. Պատմ. հկ. էջ 485)։

ՓԻԼԻՊՊՈՍ՝ ամս վեց (ԻԲՈ. « ամս Է. »)։ Ի սորա ի սկըզբան թագաւորութեանն հազար ամ լցաւ Հռովմայ ի սկզբան շինելոյ քաղաքին։

ԴԻԿՈՍ՝ ամս երկուս (ԻԲՈ. « ամ մի »). սա յարոյց հալածանս ի վերայ եկեղեցեաց. եւ եղին վկայք եպիսկոպոսք, ի Հռովմ՝ Փղաբիանոս, յԱնտիոք՝ Բաբիղաս, յԵրուսաղէմ՝ Աղեքսանդրոս։ Ի նմին ժամանակի ըմբռնեալ եւ Ովրիգենէս, եւ բազում չարչարեալ յԱղեքսանդր. բայց ի կատարումն մարտիրոսութեան ոչ եհաս։ (Եւս. Քր. Բ. էջ 298)։

Եւ 1) անտի եկեալ ի կողմանս Կեսարեայ Ստրատոնեաց (ԻԲՈ. չունի). եւ ելեալ յԵրուսաղէմ՝ սակաւ ինչ շրջէր անդ. եւ իջեալ ի Տաւրոս՝ անդ շրջէր. եւ հետազաւտէր զթարգմանութիւնս ութեւչի գրովք յաւրինեալ. եւ հրաշագան եւ մեծարգի եցոյց զեւթանասնիցն թարգմանութիւնս՝ քան զայլոցն. քան որ կրկին էր յաւրինակին եւ եւթանասունքն թողին, զայն Ովրիգենէս աստեղբ

ՁՈ. եւ է փոխումն նորա յառաջին ամն՝ երկրորդ Յազ-
» կերտի որդւոյ Վռամայ, թագաւորին Պարսից։ Որոյ
» (Սահակայ) յիշատակն աւրհնութեամբ եղիցի. եւ ա-
» ղաւթիւք Տէր մեզ ողորմեսցի » 2)։

1). Աստի ցվերջ պարբերութեան՝ Եպիփան Կիպրացիէն քաղուած են տեղեկութիւնք՝ Որոգինեսի մասին։

2). Վերջին հատուածս, որ Ս. Սահակով եւ Յազկերտ Բ. ով կ'աւարտի՝ հաւանօրէն Ե. դարում գրուած կ'երեւի։ Եթէ Մ. Խորենացւոյ գրչէն ելած է այս — ըստ որում անոր պատմագրութեան աւարտած տեղը ճիշտ սա եւս կը վերջանայ — ասկէց կը հետեւի, որ ժամանագրական ընդարձակ գրուած մ'եւս եղած ըլլայ, Ադամէն սկսեալ մինչեւ Ս. Սահակ, որուն՝ իբր վերջնական բովանդակութիւնը կը կազմէ մեզ հասած այդ հատուածը։ Իսկ այն գրուածն ալ կրնայ ըլլալ, որ մեզ ծանօթ պատմութեան մէջ եղած ընդհանուր իրողութեանց կամ դիպաց վերադարձութիւնք եւ ժամանակագրական ստուգաբանութիւնն ըլլայ։

նշանակեաց. եւ ուր պակասէր եւ յաւելուլն, յարմարս արար, որոց եւթանասունքն յանձնէ եղին։ Իսկ ուր զանազանեցին զբանն՝ ղիմնիսկոս է, հիպողիմնիսկոս եղին. մին աստիկեցի նշան է, եւ միւսն բժշկաց, զոր եւթանասունքն կարգեցին։ Զայս արար Ովրիգենէս, եւ առի լինել յաշակերտաց նորա եպիսկոպոսք աւելի քան զվաթսուն, յորոց գայրն Գրիգոր սքանչելագործն՝ ի կողմանս 1) Պոնտացւոց ի Նէոյկեսարիա, եւ Փիրմեղիանոս՝ ի կողմանս Կապադովկացւոց ի մեծն Կեսարիայ. Եւսեբի՝ ի կողմանս Պաղեստինացւոց, ի Պամփիւղիայ։ Իսկ Ովրիգենէս ելեալ ի Տաւրոսէ (ԻԲՈ. «ի Տիւրոսէ») գնաց ի Կիպրոս. եւ գրեաց խաւսս վասն իշխանութեանցն ի յերկինս, եւ վասն աշխարհածրարութեանն, եւ վասն յարութեանն։ Եւ մոլորեալ ի ճշմարտութենէն՝ եղեւ հակառակ եկեղեցւոյ. եւ վասն Որդւոյ ասէ. Ոչ զաւրէ տեսանել զՀայր. եւ հրեշտակք ոչ կարեն տեսանել զսուրբ Հոգին. եւ մարդիկ ոչ կարեն տեսանել զհրեշտակս. եւ զդրախտն՝ յերկինս ասէ. եւ վասն մաշկեղէն հանդերձի առաջին մարդոյն ասէ, միթէ մորթագո՞րծ (ԻԲՈ. «կաշեգործ») էր Աստուած. այլ յետ ուտելոյ ի փայտէն, զգեցոյց ոգւոց նոցա զայս մարմինս. եւ մարմինս ոչ յառնէ ի յարութիանն, այլ փոխանակ սորա այլ լինի։ Եւ կեցեալ ամս վաթսուն եւ հինգ (ԻԲՈ. չունի), մեռանի ի Կիպրոս։ Եւ պատմէ զայս Եպիփան եպիսկոպոս Կիպրացւոց (ԻԲՈ. չունի)։ Եւ ի նոյն ժամանակս հալածանաց փախուցեալ եւթն մանկունքն ի Դիկոսէ յԵփեսացւոց քաղաքին, ննջեցին ի Նեւքղոս (ԻԲՈ. «Ցոքղամ») լերինն յայրին, եւ յետ հարիւր քառասուն (ԻԲՈ. «վաթսուն») ամի զարթեան։

ԳԱՂԻՆՈՍ (ԻԲՈ. «Գաղղոս») եւ ՍՈՂԻՍՏՆՈՍ (ԻԲՈ. չունի) ամս երկուս։ Առ սոլաւ Նաւատիոս էր յեկեղեցւոջն Հռոմայ, եւ եղեւ առաջնորդ աղանդոյն Կաթարոսաց. այսինքն՝ որք սուրբս կոչեն զանձինս, եւ զապաշխարութիւն ոչ ընդունին։ Զի Նաւատիոս ասէ. Որ ոք յերկմտութիանն սխալէ, կայ մնայ առանց բժշկութեան այնպիսին։ Վասն որոյ եղեւ ժողով, ի Հռոմ քաղաքի, վաթսուն եպիսկոպոսաց, եւ երիցունք աւելի քան զնոսա, եւ սարկաւագունք 2). եւ հաւանեցան (ԻԲՈ. «հրամայեցան») զՆաւատիոս, եւ զմիաբանեալս նորա աւտար յեկեղեցւոյ. եւ նզովեալ մերժեցին զնոսա։ (Եւս. Պատմ. եկ. էջ 505–506)։ Եւ էին եպիս-

1). ԻԲՈ. նոտրագրուած խօսքերը չունի։

2). ԻԲՈ. չունի նոտրագրուած խօսքերը։

կոպոսք Հռովմայեցւոց՝ Ստեփաննոս, Աղեքսանդրացւոց՝ Դիոնիսիոս, Անտիոքացւոց՝ Փղաբիանոս (Փաբիոս)։ Իսկ սա զհետ Նաւատեայ Թիւրեալ մոլեցաւ (ԻԲՈ․ «մոլորեցաւ»)։ Իսկ Դիոնիսիոս Աղեքսանդրացի հաստատէր զնա՝ բազում աւրինակս ի մէջ բերելով 1)։

ՎԱՂԵՐԻՈՍ եւ ԳԱՂՂԻՈՍ (ԻԲՈ․ չունի) ամս հնգետասան։ Սա ի սկզբան Թագաւորութեանն իւրոյ խոստացաւ տանել խաղաղութիւն առ եկեղեցիս․ իսկ այր մի եգիպտացի կախարդ (Մակրիանոս) շրջեաց զնա յառաջին մտաց անտի․ եւ հրամայեաց, Թէ արք սուրբք եւ արդարք հալածեսցին եւ կոտորեսցին․ եւ զոհել հարց՝ զորդիս իւրեանց դիւաց․ եւ 2) հերձուլ զմանգունս․ եւ դնել մասունս մանուկս զստեղծուածն Աստուծոյ։ Որպէս Թէ ի ձեռն այսց գործոց եղիցին նոքա ի շինութիւն։ Իսկ նա այսահարէր առաւել քան զարժանն։ (Եւս․ Պատմ․ եկ․ էջ 538)։

Եւ յետ սակաւ աւուրց գերի վարեցան ի Պարսս․ եւ եղեւ ծառայ դրիւ բարբարոսաց։ (Եւս․ Քր․ Բ․ եր․ 300)։

Եւ ի սորին աւուրս էր հերձուածն Եփետեայ (Նեպոսի կամ Նեպետոսի)․ զի էր նա եպիսկոպոս երկրին Եգիպտացւոց, եւ ուսուցանէր նոցա հրեերէն, Թէ Ցետ հազար ամի՝ լինելոց է հատուցումն մարմնաւոր ի վերայ երկրի։ (Եւս․ Պատմ․ եկ․ էջ 568)։

Առ սովաւ էր Պաւղոս Սամոստացի, եպիսկոպոս յԱնտիոք, հնգետասաներորդ յառաքելոցն։ (Եւս․ Քր․ Բ․ եր․ 300)։

ԿՂԱՒԴԻՈՍ՝ (ԻԲՈ․ «Թագաւորէ ամ մի») ամս երկուս, ամիսս ինն։ Առ սովաւ Պաւղոս Սամոստացի զառաջին կանոնն որոշեաց, եւ զԱրտեմոնի հերձուածն նորոգեաց․ զի վասն Փրկչին մերոյ ասէ, Թէ Մարդ է սոսկ, որպէս ամենայն մարդիկ․ եւ բնութիւն (ԻԲՈ․ «բնակութիւն») Բանին Աստուծոյ մարդ չեաւ ճշմարտութեամբ 3)։ (Եւս․ Քր․ Բ․ եր․ 300)։

Եւ ժողովեցան եպիսկոպոսք ի տեղեաց 4) տեղեաց՝ յԱնտիոք, առ ի քննութիւն Պաւղոսի Սամոստացւոյ հայհոյութեանն․ Դիոնիսիոս՝ Հռովմայ եպիսկոպոս, Պարմեղիանոս Կեսարու Կապադովկացւոց, եւ Գրիգորիոս եւ Աթանագենոս (Աթենադորոս) եղբարք եպիսկոպոսք եկեղեցւոյն Պոնտացւոց․ Հեղիանոս (Հիղենոս) եկեղեց-

1)․ ԻԲՈ․ չունի այս բառերը։
2)․ Աստի մինչեւ «յառաքելոցն» չունի ԻԲՈ։
3)․ ԻԲՈ․ չունի նշտրագրուած խօսքը։
4)․ Աստի մինչեւ «առ Պաւղոս Սամոստացի» չունի ԻԲՈ։

*ւոյն Տարսոնացւոց, Նիկոմէ (Նիկոմաս) Յիկոնացւոց քաղաքէն, Հիմենոս (Հիմենէոս) Երուսաղէմի եկեղեցւոյն. Թէոտեկնոս՝ Կեսարիայ Պաղեստինացւոց, Մաքսիմոս՝ Բոստր քաղաքի, որ առաջնորդէր եկեղեցւոյն։ (Եւս. Պատմ. եկ. էջ* 582–583)։

*Յայնժամ աղաչեցին զԴիոնեսիոս Աղեքսանդրի եպիսկոպոս՝ գալ ի ժողովն, զի էր ընդդիմաբանեալ բազում խաւսիւք առ Պաւղոս Սամոսացի։ Իսկ երանելին Դիոնեսիոս հրաժարեցաւ գալ ի ժողովն՝ վասն ծերութեան մարմնոյն. բայց գրեաց թուղթ եւ եցոյց նոցա զմիտս եւ զխորհուրդս՝ զոր ունէր վասն խնդրոյ նոցա։ Ժողովեալ սուրբ եպիսկոպոսքն՝ նզովեցին զՊաւղոս Սամոսացի։ Եւ լուծեալ ի պատուոյն՝ մերժեցին զնա յեկեղեցւոյ։ (Եւս. Պատմ. եկ. եր.* 586–587)։

**ԱԻՐԵՂԻԱՆՈՍ**՝ *ամս հինգ եւ ամիսս վեց։ Սա խորհեցաւ հալածանս յարուցանել ի վերայ եկեղեցեացն. եւ ի բարկութենէ Աստուծոյ հարեալ սատակեցաւ՝ ի նոր բանդին։ (Եւս. Քր. Բ. եր.* 300)։

*Յետ որոյ* **ՏԱԿԻՏՈՍ** *(ԻԲՌ. « Մակիտոս ») ամիսս վեց։ Յետ Տակիտոսի՝* **ՓՂՈՐԻԱՆՈՍ** *թագաւորեաց աւուրս ութսուն եւ ութ* 1)։ **ՊՐՈԲՈՍ**՝ *ամս վեց, ամիսս երիս (ԻԲՌ. « ինն »)։ Առ սովաւ մոլեկան Մանիքեցւոց սատակիչ կործանումն ի վարս մարդկան եմուտ։ (Եւս. Քր. Բ. եր.* 300։ *Զի երկու բնութիւնս զոյգ ասաց Մանին, նիւթ եւ խաւար, որպէս թէ չար կամ բարի։ Եւ մոլեալ գիտահար աղանդոյն՝ ասէ. Ես եմ՝ որ Մովսէսի ի լերինն երեւեցայ հրով. եւ ես եմ, ասէ, Հոգին բարեխաւս։ (Տես Եպիփ. Յաղագս հերձ. Մանի)։*

**ԿԱՐՈՍ**՝ *որդւովքն Կարինոսիւ եւ Նումերիանոսիւ՝ ամս երկուս։ Առ սովաւ էր Անատողիոս Աղեքսանդրացի. եւ* 2) *եկաց եպիսկոպոս Ղաւոդիկեցւոցն, որ փիլիսոփայից ուսմամբ պայծառացեալ երեւէր. եւ թիւս չափոց եւ համարոց կարգեաց։ (Եւս Պատմ. եկ. եր.* 597–598)։

**ԴԻՈԿՂԵՏԻԱՆՈՍ**՝ *ամս քսան։ Սա թագաւորեցոյց զՏրդատ քաջ՝ Հայոց մեծաց. եւ յարոյց հալածանս սաստիկս ի վերայ եկեղեցեաց. զի տաճարք աղաւթից կործանեցան, եւ կտակարանք ի մէջ հրապարակաց այրէին. եւ անթիւք եղեն վկայք՝ արք եւ կա-*

1). Բառացի փոխառութիւն Մ. Խորենացիէն (տես. Պատմ. Բ. գլ. ՀԱ)։

2). ԻԲՌ. չունի աստի մինչեւ « երեւէր »։

*նայք. եւ բազում հայրապետք մարտիրոսացան, Պետրոս՝ Աղեքսանդրի եպիսկոպոս, եւ փիղխասթեմ 1) յԱյիս քաղաքի։ Անթեմոս Նիկոքեմացւոց, Սերկանոս (Տիւրանիոս) ի փիւնիկէէ եկեղեցւոյն Ծաւրացւոց. Սիղուանոս՝ Գազացւոց, Ղուկիանոս՝ Մեծացւոց, Պաւղոս (Պեղիւս) եւ Սիղոս (Նեղոս) Եգիպտացւոց. Փաւուստոս եւ Ողոգիոս (Դիոս), եւ Ասոնիոս (Ամմոնիոս), եւ Հիւսիքէս, եւ Թէոդորոս։ (Եւս. Պատմ. եկ. 649–650 տալք.)։*

*Ի սոյն իսկ ի Դիոկղետիանոսէ եւ սուրբքն Հռիփսիմեանք փախստական եղեալք ի Հայս՝ մարտիրոսացան. եւ 2) ի նոյն ժամանակ ելեալ ի վիրապէն խոստովանողն Քրիստոսի սուրբն Գրիգոր, եղեւ քարոզ Հայոց, եւ լուսաւորեաց մկրտութեամբ. եւ եկաց յետ այնորիկ ամս երեսուն 3)։*

ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ՝ *ամս երեսուն եւ չորս. սա 4) անուանեցաւ Սեբաստոս ի զաւրաց իւրոց. եւ հաւատացեալ[1] յԱստուած, եւ 5) ի բանն[2] նորա որդին միածին եւ կենդանարար յամենասուրբ[3] հոգին. եւ տուեալ պատերազմ ընդ անաւրէն թագաւորսն՝ սատակեաց զնոսա, զՄաքսիմիանոս, եւ զՄաքսիմինտէս[4], եւ զԼիկկիանէս։ Քանզի[5] իբրեւ ելից զթագաւորութիւնն[6] Դիոկղետիանոս՝ զքսան ամին[7] մեռաւ ի Դաղմատիա. եւ յետ նորա[8] անուանեցաւ կայսր Մաքսիմիանոս յանձնէ իւրմէ. եւ խորհուրդ մահու նիւթեաց ի վերայ Կոստանդիանոսի։ Իսկ իբրեւ յայտնեցաւ նենգութիւն նորա, չարաչար մահու սպանաւ։ Եւ որդի նորա Մաքսիմինտէս արար հալածանս քրիստոնէից[9]. եւ ինքն պղծութեամբ եւ աղտեղութեամբ և մոգութեամբ եւ կախարդութեամբ եւ պիղծ դիւաց պաշտամամբք[10]*

1. Էջ. Հաւատաց։ 2. չունի։ 3. Սուրբ։ 4. Մաքսիմնտէս եւ
» զՄաքսիմինոս։ 5. Եւ քանզի։ 6. իւր։ 7. Ամին։
» 8. Եւ յետ։ 9. Քրիստոնէից ։ 10. Պաշտմամբ։

1). ԻԲՈ. *ունի «փիլէասթէմ Այացւոց քաղաքի, եւ Ջենոբ Ծայդանացւոց, եւ ԺԱ այլ հայրապետք ի Դիոկղետիանոսէ. եւ սուրբ Հռիփսիմեանքն ի Հայք»։*

2). *Աստի մինչեւ «ամս երեսուն» չունի* ԻԲՈ։

3). *Տես* Մ. Խոր. Պատմ. Բ. գլ. ՂԱ։

4). *Ասկէ կը սկսի գործածել նոր աղբիւրներ։ Եւսեբիոսի հետ ունեցած աղերսները պատահական են։*

5. ԻԲՈ. *չունի ասոր մինչեւ «Նորոգէր զեկեղեցիս» ընդարձակ հատուածը։*

վարէր. զի կարծէր՝ այնու[1] յաղթել Կոստանդիանոսի։ Եւ գործեաց կամուրջ ի Տիբերիս գետ նաւուք[2], եւ մինչդեռ անցանել կամէր, եւ լցաւ գետն[3] զաւրաւքն, յանկարծակի շարժեաց զնաւսն, եւ Մաքսիմիանոս եւ զաւրք իւր ընկղմեցան ի խորս ջրոցն[4], եւ հեղձան կենդանւոյն։ Յայնժամ Կոստանդիանոս հրամայեաց զաւ-րացն՝[5] զյաղթող[6] նշանն Քրիստոսի դրոշմել[7] ի վերայ[8] կապերտակի, որպէս թէ ունիցի յաջ ձեռին իւրում զխաչն. եւ մտեալ ի Հռովմ՝ յամենայն նշանաւոր տեղիս հրամայեաց[9] կանգնել զյաղթութեան[10] նշան խաչին Քրիստոսի։ Իսկ միւս[11] Մաքսիմոս՝ որ յարեւելս ի դաշտի միում[12] հանդերձ զաւրաւքն բնակեալ էր, իսկոյն[13] հասին նմա դատաստանք յԱստուծոյ. զի ամենայն մարմին նորա յանհրեւոյթ[14] հրոյ մաշեալ լինէր, եւ խելապատակ ուղղոյն[15] ուժգին այրէր ի հրամանէ Աստուծոյ, եւ աչք նորա ի դուրս ոստեան. եւ մինչդեռ շունչքն[16] ի ներքս էր, խոստովան լինէր Տեառն Աստուծոյ[17], եւ խնդրէր մահ։ Եւ այսպէս ել յաշխարհէ ստատիկ[18] խայտառականաւք, զոր եւ ասել անմարթ է։ Իսկ Լիկիանէս էր[19] համախոհ յառաջագոյն Կոստանդիանոսի՝ յաստուածպաշտութեան կարգս. քանզի Կոստանդիանոս[20] ետ զքոյր իւր Լիկիանեայ[21] կին։ Իսկ իբրեւ յաջողեցաւ թագաւորութիւնն Կոստանդիանոսի, նախանձեալ ընդ նմա[22] Լիկիանէս, գրգռեաց պատերազմ, եւ յարոյց հալածանս ի վերայ քրիստոնէից[23]. աւերէր զեկեղեցիս, եւ տանջէր զհաւատացեալսն՝ առ ի զոհել կռոցն։ Իսկ աստուածասէրն Կոստանդիանոս զնա[24] սատակեալ՝ ջնջէր յերկրէ, եւ նորոգէր զեկեղեցիս[25]։ Եւ ելեալ ի կողմանս Բ(ի)ւզանդացւոց՝[26] շինեաց քաղաք, եւ կոչեաց յանուն իւր Կոստանդնուպոլիս[27]։ Առ սովաւ երեւեցաւ Տիտոս (Արիոս) երէց[28] յԱղեք-

1. Էջ. Այնի(ւ)։ 2. չունի ։ 3. կամուրջն։ 4. չունի։ 5. Զի։
» 6. Զյաղթութիւն նշանին Քրիստոսի։ 7. Դրոշմեցին։
» 8. Ի վերայ ամենայն։ 9. կանգնէր։ 10. Զնշան յաղ-
» թող, և այլն։ 11. Իսկ Մաքսիմին։ 12. Միոջ հանդերձ
» բնակեալ էր։ 13. Եւ ի սոյն։ 14. Աներեւոյթ հրով՝ որ
» յԱստուծոյ՝։ 15. Ողղոյն։ 16. Շունչն։ 17. Մերոյ։
» 18. չունի։ 19. Յառաջագոյն էր համախորհ։ 20. Կոս-
» տանդին։ 21. Կին Լիկիանէսի։ 22. Նմա։ 23. Քրիս-
» տոնէից։ 24. Եւ զնա։ 25. Զեկեղեցիսն։ 26. Բիւ-
» զանդացւոց։ 27. Կոստանդիանոսի պաւղիս։ 28. Ա-
» րիոս չերէց զոլով յԱղեքսանդրիա։

սանդր, որ արարած ասէր զորդին 1) Աստուծոյ. եւ էին համախոհք[1] նորին փիղիսոփայք՝ Այէտէոս[2] (ԻԲՈ. «Այեափրս» եւ Աստերիոս, Եւնոմիոս[3]. ուք 2) ասէին՝ ո՛չ[4] գոլ զորդի ի բնութենէ հաւր, այլ իբրեւ զմի յարարածոց։ Եւ հրամայեաց մեծն Կոստանդիանոս՝ ի խնդրոյ սրբոյ[5] հայրապետին Աղեքսանդրի՝ լինել ժողով ի Նիկիայ[6] ի մայրաքաղաքն 3) Բիւթանիացւոց[7]։ Եւ ժողովեցան եպիսկոպոսք ՅԺԸ. որոց[8] ժողովէին առաջնորդք՝ Մակարիոս՝ Երուսաղեմի, Աղեքսանդրոս՝ Աղեքսանդրի, Եւստաթիոս՝[9] Անտիոքու, Սեղբեստրոս[10] Հռովմայ, Մետրոփանէս՝[11] Կոստանդնուպօղսի՝ առաջին եպիսկոպոս. յետ 4) որոյ յաջորդեաց մեծն Աղեքսանդրոս[12]։ Որոց[13] եւ նզովեալ զԱրիոս, մերժեն[14] յեկեղեցւոյ[15] արտաքս[16]։ Սահմանեցին 5) հաւատս յամենասուրբ երրորդութիւնն, քարոզելով զորդի ի բնութենէ հաւր. զոր[17] խոստովանի ընդհանրական կաթողիկէ եկեղեցի։

Որդիք նորա 6) Կոստանդինոս[18] եւ Կոստաս եւ Կոստանդոս[19] ամս քսան եւ երեք։ Սոքա[20] ի միում ժամանակի եղեն[21] կացեալ թագաւորք ի կողմանս կողմանս։ Յորոց[22] Կոստանդիանոս ի Գաղիղեա[23] եկաց թագաւոր. եւ Կոստիոս[24] (ԻԲՈ. «Կոստաս») ի

1. Էճ. Համախոհ նորա։ 2. Աէտիոս։ 3. Եւ Եւնոմիոս։
» 4. Զորդի ո՛չ գոլ, եւ այլն։ 5. Սրբոյն Աղեքսան-
» դրի՝ հայրապետին Աղեքսանդրի։ 6. Ի Նիկիա։
» 7. Բիւթինացւոց։ 8. Որո ժողովո էին։ 9. Եւս-
» տաթէոս Անտիոքա։ 10. Սեբաստոս Հռովմա։ 11. Մի-
» տրոփոնիս կոստանդնուպաւլսի։ 12. Աղեքսան-
» դրոս։ 13. Որոց նզովեալ։ 14. Մերժեն զնա։ 15. Յե-
» կեղեցո։ 16. Արտասահմանելով ի հեռաբնակ վայրս։
» 17. Զոր եւ։ ~։ ~։ ԼԴ 7)։ 18. կոստանդ։ 19. կոս-
» տանդինա։ 20. Սոքա երեքեան։ 21. չունի։ 22. Յորո։
» 23. ի կոստանդիանուպաւլիս թագաւորեաց։ 24. չունի։

1)․ ԻԲՈ․ չունի աստի մինչեւ «զորդին Աստուծոյ»։ Այս տեղիս խորենացիէն առնուած է (տես Պատմ. գլ. ՁԹ)։

2)․ ԻԲՈ․ ունի «որ արարած ասէին զՈրդին Աստուծոյ, եւ ոչ գոլ», եւ այլն։

3)․ ԻԲՈ․ չունի այս երկու բառերը։ Տես Խոր. Պատմ. անդ։

4)․ ԻԲՈ․ չունի այս տողը։

5)․ Աստի մինչեւ «կաթողիկէ եկեղեցի» չունի ԻԲՈ։

6)․ ԻԲՈ․ ունի անմիջապէս «ամս ԻԴ», առանց յիշատակութեան անուանց։

7)․ Այս․ գլխահամարէս — որ յաջորդ տողերուն կը վերաբերի — կը տեսնուի՝ որ հին բնագիրն՝ ԼԳ գլխահամարներ եւս ունէր, որոնք Էճ գրչագրիս մէջ կը պակսին։

Հռովմ. իսկ Կոստանտս՝ (ԻԲՈ. «Կոստանդէս») ի Կոստանդ-նուպաւղիս թագաւորեաց, եւ եղեւ հնազանդեալ Արիոսի մոլորու-թեանն։ Եւ հրաման ետ՝ դարձուցանել զԱրիոս յարտասահմա-նութենէն, եւ ընդունել յեկեղեցի։ Եւ հասեալ նմա պատասխանի յԱստուծոյ, հեղաւ որովայն նորա յանմաքուր տեղւոջ[1]։ Եւ ի սո-ցին[2] աւուրս գրեաց[3] երանելին Կիւրեղ՝ հայրապետն Երուսաղէմի՝ առ Կոստանդիոս[4] Թագաւոր Հռովմայեցւոց[5] վասն[6] երեւելոյ նշանի խաչին յերկնից։ Եւ ի նորին[7] աւուրս Անդրեաս՝ եղբայր Մագնոսի[8] եպիսկոպոսի զշարամանութիւն 1) տոմարաց յաւ-րինէր[9]։

ՅՈՒԴԻԱՆՈՍ՝ ամս[10] երկուս, ամիս ութ. սա էր որդի քեռ մեծին Կոստանդիանոսի, եւ եղեւ յանցաւոր՝ որպէս եւ[11] ասէ պատմութիւնն. զի թողեալ զկարգ[12] քրիստոնէական՝ եղեւ պաշ-տաւնեայ[13] դիւաց եւ երկրպագու կռոց[14]։ Ի սորա աւուրս երանելին Աթանաս հայրապետն[15] Աղեքսանդրի էր իսկ երք[16] (ԻԲՈ. «ի Սկիթ երկրորդ անգամ») երկու անգամ հալածեալ յԱրիանոսաց[17]։

ՅՈՒԲԻԱՆՈՍ (Յովլիանոս) ամիս[18] ութ. սոյն իսկ այս Յոբիա-նոս էր հետեւեալ Արիոսի մոլորութեանն. եւ 2) եղեւ վրէժխնդիր նորին աղանդոց[19]. եւ յետ սակաւ աւուրց խեղդեցաւ[20]։

ՎԱՂԵՆՏԻԱՆՈՍ[21] եւ Վաղէս՝ ամս երեքտասան[22] (ԻԲՈ. «ԺԱ»)։ Ի սոցա մետասանն[23] (ԻԲՈ. «Ժ» ամին) վախճանեցաւ[24] երանելին Աթանաս յԱղեքսանդր, դարձեալ ի հալածանացն. եւ ի սոցունց աքսորեցաւ հայրապետն[25] Հայոց սուրբն Ներսէս՝ ի հեռա-ւոր կղզիս ովկիանու[26] ամս ինն։ Եւ ի սոցունց[27] աւուրս էին սուրբ

1. ԻՃ. ի տեղոջ։ 2. Սոցունց։ 3. Գրեաց թուղթ։ 4. Կոստան-դիանոս։ 5. Հռովմայեցիոց։ 6. Յաղագս։ 7. Սոյն։ 8. Մանգնոսի՝ որ, եւ այլն։ 9. Յօրինեաց։ ~։ ~։ ԼԵ։ չունի։ 11. Որպէս ասի ի պատմութեանս։ 12. Զքրիս-տոնէութիւն։ 13. Պաշտաւնատար կռոց։ 14. Դիւաց։ 15. Հայրապետ։ 16. Ի Թերկրորդ անգամ։ 17. Արիա-նոսաց։ ~ ։ ԼԶ։ 18. Ամիսս ութ։ 19. Աղանդոյն։ 20. Խեղդեցաւ։ 21. Վաղնդիանոս։ 22. Ամս ԺԱ։ 23. Ժամանակս։ 24. Հալածեցաւ։ 25. Սուրբն Ներսէս՝ հայրապետ, եւ այլն։ 26. Ովկիանոսի։ 27. Սոցա։

1). ԻԲՈ. ունի «զշարադրութիւն «։

2). Աստի մինչեւ «խեղդեցաւ» չունի ԻԲՈ։

վարդապետքն Գրիգոր Նիւսացի՝ եղբայր Բարսղի[1], Բարսեղ Կեսարու եպիսկոպոս, Գրիգոր Նազազացի՝ աստուածաբան[2]։ Եւ էին հերձուածք ի ժամանակին 1), Արիանոսի՝ որք արարած ասէին զորդին Աստուծոյ։ Եւնոմիոսացիք՝ որք երկնային զաւրութեանցն զլուխ ասէին զՔրիստոս[3] զորդի, եւ ոչ ի բնութենէ Հաւր։ Եւ Սաբեղացիք որք զերիս անձինս սրբոյ երրորդութեանն մի ասեն, լոկ անուամբ զանազանել։ Եւողերայինք[4] որք բնականաբար զմարդկայինն պատկեր ունել սրբոյ Երրորդութեանն[5]. եւ Ապողինարացիք՝ որք մարդկային ոգի ոչ ասեն առեալ Քրիստոսի. եւ Մակեդոնացիք, որք զՀոգին Սուրբ նուազ ասեն քան զՀայր եւ զՈրդի։ Եւ Պանդուրացիք, որք զբանն ի մարմին յեղեալ ասեն. եւ Մանիքեցիք՝ որք առ աչաւք ասեն զՔրիստոս երեւեալ յաշխարհի. եւ Սոփրոնացիք[6], որք առանց մարդկային շնչոյ ասեն զմարմնաւորութիւնն Քրիստոսի։ Եւտիքիանոսք՝ որք յերկնից բերեալ ասեն զմարմին Քրիստոսի, եւ ոչ առեալ ի կուսէն[7]։

ԳՐԱՏԻԱՆՈՍ ամս հինգ. առ սովաւ Եպիփան եպիսկոպոս Կիպրացւոց[8] ի Կոստանդին քաղաքի, որ զպարունակական[9] խաւսս[10] գրեաց՝ ի խնդրոյ 2) Մատադիոսի[11], եւ Տարասինոսի[12], եւ Նեոփի, Նումերոսի[13] քահանայից Սուեդրաց[14] Պամփիւղացւոց քաղաքին, եւ Պաղալայ քաղաքապետի։ Յորում ցուցանէ գրոց վկայութեամբ, թէ զիա՞րդ արժան է հաւատալ յամենասուրբ Երրորդութիւնն, յայտնելով զութսուն աղանդոցն անուանս[15], որ յառաջ քան զՔրիստոսի մարմնանալն, եւ վաթսուն՝ որ ի գալըստենէն[16] մինչեւ ի Գրատիանոս թագաւոր։ Եւ վասն լուծանելոյ զհերձուածողացն բանս ի խնդրոյ[17] որ ի սուրբ Գրոց. եւ վասն

1. Էջ. Բարսեղի։ 2. Աստուածաբան, եւ Յոհան Ոսկեբերան։
» 3. չունի։ 4. Ապողինարացիք։ 5. չունի նոտրագրուած
» բառերը։ 6. Սոփորնացիք։ 7. ի կուսէն։ ~։ ԼԸ։
» 8. Կպրիացւոց։ 9. Պարունակսն։ 1). Խաւսս իւր։
» 11. Կ(Տ)արասիոսի։ 12. Մարասիանոսի։ 13. Նուերիա-
» նոսի։ 14. Կուեդար Պամփիւղացւոց։ 15. Անուանս
» Ի. որ յառաջ, եւ այլն։ 16. չունի։ 17. Բանի խնդիրս։

1). Քաղուած են Եպիփանի Յաղագս հերձուածոց հայերէն թարգմանութենէն. հետեւաբար՝ յառաջ եւ յետ Վաղենտիանոսի։ ԻԲՈ. չունի աստի մինչեւ «առեալ ի կուսէն» տողերը։

2). ԻԲՈ. չունի աստի մինչեւ «յամենասուրբ Երրորդութիւն» 3 տողերը։

աշխարհապարութեան [1], եւ թուոյ [2] նախահարցն, եւ ազգաց եւ թագաւորաց՝ մինչեւ ի ժամանակս իւր 1). եւ վասն յարութեան [3] համաւրէն մարմնոց, եւ վասն հեթանոսական պաշտամանցն, եւ լուծումն ի հին եւ ի նոր կտակարանաց, զոր կարծել [4] ոմանց անկատարի [5] միտս ունելոյ [6]. եւ [7] վասն ուսուցանելոյ հաւատացելոց՝ զկատարեալ հաւատոցն դաւանութիւնս [8]. եւ վասն Քրիստոսի մարմնանալոյն [9]:

**ԹԷՈԴՈՍ ՄԵԾ**՝ որդի Գրատիանոսի՝ ամս հնգետասան [10]: Ի սորա երրորդ [11] ամին եղեւ ժողովն [12] ի Կոստանդնուպաւլիս [13] հարիւր յիսուն եպիսկոպոսաց՝ վասն Մակեդոնի հոգեմարտի [14], որ նուազ [15] առնէր զՀոգին սուրբ քան զՀայր եւ զՈրդի. եւ էր նա մեռեալ յառաջագոյն [16] քան զժողովոյն գումարել [17]. յետ որոյ Դիոսփիլոս [18] (ԻԲՈ. «Դիմոփիղոս» Արիանոս ունէր զեպիսկոպոսութիւնն Կոստանդնուպաւլիս [19]. զոր հանէր ի քաղաքէն Թէոդոս թագաւոր, եւ տայր զտեղապահութիւնն Գրիգորի աստուածաբանի, մինչեւ ցհաւաքել [20] ժողովոյն: Զի 2) էր յառաջագոյն եկեալ ի Կոստանդնուպաւլիս՝ վասն Արիանոսաց հերձուածոյն, այր սքանչելի հրեշտակաց եւ մարդկան. որ եւ ի վարդապետելն իւրում՝ հիացուցանէր ամենայն քաղաքաց իմաստնոցն. յոր ոչ կարէին հայել Արիանոսքն: Եւ էին գլխաւորք ժողովելոցն [21] Կիւրղիոս՝ Երուսաղէմի, Տիմոթէոս Անստաց [22] Աղեքսանդրի, Մելիտոս՝ Անտիոքայ, Գրիգոր՝ Նիւսեայ [23], Գեղասեոս [24]

1. Էճ. Աշխարհ արարութեան: 2. Թուոց: 3. Յարութեանն:
» 4. կարծելով (ո)մանց: 5. Անկատար 6. Ունել: 7. չու-
» նի: 8. Դաւանութիւն: 9. Մարմնանալոյն: ~ : ԼԹ :
» 10. ինն եւ տասն: 11. Դ.րդ ամի: 12. Որ ի:
» 13. կոստանդնուպաւլիս: 14. Հահոչի հոգեմարտի:
» 15. Նազասէր: 16. Յառաջ: 17. Գումարելն: 18. Դի-
» մոփիղիս արիոս: 19. կոստանդինուպաւլիսի: 20. Հա-
» ւաքեալ. 21. չունի սոյն երեք տողերը: 22. Անստա-
» ցուած: 22. Նիւսիա: 24. Գեղամիոս՝ կեսարի Պա-
» ղեստինացիոց:

1). Ի՞նչ կ'ակնարկուի հոս. արդեօք առանձին ժամանակագրութիւն մ'ինչ, որ կը մնայ մեզ անծանօթ, թէ ընդհանրականն՝ Եպիփանի ծանօթ Արարածոց եւ Ղուկ. մեկնութիւնը՝ հայերէն խմբագրութեամբ: Հաւանօրէն առաջինն ըլլալու է, որուն վրայ խմբագրուած է (Զ. Է. դարում) վերջինս: ԻԲՈ. Աստի մինչեւ «Քրիստոսի մարմնանալոյն» խօսքերը չունի:

2). Աստի մինչեւ «հայել Արիանոսքն» բառերը չունի ԻԲՈ:

կեսարեայ Պաղեստինացւոց, Դամասոս Հռովմայ, Գրիգոր աստուածաբան Կոստանդնուպաւղսի[1]. զորոյ աթոռ ընկալաւ[2] Նեկտարիոս[3], ձեռնադրեալ ի ժողովոյն (Տես Խոր. Պատմ. Գ. գլ. ԼԳ)։

Ցետ որոյ լինի փոխանորդ[4] նորին Ցովհան անուանեալն Ոսկեբերան 1)։ Եւ սահմանեալ սրբոյ ժողովոյն զդաւանութիւն[5] Հաւատոյն, քարոզեցին զկենդանարար[6] զամենասուրբ Հոգին հաւասարապէս[7] եւ փառակից, եւ համագոյական[8] Հաւր եւ Որդւոյ. եւ նզովեցին զՄակեդոնի՝ յետ մահուն իւրոյ՝[9] մեռեալս[10] ընդ ամենայն հերձուածողս։ Եւ 2) ի սոյն ժամանակս յարեան մանգունքն՝ որ[11] յԵփեսոս, վասն հերձուածոյն՝ որ էր ի ժամանակին, որք ոչն[12] հաւատացին յարութեանն[13]. զի[14] վասն նորին ուժգին ճըգնութեամբ խնդրեալ[15] յԱստուծոյ Թեոդոսի[16] թագաւորին, յարեան մանգունքն։ Եւ եկեալ թագաւորին[17] ետես զնոսա, եւ բազում ինչ խաւսեցան ընդ նմա. եւ դարձեալ ննջեցին։ Եւ յառաջ քան զԹեոդոս թագաւոր[18] եղեն ժողովք վեց յԱրիանոսաց՝[19] ի տեղիս տեղիս՝[20] միասնական հաւատոյ, զոր ոչ ընդունի եկեղեցի. առաջին՝ ի Տաւրոս[21]. երկրորդ[22] յԱնտիոք. երրորդ՝ ի Սեղեւկիայ. չորրորդ՝ ի Կոստանդնուպաւղիս[23], առ Եւդոքսիւ՝[24] Արիանոսացն հայրապետաւ. հինգերորդ՝ ի Նիս[25] Թրակացւոց. վեցերորդ՝ ի Սերմին[26]։

ԱՐԿԱԴԻՈՍ եւ ՈՆՈՐԻՈՍ որդիքն Թեոդոսի՝ ամս քառասուն[27] եւ չորս (ԻԲՈ. «ԻԳ»)։ Ի սոցա երրորդ ամին եղեալ[28] Եւթաղ երանելի Աղեքսանդրացի, որ հրաշազան յաւրինուածովք զսուրբն[29] առաքելոյ, եւ զԳործոցն[30] առաքելոց, եւ 3) զԿաթողիկէից թղթոցն[31] զյառաջա-

1. Էջ. ի Կոստանդիանուպաւլիս ։ 2. Ընգալաւ ։ 3. Նեկ-
» տարիոս ։ 4. փոխանակ նորա լինի ։ 5. Դա-
» ւանութիւն ։ 6. Եւ ։ 7. Հաւասարապատիւ ։ 8. Հա-
» մագոական ։ 9. չունի ։ 10. ի մեռեալս ։ 11. Ցե-
» փեսոսի ։ 12. Ոչ հաւատաին ։ 13. Ցարութեան
» մեռելոց ։ 14. Եւ ։ 15. Խնդրեաց ։ 16. Թագաւորն
» Թէոդոս ։ 17. Թագաւորն ։ 18. չունի ։ 19. յԱրիանո-
» սացն ։ 20. Հակառակ միասնական ։ 21. Տիւրոս ։ 22. Բ.
» յերկրորդ Անտիոք ։ 23. ի Կոստանդիանուպաւլիս ։
» 24. Առ Եկդոսիւ ։ 25. Նիւսի Թրակացից ։ 26. Սեր-
» մին ։ ~ ։ ~ ։ Խ ։ 27. Ամս ԻԳ ։ 28. Եղեալ է ։ 29. Զսուրբ
» առաքեալն ։ 30. չունի ։ 31. Թղթոցն եւ ։

1)․ ԻԲՈ ունի անմիջապէս « Մեծն Ներսէս Հայոց »։
2)․ Աստի մինչեւ « վեցերորդ ի Սիրմին » բառերը չունի ԻԲՈ։
3)․ ԻԲՈ․ չունի աստի մինչեւ « Քրիստոսի հետեւին » 3 տողերը ։

բանս եւ զգլուխս, եւ զմտոմնաւորս[1], եւ զվկայութիւնս[2] եւ ըղ֊
տունս կարգեաց՝ սակս[3] հերձուածոցն[4] Կաղարբոսի եւ Կարպո֊
կրատեայ[5], որք սուտ մարդ ասացին[6] զՔրիստոս եւ զհին կտա֊
տակարանս ոչ ընդունէին[7]. զի զվկայութիւնն[8] Քրիստոսի ես֊
տէին[9]։

ԹԷՈԴՈՍ ՓՈՔՐ՝ որդի Արկադեայ՝ ամս երեսուն եւ[10] եւթն։
Սա ի ծնէ թագաւորեաց ամս յիսուն եւ երկու[11]։ Ի սորա աւուրս
էր Սուրբ Սահակ՝ Հայոց հայրապետ, յորոյ աւուրս[12] գպրութիւն
հայերէն լեզուի քսան եւ ինն գրով ի Դանիէղէ փիլիսոփայէ Ասոր֊
ւոց[13] կարգեցաւ. զոր ետ բերել Վռամշապուհ[14] թագաւոր Վախրճաց[15]
(ԻԲՌ. «Վահրճայ») նախարարի՝ ձեռամբ Հաբէլի[16] երիցու։ Իսկ զեւթն[17]
գրոցն պակասութիւն Մեսրովբ[18] երանելի, ի Հացեկաց[19] Տարաւնոյ,
յաղատ սանէ, ամսաւրեայ պահաւք եւ աղաւթիւք՝ հանդերձ աշա֊
կերտաւքն հայցեալ յԱստուծոյ, եւ ցուցաւ[20] նմա ի տեսլեան։
Այս լինէր յԱսորւոց աշխարհին՝ յորժամ վասն նորին անդ[21] ճա֊
նապարհորդեցին։ Իսկ զցուցեալ նշանախեցսն՝ հանդերձ միայա֊
րաւքն էր գրեալ... Ստեփանոսի[22] (ԻԲՌ. «Հռոփանոսի») գրչի
Սամոսացւոյ։ (Խոր. Պատմ. Գ. գլ. ԾԳ)։

Եւ 1) էր[23] հերձուած ի ժամանակին յայնմիկ[24] Դէոդորի Տարսոնա֊
ցւոյ[25] եւ Թեոդորի Սամուստացւոյ[26], եւ Նեստորի Անտիոքացւոյ. քան֊
զի Դէրգոր[27] (ԻԲՌ. «Դիոդոր») էր աշակերտ Պաւղոսի[28] Սամոսատացւոյ[29].

1. ԻՃ. Զմանաւորսն։ 2. Զվկաութիւնս։ 3. վասն։ 4. Հեր֊
» ձուածոյն Կողարբոսի ։ 5. Կարպոկրատիանոսի ։
» 6. Դաւանին զՔրիստոս ։ 7. Ընդունէին։ 8. Զի զվկա֊
» յութիւնսն վասն Քրիստոսի։ 9. Խոտէին։ ~։ ~։ ԽԱ։
» 10. Ամս ԼԹ։ 11. Ամս ԾԶ։ 12. Գտաւ։ 13. Ասորո։
» 14. Վռամշապահ։ 15. Վահրճա։ 16. Հաբեղէի ։
» 17. Է. գրոյն։ 18. Մասրոպ։ 19. Տարաւնացի՝ ի
» Հացեաց գեղջէ։ 20. Եւ ցուցեալ։ 21. Անդր։ 22. Հռո֊
» փանոսի Սամոստացիոց։ 23. Էին հերձուածք։ 24. չու֊
» նի ։ 25. Դիոդորի Տարսացիոց ։ 26. Մամուսես֊
» տացիոց ։ 27. Նստորի Անդիոքացիոց։ 28. Դիոդոր։
» 29. Պաւղէ Շամըշտացիոց։

1). ԻԲՌ. ունի այսպէս. «Ընդ այն ժամանակս Նեստոր, աշակերտ Գիոդորի Սախմաստացւոյ, ասէր. Ոչ ուրեք իշխեցին ասել հարքն, թէ Աստուած բանն ծնաւ ի Մարիամայ» եւ այլն։

եւ չնորհիւ որդի ասէ[1] զ'ի Մարիամայն[2] ծնեալն. իսկ բնութեամբ որդի զԱստուածն Բան, եւ[3] մկրտութեան արժանաւորեցաւ ի Մարիամայն մարդ ծնանել[4] Հոգւոյն, եւ լինել տաճար բանին Աստուծոյ: Իսկ Թեոդորոս Սամոսացի[5], աշակերտ Դիոդորի, (ասէ). Ոչ Աստուածն բան ծնանի ի Մարիամայ, այլ մարդ սոսկ ի կնոջէ ծնեալ. եւ վասն ազնուական գոլոյն եւ հաճելոյ նմա Աստուծոյ[6] Բանն է (որ) բնակեաց ի նմա: Վասն այնորիկ ճգնէր առ Հոգեկանս, զի հնազանդեցու(ս)ցէ զախտսն[7] մարմնականս, եւ արժանի[8] լիցի կոչել որդի Աստուծոյ: Իսկ Նեստոր Անտիոքացի[9], եպիսկոպոս Կոստանդնուպաւղսի[10], աշակերտ Պաւղոսի[11] Սամուսատացւոյ՝ ուսեալ[12] զընախատութիւնսն Դիոդորի Տարսոնացւոյ[13], ասէ. Ոչ՝ ուրեք իշխեցին ասել Հարքն[14], թէ Աստուածն[15] Բան ծնաւ ի կուսէն[16]. այլ ա՛ռ ի[17] նշանակ զանուանսն, որ ցուցանեն զբնութիւնս երկուս[18]. քանզի Քրիստոսն, եւ որդին, եւ տէրն՝ երբեմն զաստուածութիւնն զեկուցանեն, եւ երբեմն զմարդկութիւնն. իսկ երբեմն զերկուն (ԻԲՈ. «զերկեակսն»): Եւ 1) ո՛չ դարձեալ ա՛յլ որդի, եւ ա՛յլ միւս. այլ ինքն որդի է ըստ[19] բնութեանցն երկնակի. քանզի բնութեանցն ընտանի կարգաւորութեան[20] յամենայն ժամ մնացելոյ, իսկ արժանաւորութեամբ շարայարեալ առ աստուածութիւնն միական: Եւ ա՛յդ անթիւ նորա հայհոյութիւնք՝ որ յաղագս երկուց բնութեանց[21]. քանզի ոչ խոստովանի զԲանն Աստուած մարմնով[22] երեւեալ, այլ ի մարդ բնակեալ: Քանզի բնակութիւն ընզալեալ, ասէ, Բանն Աստուած՝ զմարդկութիւնն. եւ 2) այսպէս ուսուցանէր զամբարշտութիւնն հակառակ ողջամիտ վարդա-

1. Էջ. Ասէր: 2. Մարիամա: 3. Եւ ի մկրտութեան: 4. Ա-
» ծանել հոգւոյն: 5. Սամոսուեստացի: 6. Աստուծոյ բա-
» նին՝ բնակեցաւ ի նմա: 7. (եղծուած է): 8. Ար-
» ժանացի: 9. Նստոր Անտիոքա: 10. Կոստանդիանու-
» պալսի: 11. Թէոդորոսի Սամոսուեստացւոց: 12. Ա-
» ռեալ: 13. Տարսացւոց: 14. Հայրքն: 15. Աստուած
» Բանն: 16. ի Մարիամա: 17. Առին նշանակ: 18.
» Զերկուս բնութիւնսն: 19. Է կրկնակ ըստ բնու-
» թեանցն: 20. Կարգաւորութիւնն: 21. չունի: 22.
» Մարդացեալ:

1). ԻԲՈ. չունի ասկէց մինչեւ «միական»:

2). Ասոր մինչեւ «վարդապետութեանն» չունի ԻԲՈ:

պետութեանն[1]։ Զոր գիտացեալ Կիւրղի եպիսկոպոսի[2] Աղեքսանդրի, գրէ երիցս անգամ առ Նստոր՝ դառնալ ի հայհոյութենէն[3]. եւ 1) միաբանել կաթողիկէ եկեղեցեաց՝ վասն խոստովանութեան։ Իսկ Նստոր զընդդէմ հակառակսն առնէր նմա[4] պատասխանիս։ Վասն որոյ հարկաւորի երանելին Կիւրեղ՝ գրել առ Թագաւորն, զի տացէ հրաման ժողովելոյ[5]. եւ նորա հրամայեալ՝ ժողովեցան յԵփեսոս[6] ի մետասան ամի Թագաւորութեան[7] նորա եպիսկոպոսք (ԻԲՈ. « եպիսկոպոսք Մ. »), որոց էին գլխաւորք Յոբնադիոս Երուսաղէմի, Կիւրղիոս[8] Աղեքսանդրի, որ[9] էր գլուխ իսկ ժողովոյն. Մեմնոս[10] Եփեսոսի։ Յովհաննէս Անտիոքու[11], Պաւղոս[12] Եմեսիու, Թեոդոտոս[13] Անկիւրեայ, Ակակիոս Մեղիտինէ[14] (ԻԲՈ. « Սուրբն Սահակ Հայոց »), Պրաւկղոս[15] 2) Կիւզիկեայ[16], Կեղեստիանոս[17] Հռովմայ, Նեստոր Կոստանդնուպաւղսի։ Եւ ժողովեալք[18] նզովեցին զՆեստովր, բայց 3) ի Յովհաննէ Անտիոքացւոյ[19] եւ որոց ընդ նմա[20] եպիսկոպոսք երեսուն. զորս հրապուրեալ Նեստորի՝ սակս չիմնել յուղիղ հաւատս. եւ զԿիւրեղ Աղեքսանդրի հայրապետն սողոսկեալ յԱպողինարի հայհոյութիւնն, վասն զմի բնութիւն բանին Աստուծոյ խոստովանելոյ։ Եւ եղեւ պատառումն արեւելեայցն ի Կիւրեղէ՝[21] որոց ընդ նմա եպիսկոպոսք. մինչեւ[22] ճշմարտութիւն իրացն ծանուցաւ[23] թագաւորին։ Որպէս ունի յաղագս[24] այսորիկ անսուտ յիշատակարանացն պատմութիւն 4), ըստ[25] Հրամանի Թագաւորին

1. էՃ. չունի։ 2. Եպիսկոպոսապետին։ 3. ի հահոութեանցն։
» 4. չունի։ 5. ժողովոց։ 6. յԵբիսոս։ 7. Թագաւորութեանն։ 8. Կիւրեղ։ 9. Որ եւ գլուխ էր։ 10. ...
» Թնոս։ 11. Անտիոքա։ 12. Պաւղաւս։ 13. Թէոդոտոս։
» 14. Մեղիտինեայ։ 15. Պրոկղոս։ 16. Կիզիկեա։ 17.
» Կեղեստիանէս Հռոմա։ 18. Ժողովեալքն։ 19. Անտիոքացիոց։ 20. Նմա արեւելեաց եպիսկոպոսք Թուով։
» 21. Եւ որոց։ 22. Մինչեւ։ 23. Առ Թագաւորին։
» 24. չունի սոյն երկու բառերը։ 25. Եւ ըստ։

1). Անկից մինչեւ « վասն խոստովանութեանն » չունի ԻԲՈ։

2). Աստի մինչեւ « ժողովեալք » չունի ԻԲՈ։

3). Աստի մինչեւ « Պատմութիւն » տողերը չունի ԻԲՈ։

4). Կամ փոքր Սոկրատ կ'ակնարկուի հոս, կամ Փիլոքսենի Պատմութիւն Եփեսոսի ժողովոյն, եւ կամ լաւ եւս Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի՝ առ Վաչական Աղուանից Թագաւորը գրած ծանօթ Թուղթը. (տես. տպ. Վենետիկ, 1899)։

Հալածական առնել[1] զՆեստոր ի կողմանս Մծբնացւոց[2], որոց[3] յարեցաւ ի Խուժաստան[4] յարեւելս. իսկ 1) Կիւրեղ Աղեքսանդրի հայրապետն[5] ծանուցանէ Յովհաննու Անտիոքայ եպիսկոպոսի զամբարշտութիւնն Նեստորի. եւ առաքեն արեւելեայքն[6] զՊաւղոս Սամոստացւոց[7] եպիսկոպոսն առ Կիւրեղ ի խաղաղութիւն. եւ եղեւ միաբանութիւն Անտիոքացւոցն[8] եւ Աղեքսանդրացւոց: Իսկ յետ լուծման Նեստորի կալաւ զաթոռ հայրապետութեանն Մաքսիմիանոս ամն՝ ամս երիս: Յետ որոյ Պրոկղ[9] Կիւզիկեայ եպիսկոպոս՝ Հայրապետ եղեւ ի Կոստանդնուպաւղիս: Յետ որոյ Փղաբիանոս կալաւ զաթոռ հայրապետութեանն. եւ սկսաւ ուսուցանել զՆեստորի հայհոյութիւնն[10]: Իսկ Եւտիքէս ամն, վանական ի Կու կղզւոջ, առաջրէր ընդդիմակս Փղաբիանոսի գլուխս ութ, մի բնութիւն ասելով: Քանզի 2) ոչ խոստովանի զԲանն Աստուած առնուլ մարմին ի սրբոյ[11] Կուսէն, եւ լինել մարդ. այլ ասէ՝ Ոչինչ էառ ի Կուսէն Մարիամայ[12], բայց միայն նմանութիւն մարդոյ. եւ կերպարանաւք զանեալ իբրեւ զմարդ, եւ ոչ ճշմարտութեամբ[13]: Եւ ժողովեալ Փղաբիանոս եպիսկոպոս[14] զհամախոհս՝ եւ լուծանէ զԵւտիքէս: Եւ գիտացեալ զհակառակութիւնս[15] նոցա երանելին Թէոդոս, հրամայէ՝ կրկին[16] անգամ ժողով լինել յԵփեսոս[17], ի քսան եւ հինգ ամի թագաւորութեան իւրոյ, եւ քննել[18] յաղագս Փղաբիանոսի եւ Եւտիքէսի, եւ տեսանել զտոմարն Ղեւոնի, զչորեքտասանն 3) գլուխսն գրեալս առ Փղաբիանոս՝[19] վասն Եւտիքէսի

1. Էջմ. Առնեն: 2. Մծբնացւոց: 3. Որով վարեցաւ: 4. Եւ յա-
» րեւելս: 5. չունի: 6. Արեւելեայքն: 7. Եմեսացւոց:
» 8. Անտիոքացւոց եւ Աղեքսանդրացւոց: 9. Պրոկղոս
» Կիզիկէ: 10. Հաւհոութիւնն: Իսկ Եւտիքէս ամն՝ ի Կու
» կղզոջ՝ առաջրէր ընդդիմակս փղաբիանոսի, մի
» բնութիւն ասելով, գլուխս ութ քանզի ոչ խոստո-
» վանի, եւ այլն: 11. չունի: 12. չունի: 13. չունի սոյն
» խօսքերը. 14. Զհամախոհս եպիսկոպոսս իւր՝ լուծանէ:
» 15. Զհակառակութիւն նոցա: 16. Երկրորդ: 17. յԵ-
» փեսոս: 18. Քննեալ վասն: 19. չունի նօտրագրուած
» խօսքերը:

1). ԻԲՈ. չունի սակէ մինչեւ «յետ լուծման Նեստորի» տողերը:

2). Աստի մինչեւ «երանելին Թէոդոս» տողերը չունի ԻԲՈ:

3). ԻԲՈ. չունի աստի մինչեւ «չարչարեալ եւ մեռեալ» տողերը. որով ներածութեանս մէջ ըրած մեր տեսութիւնը կը ստուգուի, այսինքն՝ նկատմամբ եկամուտ լինելուն:

մարդութեանն, յորում երկուս բնութիւնս խոստովանի մարմնացե-լոյ[1] Բանին Աստուծոյ, եւ երկուս կերպարանս, եւ երկուս ներ-գործութիւնս։ Եւ ըստ Նեստորի՝ տուն Բանին Աստուծոյ խոստովանի զկուսածին մարդն։ Եւ յետ ծնանելոյ կուսին՝ ապա առէ զԲանն Աստուծոյ բնակել[2] ի մարդն. քանզի առէ այսպէս յերկոտասանե-րորդ գլխի իւրոյ հայհոյութեանն. Եւ որդի մարդոյ ասի վայրե-կեալն[3] յերկնուստ, յորժամ որդին Աստուծոյ զմարմին[4] անդուստ ի կուսէն, յորժամ ծնաւն[5], ապա առընգալաւ։ Եւ սոսկ մարդ առէ չարչարեալ եւ մեռեալ։ Եւ ժողովեցան եպիսկոպոսք երկերիւր, Յոբ-նաղիոս Երուսաղէմի, Դիոսկորոս Աղեքսանդրի, որ եւ զգլխաւո-րութիւն ժողովոյն հաւատացաւ ի թագաւորէն. Դոմնոս 1) Անտիո-քայ՝ համախոհ[6] Նստորի, Յոհան Եգեացւոց, աշակերտ Նստորի. Իբաս Եդեսացւոց[8], որ զթուղթն գրեաց առ Մարին[9], յորում գովէ զՆստորի հայհոյութիւնն[10], եւ ամբարշտութիւն ասէ զԿիւրղի խոստովանութիւնն. Թէոդորիտոս Կուրայ[11] քաղաքի, աշակերտակից Յոհաննու Եգեացւոյ՝[12] Նստորի մոլորութեանն[13], հակառակ Կիւրղի Աղեքսանդրացւոյ. վասն որոյ դիմադրութիւնս արարեալ՝ երկոտա-սան գլուխս՝ առ Կիւրղիւ[14], երկոտասան նզովս կարգեաց. եւ ըստ Թեոդորոսի Մամուեստացւոյ[15] հաճութեամբն՝ ասէ՝ բնակել ի մարդն զԱստուածն Բան։ Քանզի յերրորդ[16] գլխի՝ իւրոյ հայհոյու-թեանն ասէ. Ոչ ի կուսէ ծնեալ էր Աստուծոյ կերպարան, այլ տաճար էր, բնակիչ ունելով ըստ Պաւղոսի ձայնին. Քանզի ի նմա հաճեցաւ, ասէ, ամենայն լրումն աստուածութեանն բնակել։ Եւ յեր-կոտասաներորդ գլխին ասէ իսկ՝ պիտի հաւանել տեառն ցուցողին զերկուս[17] բնութիւնս, եւ[18] ասողին Հրէից. Լուծէք զտաճարս զայս, եւ զերիս[19] աւուրս կանգնեմ զսա. քանզի ցուցանէ լու-

1. Իձ. Մարմնացեալ։ 2. բնակեալ։ 3. ի վայր եկեալն։
» 4. Զմարմինն։ 5. Ծնիցաւ՝ առընգալաւ։ 6. Հա-
» մախոհ։ 7. Իգեացւոց։ 8. Եդեսացւոց։ 9. Ի
» Մարս 2)։ 10. Քանանաւորութիւնն։ 11. Կիւրոս։ 12. Ի-
» գեացւոց։ 13. Մոլորութիւնն։ 14. Կիւրղի։ 15. Մամ-
» սուեստացւոց։ 16. Յերկրորդ։ 17. Զերկուց բնու-
» թիւնսն։ 18. չունի։ 19. Յերիս աւուրս կանգնեցից զդա։

1)· ԻԲՈ· չունի աստի մինչեւ «Փլաբիանոս Կոստանդնուպաւլսի» տողերը։

2)· Այսպէս ունին նաեւ Կարթագինեցին Լիբերատոս Սարկաւագ եւ ուրիշներ։

ծեալ զատաճարն, եւ զկանգնիչն Աստուած։ Ուրեմն՝ ոչ Աստուած չարչարեալն[1], այլ ի մէնջ յԱստուածոյ[2] եղեալ մարդն։ Ղեւոն Հռովմայ, զորմէ ասէ[3] ոչ գոլ ի ժողովն, այլ փոխանակ իւր առաքեալ՝ տայ[4] բերել զգիրս[5] հայհոյութեանն չորեքտասան[6] գլխոյն Եւսեբի Դորիղու. Փղաբիանոս Կոստանդնուպաւղսի։ Եւ ժողովեալք սահմանեցին[7] զըստ[8] հարցն խոստովանութիւն, զնշանակ հաւատոցն[9] կնքեալ՝ մի բնութիւն մարմնացելոյ բանին Աստուծոյ. խոստովանեալ[10] ճշմարիտ մարդ լինել[11] Բանն Աստուած ասացին։ Իսկ 1) Եւտիքէս խոստովանեալ[12] զյանցանս իւր, նզովէր զաղանդն, եւ գիր խոստովանութեան մատուցանէր ժողովոյն, որ ասի Ղեւուբեղովն[13]. եւ ըստ հրամանի կանոնաց ընկալեալ եղեւ[14]. իսկ յետոյ ի նոյն հայհոյութեան աղանդն դարձաւ։ Իսկ համախոհք եւ հաւանեալք[15] Նեստորի ոչ դարձան յիւրեանց հայհոյութեանցն, զորս նզովեաց սուրբ ժողովն, ասելով. Որ ոք ասիցէ[16] ի Քրիստոս երկուս[17] բնութիւնս՝ նզովեալ եղիցի[18]։

Յայնժամ երանելին Դիոսկորոս՝[19] լուծանէր ի պատուոյ զհաւանեալս Նեստորի, զՓղաբիանոս[20] եւ զպաղատանն եպիսկոպոս. որ բարկութեամբ հարեալ[21] (ԻԲՌ. չունի) յետ աւուր սատակէր ի կենացս. Եւ զատոմարն Ղեւոնի նզովէր հանդերձ 2) ժողովեցելով[22] ընդ իւրեամբ[23] եպիսկոպոսօքն, իբրեւ զՆեստորի հայհոյութիւնն։ Լուծանէր 3) եւ զԹեոդորիտոս՝ Կիւրոս քաղաքի եպիսկոպոս[24], եւ զԻբաս՝ Եդեսիայ եպիսկոպոս[25], եւ փոխանակ նորա ձեռնադրէր եպիսկոպոս՝ ի ժողովին՝[26] զՄաքսիմոս։ Եւ եղեւ

1. Էձ. Զչարչարեալն։ 2. Աստուծոյ առեալ։ 3. Ասի։ 4. Տա-
» լով։ 5. Զգիր։ 6. զժԴ. գլուխսն։ 7. Սահմանէին։
» 8. Ըստ։ 9. Հաւատո։ 10. Խոստովանելով։ 11. Լի-
» նել ի սրբոյ կուսէն զԲանն Աստուծոյ ասացին։
» 12. Խոստովանելով։ 13. Նօտրագրուած խօսքերը
» չունի։ 14. Լինէր։ 15. չունի։ 16. Ասէ։ 17. Երկուս։
» 18. Լիցի։ 19. Դիոսկուրոս։ 20. զփղաբիանոս՝ պա-
» ղատան եպիսկոպոսն։ 21. Հարեալ յԱստուծոյ։ 22. Ժո-
» ղովեցելովք։ 23. չունի։ 25. չունի։ 25. Եւ զՈհան-
» նէս Էգացւոց եպիսկոպոս, եւ զԴոմնոս Անտիոքա ե-
» պիսկոպոս, եւ։ 26. Ժողովոյն զՄաքսիմինն։

1)․ ԻԲՌ․ չունի սատի մինչեւ « աղանդն դարձաւ » տողերը։
2)․ Նօտրագրուած բառերը չունի ԻԲՌ։
3)․ ԻԲՌ․ չունի սատի մինչեւ « զՄաքսիմոս » 2 տողերը։

խաղաղութիւն՝ յաւուրս Թէոդոսի թագաւորի՝ եկեղեցեաց՝[1] ամս յիսուն եւ երկու[2] (ԻԲՈ. «ամս ԺԲ».)։

ՄԱՐԿԻԱՆՈՍ՝ ամս ութն[3]։ Սա յերկրորդ ամի թագաւորութեանն իւրոյ հրամայեաց լինել ժողով ի Քաղկեդոն, մայրաքաղաքն[4] Բիւթանացւոց 1). քննախնդիր եղեալ լուծմանն Նեստորի, եւ նորին համախոհ եպիսկոպոսացն[5]. զի էր ինքն նորին աղանդոյ առաւել եւս վարժեալ[6], յաղագս գումարելոյ ժողովին[7] ի Պողքերէ զուգակցէ[8] իւրմէ, որ էր քոյր թագաւորին Թէոդոսի, եւ սիրելի Փղաբինոսի։ Առաւել եւս յորդորէր ի ժողովոյն գումարութիւն աղանդակից[9] Նստորի խոստովանութեանցն[10] Ղեւոն Հռովմայ հայրապետն։ Եւ հրաման ետ թագաւորն դարձուցանել զՆեստոր, զի կենդանի էր ի կողմանս Խուժաստանի, զի տացէ ընդունել զնա[11] ի ժողովն։ Իսկ ի գալստեան Նստորի[12] բարկութիւն 2) Աստուծոյ հասանէր ի վերայ նորա. եւ հեղաւ[13] որովայն նորա, որպէս զՅուդային[14] եւ զԱրիոսին. եւ այսպէս սատակեր ի կենացս[15]։ Իսկ ժողովեալքն ի Քաղկեդոն էին վեցհարիւր երեսուն եւ վեց եպիսկոպոսք[16]. Յոբնաղիոս Երուսաղէմի, Դիոսկուրոս Աղեքսանդրի, Մաքսիմէոս[17] (ԻԲՈ. «Պետրոս») Անտիոքայ, Ստեփաննոս Եփեսոսի[18], Լեւոն Հռովմայ, Եւսեբի Դորիլու, Անատողիս Կոստանդնուպաւղսի։ Իսկ Ղեւոն Հռովմայ հայրապետն ոչ եկն ի ժողովն. բայց ետ բերել զգիրսն[19] առ թագաւորն չորեքտասան[20] գլխոյն զյառաջագոյն 3) գրեալսն[21] առ Փղաբիանոս, զի հաւանեսցին այնմ ժողովեալքն ի Քաղկեդոնի։ Զոր[22] խոտեալ Դիոսկուրոսի եւ ժողովոյն[23] Եփեսոսի սուրբ եպիսկոպոսաց։ Եւ առեալ թագաւորին

1. Էջ. Եկեղեցւոց։ 2. Ամս ԺԲ, (եւ լուսանցքի վրայ Խ. երորդ)։ 3. Ամս Զ։ 4. ի մայրաքաղաքն Բիւթանացւոց։ 5. չունի։ 6. Շարժեալ։ 7. Ժողովոյն։ 8. Զիւգակցէ։ 9. Աղանդակցին։ 10. չունի։ 11. չունի։ 12. Նորա։ 13. Հեղոյր։ 14. Յուդային եւ Արիոսին։ 15. ի կենաց։ 16. Իսկ գլխաւորք։ 17. Մաքսիմոս։ 18. Եբեսոսի։ 19. չունի։ 20. զԺԴ. գլուխս։ 21. Գրեալսն։ 22. Զոր էր խոտեալ։ 23. Ժողովելոցն ընդ նմա Մ. եպիսկոպոսաց յԵբեսոս։

1). ԻԲՈ. չունի այս եւ յաջորդ 2 տողից նօտրագրուած խօսքերը։
2). Աստի մինչեւ «եւ այսպէս» չունի ԻԲՈ։
3). ԻԲՈ. չունի մինչեւ «միաբան ասացին եպիսկոպոսքն» տողերը։

զգիրսն Ղեւոնդի՝ ընկալաւ, եւ ետ զատուցանել ի միաբանութենէ եպիսկոպոսացն զերանելւոյն Դիոսկորոս. եւ խնդրեաց ի ժողովոյն՝ սահման հաւատոց, ըստ գրեցելոյն[1] ի Ղեւոնդէ հայհոյութեանցն[2]։ Իսկ ուղղափառ իշխանքն՝ որ էին ի ժողովին, ասացին[3] առ եպիսկոպոսսն. Այս է ժամանակ ճգնելոյ ձեր[4] ի վերայ հաւատոց[5], զի հաստատուն ունիցիք զաւանդութիւն հարցն խոստովանութեան[6]. եւ եպիսկոպոսքն միաբան ասացին. Ոչ ումեք է իշխանութիւն՝ ըստ հրամանի կանոնաց՝ դնել սահման հաւատոց. զի բաւական է մեզ եդեալ[7] Նիկիայ, եւ Կոստանդնուպաւղիս[8] ։ Յայնժամ հրամայեաց Թագաւորն, զմիաբանեալ եպիսկոպոսսն հանդերձ իշխանաւքն՝ տալ ի պահեստ, եւ գումարել ի վերայ նոցա զինազգեստ զաւրականս. զի եթէ ոչ հնազանդեսցին[9] կամաց Թագաւորին, եղիցին պատուհասեալք։ Եւ մեծաւ երկիւղիւ ահաբեկեալ եպիսկոպոսացն՝ էին ի տարակուսանս, թէ զի՞րդ հնար իցէ զերծանել ի պատժոց[10]։ Յայնժամ Յոբնաղիոս[11] Երուսաղէմի եպիսկոպոս հրամայեաց Ասկղեպադիայ[12] Սարկաւագի Կոստանդնուպաւղսի[13]՝ առնուլ[14] զսահման հաւատոյ, դնել ի նմա յերկուս[15] բնութեանց զմին[16] խոստովանել. որում առ երկիւղի հնազանդեալ եպիսկոպոսացն, զի թերեւս հնար լիցի այնու[17] զերծանել։ Ետուն զգիրն առ Թագաւորն. իսկ Թագաւորն ոչ ընկալաւ, այլ ետ սանել առ Լեոա[18] զգիր հայհոյութեանցն[19] Ղեւոնդի։ Զոր ընթերցեալ[20] մասն ինչ ի գլխոյն[21], միաբան ասացին եպիսկոպոսքն. Այսոցիկ ոչ հաւանիմք, զի Պաւղոսի[22] Սամոսատացւոյ հայհոյութիւն է. այսպէս եւ ոչ Նստոր[23] յանդըգնեցաւ հայհոյել։ Յայնժամ Թագաւորն՝ զուգակցաւ իւրով Պողքերաւ հանդերձ՝ եկն առ նոսա յաւուրս երիս (ԻԲՍ. չունի)։ Իսկ ժողովեալքն ի Քաղկեդովն[24] ոմանք յերկիւղէ, եւ այլք ակնառու-

1. Է Ճ. Գրելոյն ։ 2. Հաչհոութեանն ։ 3. Ասեն ։ 4. չունի ։
» 5. Հաւատոյս ։ 6. (չունի նօտրագրուած խօսքերը) ։
» 7. Եդեալն ի Նիկիա ։ 8. Կոստանդիանուպաւլիս ։
» 9. Հնազանդեցին ։ 10. (չունի նօտր. խօսքերը) ։
» 11. Յոբնաղիտ ։ 12. Ասկղոպիդեայ ։ 13. Կոստանդիանուպաւլսեցւոց ։ 14. Առնել սահման հաւատոյ ։ 15. Յերկուց ։ 16. Զմինն ։ 17. Այն հնար լիցի ։
» 18. չունի ։ 19. Հաչհոութեան թղթոյն ։ 20. Ընթերցեալ ։ 21. Ի գրոցն ։ 22. զՊաւղա Շամշատացւոց ։
» 23. Նստորի մոլեգնեալ ։ 24. չունի ։

*Թեամբ Թագաւորին եւ կնոջ նորա՝ եղեն հաւանեալք պիղծ[1] նորաձայնութեան Թղթոյն Ղեւոնի հայհոյութեանն. զոր նզովեցին յառաջագոյն* (ԻԲՈ. *«ի ժողովն Եփեսոսի»*), *եւ եղեն ընդ ինքեանց նզովիւք: Ընկալան եւ զլուծեալն Թէոդորիտոս՝ զՆեստորի զաշակերտն*[2], *զորմէ ասի՝ գլուխ կալ ժողովոյն. եւ զԻբաս*[3] *Եդեսիայ եպիսկոպոսն՝ զհամախոհս*[4] *Նեստորի* 1): *Եւ գրեցին սահման հաւատոյ ըստ Ղեւոնի, եւ ըստ Թէոդորիտեայ*[5], *եւ Պաւղոսի*[6], *եւ Արտեմոնի*[7] *կատարեալ*[8] *հայհոյութեանն* (ԻԲՈ. *չունի*). *յորում կայ յետ սակաւուց*[9]. *Այսպէս* 2) *խոստովանիմք միաբան ամենեքին*[10] *զՏէր մեր Յիսուս Քրիստոս՝ ըստ աստուածութեանն ի հայրէ, ըստ մարդկութեանն ի կուսէն, միածին յերկուց բնութեանց. ոչինչ բառնալով զբնութեանցն զանազանութիւն՝ վասն միանալոյ*[11], *այլ առաւել ողջ պահելով զյատկութիւն իւրաքանչիւր բնութեանն*[12]. *եւ ի*[13] *մի դէմ, եւ ի մի անձն միաւորելով: Եւ զի մի իւրեանց*[14] *ամբարշտութիւնն յայտնապէս*[15] *երեւեսցի, զՆեստոր պատճառանաւք նզովեն*[16]: *Իսկ բազումք ի գլխաւորաց քաղաքին Կոստանդնուպաւլսի, որք* 3) *Նեստորի հաւանեալք էին, իբրեւ լուան զնզովսն որ զՆեստորէ, զարմացեալք*[17] *առաջի թագաւորին, որպէս ի նոցունց իսկ*[18] *Քաղկեդոնականացն ցուցանի պատմութիւնս, ասեն. Սուրբ*[19] *ընդէ՞ր նզովին. զի եթէ հաւատ զՆեստորին հաստատեցին, զնա ընդէ՞ր նզովեցին: Իսկ* 4) *Թագաւորն բարկացեալ սաստեաց նոցա, զի լռեսցեն: Այսպէս*[20] *նոցունց իսկ յայտնեալ կեղծաւորութիւն նոցա՝ ծանուցաւ ամենեցուն, ուր*[21] *եւս առաւելագունիւք յայտնի է*

1. Էջ. Պեղծ նորաձայն հաւհոութեան: 2. Աշակերտն: 3. զԻբաս
» Եդեսացւոց: 4. Համախորհ: 5. Թէոդորիտոսի:
» 6. Դիեղորի: 7. Արտեմոնի, եւ Պաւղէ: 8. Կատա-
» ղեալ: 9. Սարկաւագաց: 10. Ամենեքեան: 11. Միա-
» նալոյն: 12. բնութեանցն: 13. Եւ մի դէմ, եւ մի:
» 14. իւրեան: 15. Յայտնի: 16. Նզովեցին: 17. Զար-
– մացեալք՝ առաջին: 18. ի նոցուն զՔաղկեդոնիա
» պատմութեանն ցուցանի ասեն: 19. Եւ սուրբքն՝ զի
» նզովին. զի եթէ զհաւատն Նստորին: 20. Այսպէս
» եւ ի: 21. Որ առաւելագունաւք:

1). ԻԲՈ. չունի նօտրագրուած խօսքերը:
2). Աստի մինչեւ « ի մի անձն միաւորելով » տողերը չունի ԻԲՈ:
3). ԻԲՈ. չունի աստի մինչեւ « ցուցանի պատմութիւնս » տողերը:
4). Աստի մինչեւ « ուրացութիւն նոցա » չունի ԻԲՈ:

*ուրացութիւն[1] նոցա։ Զի որք ի Քաղկեդոնի[2] ժողովեալ էին եպիսկոպոսք, նոյնք յԵփեսոսի ժողովսն գրով սահմանեալ ասացին[3]. Որ ոք ասէ ի[4] Քրիստոս երկու[5] բնութիւն՝ նզովեալ եղիցի[6]։ Եւ լուծին ի պատուոյ զՆստոր եւ զնմանիս նորա։ Իսկ ի Քաղկեդոնի՝ կործանեալք յերկիւղէ, եւ[7] ձեռագրով զՔրիստոս ուրացեալ, ասացին. Որ ոք ոչ ասիցէ[8] զՔրիստոս երկու բնութիւնս՝ նզովեալ եղիցի[9]։ Եւ ընգալան ի պատիւ զհաւանեալսն Նստորի եւ զաշակերտսն։ Իսկ որք ոչ[10] հաւանեցան՝ կործանականն ժողովոյն հայհոյութեանց եւ անարգեն[11] սահմանադրութեանն, զնոսա աքսորեցին. զՊետրոս Անտիոքացի, եւ զՏիմոթեոս[12], եւ զԱնաստասիոսն նորին եղբայր, եւ զԴիոսկուրոս[13] եպիսկոպոս նախ ի Կիւզիկոն[14] աքսորեցին, ապա յԵրակղիայ (ԻԲՈ. «յԵրակլեա»), ապա ի Պափղագոնիա[15]. եւ անդ կատարեցաւ[16] բարի վկայութեամբ եւ խոստովանութեամբ ի Քրիստոս (ԻԲՈ. «վկայութեամբ Դիոսկորոս»)։*

*Իսկ* 1) *յետ աքսորելոյն զԴիոսկուրոս, զՊռոտէ[17] հրամանաւ Մարկիանոսի ձեռնադրեցին եպիսկոպոս ի ժողովլն Քաղկեդոնի, փոխանակ Դիոսկուրոսի. եւ առաքեաց Թագաւորն յԱղեքսանդրիա։ Զոր ոչ ընդալեալ քաղաքին, բազում աւարառութիւնս ընչից առնէին[18]. եւ հօշտանգանս[19] գանից եւ տանջանաց, եւ հեղմունս արեան ընդալան ի Թագաւորէն՝[20] վասն չընդունելոյ զՊռոտեր եպիսկոպոս քաղաքին, եւ[21] չհաղորդել ընդ նմա։ Սակայն մինչ ի[22] սպառ ոչ կացին ի ճշմարտութեան[23], այլք[24] եղեն բաժանեալք[25] յերկուս։ Կէս քաղաքին ընկալան զՊռոտէր[26] եպիսկոպոս, եւ եղեն*

1. Էճ. Ուրացութիւնն։ 2. ի Քաղկեդոնն։ 3. Ասէին։ 4. զՔրիս-
» տոս։ 5. Երկուս բնութիւնսն։ 6. Լիցի։ 7. չունի։ 8. Ա-
» սէ։ 9. Լիցի։ 10. Ոչն։ 11. (եղծուած են)։ 12. Տիմէթէոս։
» 13. ԶԴիոսկորոս Աղեքսանդրի հայրապետն։ 14. Կիզի-
» կիոն։ 15. փափղագունիա։ 16. Դիոսկորոս։17. զՊռով-
» տէր։ 18. չունի։ 19. խոշտանգանս։ 20. ի Մարկիա-
» նոսէ։ 21. Եւ վասն չհաղորդելո։ 22. Մինչև իս-
» պառ։ 23. ի ճշմարտութեանն։ 24. Այլ։ 25. Բաժա-
» նեալ։ 26. զՊռովտէր։

1)․ ԻԲՈ․ *չունի ասոի մինչև «զկործանեալսն ի Պռոտորայ» տողերը․ այլ անոնց տեղ ունի․ «Եւ էր խռովութիւն եկեղեցւոյ զամենայն աւուրս Մարկիանոսի․ և Լևոնի Հռովմայեցւոյ՝ ամս ԻԳ»։*

հաւանեալք աղանդոյն Քաղկեդոնի. եւ կէս քաղաքին յուղղափա-ռութեան[1] կացեալ՝ ոչ հաւանեցան նմա։ Եւ յետ սակաւ աւուրց, ի սենեկի՝ յորոցս[2] անկողնի գահոյից՝ հարեալ քարկոծեալք յԱս-տուծոյ, ի նմին գիշերի սատակեցաւ 1)։ Յետ որոյ յաջորդէ զա-թոռ եպիսկոպոսութեանն Տիմոթեոս երանելի. եւ[3] հաստատէր յուղղափառութեան հաւատս զկործանեալսն ի Պռոտորայ[4]։

ՂԵՒՈՆ մեծ (ԻԲՈ. « Լեւոն Թագաւորէ ») ամս խնեւտասն։ ի սորա երրորդ ամին՝ Տիմոթեոս եւ Անատողի, նորին եղբայր, յափշտակեալ ի Միդասկոսէ՝ (ԻԲՈ. չունի) աքսորեցան ի Քերսոնէ[5], վասն չընդունելոյ զսահման[6] Քաղկեդոնի ժողովոյն. եւ ի նորին խնեբորդ[7] ամին նշան երեւեցաւ յերկինս, սիւն ամպոյ՝[8] փողոյ նմանութեամբ երեւեալ յաւուրս քառասուն, եւ յետ սակաւ աւուրց ի վա... անդացւոցն[9] (ԻԲՈ. « ի Վաղանդամնացոց ») արեւմտեայ զաւրացն[10] սաստիկ կոտորած[11] եղեւ (ԻԲՈ. « առաւ Հռոմ »)։ Իսկ 2) յետ աքսորելոյն Տիմոթեայ[12], միւս Տիմոթեայ[13] աջորդե-ցաւ, որ անուանեցաւ Փուաս[14]. եւ յետ նորա Պետրոս, յորմէ Ակակ, Կոստանդնուպաւղսի եպիսկոպոս, խնդրեաց ի ծածուկ ուսա-նել զգիտութիւն ուղղափառութեան հաւատոց. զի յառաջագոյն էր հաւանեալ աղանդոյն Քաղկեդոնի ժողովոյն. եւ տեղեկացեալ ի նմանէ՝ ուսաւ ի ձեռն հրովարտակացն՝ որ առ միմիանս, զի էր ի հալածանս երանելին Պետրոս. եւ էր ալեկոծումն՝ ի սուրբ եկե-

1. Էջ. Յուղղափառութիւն մնացին, եւ։ 2. Յաւթաց ի ընգողնի։
» 3։ Յետ որոյ աջորդեալ զաթոռ եկեղեցոյն Աղեքսան-
» դրի Տիմոթէոս երանելի, եւ հաստատէ։ 4. Պռով-
» տէրա։ ~։ ~։ ~։ խԳ։ 5. Քերսոն։ 6. Զսահմանն Քաղ-
» կեդոնի։ 7. ինն։ 8. Ամբո։ 9. ի Վաղանդացիոց
» արեւմտեաց։ 10. Առաւ Հռովմ։ 11. կոտորած եղեալ։
» 12. Տիմոթէ։ 13. Միւս Տիմոթէոս յաջորդեցաւ։
» 14. Նոփոիոս։

1). Աղեքսանդրիոյ հայրապետը՝ Պառոտէր Մարկիանոսի մահուանէն վերջ, և Տիմոթէոսի կուսակցութեան յարոց մոլեռանդ խուժանի հարուածոց ներքև սպա-նուած է, և մարմինն ալ Ձիարձակարանին մէջ այրուած. (տես Gutschmid 451,— G. Krüger, *Monophysiten*, Realencykl. für protest. Theolog. und Kirche, 3. Aufl. — H. Gelzer, *Abriss der Bizantinisch. Kaisergeschichte* s. 920։

2). ԻԲՈ. չունի աստի մինչև « ամս քսանևերեք » տողերը. այլ անոնց տեղ ունի. « Լեոն փոքր Թագաւորէ ամս հինգ »։

*ղեցիս Աստուծոյ՝ զամենայն աւուրս Մարկիանոսի եւ Ղեւոնի, ամս քսանեւերեք*[1]*:*

ԶԵՆՈՆ՝ *ամս վեշտասան: Զսա աղաչեցին զգաստ եւ երկիւղած ծառայք Քրիստոսի, յորս եւ* 1) *Ակակ Կոստանդնուպաւղոսի եպիսկոպոս, եւ այլ բազում եպիսկոպոսունք, զի բարձցի երկպառակութիւնք*[2] *եւ խռովութիւնք եկեղեցեաց՝*[3] *վասն ժողովոյն Քաղկեդոնի: Եւ գրեաց Թուղթ առ*[4] *կողմանս Յունաց* (ԻԲՈ. *«Յոյնաց և Հռոմոց»*) *աշխարհին, որ կոչի Հենոտիկոնն*[5]*, այս*[6] *է միաւորիչ* 2). *եւ առ ամենայն կողմանս Հռոոմոց գրեաց, որ ունի զսահման ուղղափառութեան*[7] *հաւատոյ*[8]*, եւ նզովէ զժողովն Քաղկեդոնի*[9]*, որք* 3) *երկուս*[10] *բնութիւնս ի մարմնացեալ*[11] *Բանն Աստուած սահմանեցին*[12]*. եւ եղեւ խաղաղութիւն եւ միաբանութիւն ամենայն եկեղեցեաց*[13]*: Իսկ Հռովմայեցիքն ամբարտաւանեալք, վասն* 4) *իւրեանց նախնական հայրապետին Ղեւոնի, զի էր սկզբնաւոր*[14] *ժողովոյն Քաղկեդոնի, եւ աւրինադրաւղ երկուց բնութեանց, մնացին ի նմին կործանմանն Քաղկեդոնի* 5) *եւ ուրացութեանն Ղեւոնի. եւ ոչ հաւանեցան*[15] *զուգել ի միաւորութիւն Զենոնի*[16] *ուղղափառութեանն: Եւ գործեցաւ այս յառաջին ամի թագաւորութեանն*[17] *Զենոնի. եւ ի նմին*[18] *ամի եղեւ սաստիկ շարժումն ի Հռոմ, մինչեւ նեխեցաւ երկիրն ի բազմութենէ դիականցն*[19]*: Եւ ի նմին ամի՝ հրամանաւ*[20] *թագաւորին՝ դարձաւ Տիմոթեոս յԱղեքսանդր, եւ յերկրորդ*[21] *ամին վախճանեցաւ*[22]*:*

ԱՆԱՍՏԱՍ՝ *ամս քսան եւ ութն: Սա ի նմին միաւորութեան*

1. Էձ. խԴ: 2. Երկբաութիւնք: 3. *Որ վասն*: 4. *Առ ամենայն*: 5. *Հէնոտիկոն*: 6. *Այսինքն է*: 7. *Ուղափառութեան*: 8. *չունի*: 9. *Եւ որք*: 10. *Երկու բնութիւն*: 11. *Ի մարմնացեալն Աստուած բան*: 12. *Սահման... գրեն*: 13. *Եկեղեցիոց*: 14. *Սկիզբն աւու... քաղաքին եւ Քաղկեդոնի ժողով...*: 15. *Հաւանեցան*: 16. *Զենոնի*: 17. *Զենոնի թագաւորութեանն*: 18. Ի *նոյն*: 19. *Դիականցն*: 20. *չունի*: 21. *Երկրորդ*: 22. ~: ~: ~: ԽԲ:

1)․ ԻԲՈ․ *չունի նոտրագրուած խօսքերը:*
2)․ ԻԲՈ․ *«Հինատիկոն՝ որ է միաբանութիւն ուղղափառ հաւատոյ»:*
3)․ ԻԲՈ․ *չունի սատի մինչև «ամենայն եկեղեցեաց» 2 տողերը:*
4)․ ԻԲՈ․ *չունի սատի մինչև «երկուց բնութեանց» 2 տողերը:*
5)․ *Ասատի մինչև «թագաւորութեան Զենոնի» տողերը չունի* ԻԲՈ:

Զենոնի[1] զուղղափառութիւն[2] հաստատեալ կարգեաց՝ յաղագս չարժեցեալ հերձուածոյն Քաղկեդոնին ժողովոյն[8] սահման հաւատոյ, հանդերձ նզովիւք[4] (ԻԲՈ. չունի վերջի բառերը). եւ ի նորին աւուրս[5] եղեւ հուր սաստիկ[6] արտաքոյ. աղաղակեցին առ Աստուած, եւ ապրեցաւ քաղաքն[7] ։

ՅՈՒՍՏԻԱՆՈՍ[8] (ԻԲՈ. «Յուստին Թագաւորէ») ամս ինն։ Սա դարձեալ նորոգեաց զաղմկեալ ժողովոյն նորոգաձեւութեան[9] սահման՝ ի Թագաւորաքնակ 1) միայն[10] քաղաքին, այլ ոչ յամենայն կողմանս Յունաց աշխարհին[11]։

ՅՈՒՍՏԻԱՆՈՍ՝ ամս երեսուն եւ ինն (ԻԲՈ. «ամս ԼԳ».)։ Ի սորա 2) աւուրս[12] քսան եւ եւթն ամի վախճանեցաւ զուգակից իւր. իսկ Յուստինիանոս, յետ մահուան[13] թագուհւոյն, որպէս թէ կամեցաւ[14] աստուածային իմն աւրինաց խնդրող[15] լինել, եղեւ աստուածամարտ։ Զորոյ ձախողակի յորդարումն գիտացեալ Բնդիդոս[13] (ԻԲՈ. «Բինդիդոս») հայրապետն Հռոմայ, հրամայեաց[17] առնել ժողով[8], հաստատել զհայհոյութիւն Քաղկեդոնին ժողովոյն, եւ զուրացութիւն (ԻԲՈ, չունի տումարին[19] Դեւոնի։ Իսկ նորա[20] հրամայեալ լինել ժողով ի Կոստանդնուպաւղիս, որ ասի հինգերորդ ժողով. եւ ետ հրաման, թէ եպիսկոպոս կամ հայրապետ՝ որ ոչ քարոզիցէ[21] զժողովն Քաղկեդոնին՝ ընդ սուրբ ժողովս, ելցէ ի պատուոյ[22] իւրմէ։ Յայնժամ տէրն[23] Անթիմոս՝ Կոստանդնուպաւղսի եպիսկոպոս՝ բազում եպիսկոպոսաւք յանձն առնոյր[24] լինել[25] հալածական վասն ճշմարտութեանն. ընդ 3) որս էր եւ Յուղիանէ

1. Իճ. Զենոնին։ 2. ուղափառութեանն։ 3. Յաղագս հերձուա-
» ծոյս չարժեալ ժողովոյն Քաղկեդոնին։ 4. Նզովոյք։
» 5. Աւուրս յԱղեքսանդր յերկնից։ 6. Ահեղ, եւ արտաս-
» րագոյ։ 7. ~։ ~։ ~։ խՋ։ 8. Յուստին։ 9. Նորոգաձեւու-
» թիւն սահմանի։ 10. չունի։ 11։ խէ։ 12. չունի։ 13.
» Մահու։ 14. կամեցեալ։ 15. Լինել խնդրող։ 16. Բին-
» գիտոս։ 17. Հրամայէ։ 18. ժողով և հաստա։ 19. Տո-
» մարին Լեոնի։ 20. նորա հաւանեալ հրամայեաց։
» 21. Քարոզեցի։ 22. ի Պատուէ։ 23. Տէր Անթիմիոս։
» 24. Ա՛ռ։ 25. հալած. լինել։

1). ԻԲՈ. չունի սատի մինչև «աշխարհին» խօսքերը.
2). Աստի մինչև «Թագուհւոյն» չունի ԻԲՈ։
3). Աստէ մինչև «ի հինգերորդ ժողովին» ընդարձակ հատուածը չունի ԻԲՈ։

եպիսկոպոս Աղեքսանդրու Կիպրացւոց քաղաքի[1], որ ոչ հնազանդեցաւ[2] պիղծ[3] սահմանադրութեան ժողովոյն[4] Քաղկեդոնի, զոր սահմանեաց[5] պիղծ եւ ամբարիշտ[6] Թագաւորն Յուստինիանոս, ժողովեցելովք[7] եպիսկոպոսաւքն ի Կոստանդնուպաւղիս[8]. որք կարգեցին գիրեանց հայհոյութեանն գլուխս չորեքտասան, յորում յետինրորդ գլխի հայհոյութեանն ասէ[9], այսպէս. Եթէ ոք ասէ[10], յերկու[11] ասելով՝ ոչ որպէս յաստուածութեան[12] եւ ի մարդկութեան[13] զմի տէր Յիսուս Քրիստոս ճանաչել խոստովանի. զի ձեռն այսորիկ նշանակիցէ զզանազանութիւն բնութեանցն, յորոց անշփոթապէս[14] անճառն եղեւ միաւորութիւն, ոչ Բանին առ ի մարմնոյն[15] փոփոխեալ[16] բնութիւն, եւ ոչ մարմնոյն՝ առ Բանին բնութիւն[17] փոխադրեալ[18], քանզի մնայ յիւրաքանչիւրսն. զոր աւրինակ է բնութեան[19] եւ եղելոյ[20] միաւորութեանն՝ ըստ անձնաւորութեանն. այլ յաղագս բաժանման՝ ըստ որոշման զայնպիսին ընդունի զձայն[21], սակս Քրիստոսին[22] խորհրդոյ՝ զԹիւ բնութեանցն խոստովանելով ի վերայ նորին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ Աստուծոյ Բանին մարմնացելոյ. ոչ տեսութեամբ միայն զանազանութիւն[22] բնութեանցս[24] այսոցիկ առնու, յորս[25] եւ շարադրեցաւ՝ ոչ բարձելոյ վասն միաւորութեանն. քանզի մի յերկաքանչիւրոցն, եւ միով երկաքանչիւրքն. այդ յաղագս այսորիկ[26]... Թուոյն, որպէս որոշեալս եւ յատկանձնապէս[27] դու[28]... նութիւնս, այսպիսին եղիցի նզովեալ։ Եւ որք ոչն հնազանդեցան հրամանի Թագաւորին՝ ընդունել զաղմկեալ ժողովոյն սահմանադրութիւնս[29], եւ հաւանեալ[30] նորոգաձեւութեանն տանից եկեղեցական կարգաց, զոր հաստատեաց անաւրէնն Յուստինիանոս՝ ժողովեցելովքն ի Կոստանդնուպաւղիս, ի հինգերորդ ժողովին. զաւր առաքեալ՝ [31]հեղմունս արեանց[34] արար

1. Էջ. (չունի սոյն խօսքերը)։ 2. Ոչ հաւանեալ։ 3. Պեղծ։ 4. չունի։
» 5. Հաստատեաց։ 6. չունի սոյն բառերը։ 7. Հանդերձ։
» 8. չունի։ 9. Ասի։ 10. Ասիցէ։ 11. Յերկուս։ 12. յաստուածութեանն։ 13. ի մարդկութեանն։ 14. Անշփոթապէս։ 15. Մարմնո։ 16. փոխփոխեալ։ 17. Բնութիւնն։ 18. փոխադրեալ։ 19. Բնութեանն։ 20. Եղելով միաւորութիւնն։ 21. Ձձայնս։ 22. Նոյն։ 23. Զզանազանութիւնն։ 24. չունի։ 25. Յորոց։ 26. Այսորիկ պիտի։ 27. Յատկանձնապէս։ 28. Գոլ զբնութիւնն։
» 29. Սահմանադրութեանն։ 30. Հնազանդեալ։ 31. Բազում հեղմունս։ 32. Արարին արեան։

ի տեղիս։ Եւ առաքեաց ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, զի փոխեսցեն զաւուրն քառասներորդ[1] նուիրաւոր տաւնին ընծայման[2] (ԻԲՈ. «զՏեառնընդառաջն») փրկչին մերոյ ի[3] տաճարն, եւ արասցեն ըստ հրամանի թագաւորին. զոր եւ Երուսաղեմացւոցն[4] պատմութեանն 1) հաստատեալ կայ այսպէս. Մեք որ 2) յԵրուսաղէմ բնակեալ եմք, զոր տեսաք սքանչելիս՝ պատմեմք ձեզ, որ ի Հայքդ[5] էք։ Ի յերեսներորդ[6] ամին Յուստինոսի սկսաւ սատանայ մարտնչել ընդ ճշմարտութեանն, եւ փոփոխեցին զաւուրբ հաւատս. եւ այղայղեցին զկարգս աւրինաց[7] եւ տաւնից, զոր ետ[8] Յակովբոս եղբայրն Տեառն. քանզի մտեալ առաջի թագաւորին հրեայ ոմն Հերետիկոս[9], գրգռեաց[10] զթագաւորն վասն[11] Տեառնընդառաջաց, թէ չէ պարտ թոյղ տալ Երուսաղէմացւոց[12] արտաքոյ եկեղեցական կարգաց առնել զաւր Ծննդեան եւ զքառասներորդացն. այղ որպէս ամենայն երկիրս Հռոմոց[13] տաւնէ, պարտ է[14] նոցա տաւնել։ Եւ թագաւորն ունկնդիր եղեւ[15]. եւ վաղվաղակի գրէ թագաւորասաստ հրամանաւ առ Ոստոքոս[16] (Դր. Արծր. «Յուստոս») հայրապետ քաղաքին. եւ առ ամենայն կղերս եկեղեցւոյ[17], թէ զՏեառնընդառաջն՝ ըստ Ծննդեան[18] արարէք, փեբրուարի[19] ամսոյ երկու։ Յայնժամ հայրապետն հանդերձ բնակչաւ[20] քաղաքիս, պահաւք եւ աղաւթիւք, եւ յորդաբուղխ արտասուաւք զոչէին առ Աստուած։ Եւ յանկարծակի[21] նշան[22] երեւեալ առաջի սակերաց թագաւորին,

1.. Իջ. Քառասներորդացն։ 2. Ընծայման։ 3. Որ ի տաճարին։
» 4. Երուսաղէմացիոցն Պատմութեան գրեալ հաստա-
» տեալ, և այլն։ 5. ի Հայստ էք։ 6. յ'ԼԴ. ամի։
» 7. չունի։ 8։ Ետ գրով։ 9. Հրետիկոս։ 10. Գրգռէր։
» 11. Վ,ասն աւուրն Տեառն Ընդառաջաց։ 12. Երու-
» սաղէմացիոց արտաքս։ 13. Հռոմա։ 14. Է եւ նոցա։
» 15. Եղեալ։ 16. Աստուք (Eustochius)։ 17. Եկեղեցւոյս։
» 18. Ծննդեանն։ 19. փետրուարի երկուցն։ 20. Բնակ-
» 21. Յանգարչաւք։ ծակի։ 22. Նշան յԱստուծոյ։

1). Տես Թուղթ Գրիգորի Արծրունեաց եպիսկոպոսի յԵրուսաղեմէ ի Հայս՝ վասն Տեառնընդառաջին։ իսկ ԻԲՈ. սատի մինչև «երանելոյն Մակարայ», այսինքն ամբողջ հատուածը չունի։

2). Այս սկսուածքս քիչ մը կը տարբերի Գր. Արծրունեաց եպիսկոպոսի թղթի սկսուածէն, որը երկուքին հասարակաց աղբիւր մ'եղած կարծել կու տայ։ Ներմուծողը համառոտած է Գրիգորի տարապայման հրաշից թիւը։ Հայազգի սողոսն կնոջ Սողոմէի մասին աւանդածն երկուքին քով ալ նոյն է։

որք զհրամանն[1] կատարել եկեալ[2] էին, սուրբ սիւնն՝ որ ի սուրբն[3] Սիոն, ուր ամենայն[4] բազմութիւնն եկեալ[5] էին եւ ժողովեալ, ջուր բղխեաց, առ ի հայտառակել[6] զանաւրէն հրաման Թագաւորին։ Եւ ամենեցուն տեսեալ՝ փառաւոր առնէին զԱստուած։ Այս առ Ոստոքիւ [7] (Եւստոքիոսիւ) եղեւ։ Այստ դարձեալ առ Մակարաւ ի նմին աւուր տաւնին՝ յանկարծաւրէն՝[8] ա՛յղ զաւր սաստիկ առաքեաց Թագաւորն, առ ի կատարել զչար խորհուրդն, սատակել զամենեսեան՝ որք ոչ կատարեն զհրաման թագաւորին[9]։ Յայնժամ լցեալ շնորհաւք սուրբ Հոգւոյն բազմութիւն քաղաքին, եառուն զանձինս[10] ի մահ զաւրացն[11]. եւ կատարել զհրաման Թագաւորին, արկանել ի սուր զքաղաքս։ Ի սուրբ եկեղեցւոջն Սիոն, ուր ժողովեալ էին, յանկարծակի[12] սքանչելի եւ ահագին[13] ա՛յղ նշան երեւեալ. սուրբ կոյսն Մարիամ, ունելով ի գիրկս[14] զՓրկիչն, տըպաւորեցաւ ի նմին սեան. եւ ի վերայ աջոյն Տեառն՝ խաչ մի ծիրանի։ Եւ տեսին առ հասարակ արդարք եւ մեղաւորք. եւ բազում բժշկութիւնք ախտաժետաց եղեն։ Բայց առաջին նշան սքանչելեացն ի վերայ Հայոց եղեւ. զի կին մի սողուն՝ ի Մոկաց, Սողոմէ[15] անուն նորա[16], քսան եւ չորք ամք էին՝ զի կարկամեալ[17] կայր, եւ ի լինել սքանչելեացն, առաջին նա էառ[18] զողորմութիւն։ Եւ զաւրացն տեսեալ զսքանչելիսն[19], դարձան առ Թագաւորն։ Իսկ յետ մահու[20] երանելոյն Մակարայ՝ [21]Երուսաղէմացիք ընգալան զժողովն Քաղկեդոնի ի նոյն Թագաւորին հրամանէ. եւ ի նորին[22] երեսներորդ եւ ի չորրորդ (ԻԲՈ. « ԼԴ. ») ամի կարգեցին Աղեքսանդրացիք 1) զիննեւտասանն[23] չորեքտասաներորդն զատկաց՝ քսաներորեակ[24] շրջագայութեամբն. ՇԼԲ ամաց[25]

1. ԷՃ. Զհրամանսն։ 2. Եկին։ 3. չունի։ 4. Իւ։ 5. Ժողովէին։
» 6. Խայտառակել։ 7. Ստոքիւ։ 8. Յանգարծաւրէն։
» 9. չունի։ 10. Զանձինս։ 11. Եւ զաւրացն կամացեալ։ 12. Յանգարծակի և։ 13. Ահաւոր։
» 14. Գիրկսն։ 15. Սաղոմէ։ 16. Որոյ քսանևերեք։
» 17. Կայր կարկամեալ։ 18. Եգիտ։ 19. Սքանչելիսն։
» 20. Մահուան։ 21. և Երուսաղէմացիքն։ 22. Ի Նոյն։
» 23. Զիննևտասներեակն։ 24. ԻԸ. 25. Ամացն զբոլորակն։

1). ԻԲՈ. առոր տեղ ունի հետեւեալը. « կարգեցին զհինգ հարիւրակ բոլորն »։

խոլորակն. եւ 1) ի նոյն թագաւորի քսաներորդ[1] ամի՝ հայ[2] թուականն կարգեցաւ[3] ։

ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ՝ ամս լնն։ Սա կամէր[4] բառնալ զաղմուկ ժողովոյն Քաղկեդոնի. եւ բազումք երկբայեցուցանէին զԹագաւորն, որք 2) հայհոյիչ ժողովոյն[5] հնազանդեալք, ասէին. Ո՞չ ումեք է իշխանութիւն յերկմիտս լինել վասն ժողովոյն Քաղկեդոնի՝ եթէ ոչ էր ընդունելի[6]. զի Սիմեոն[7] երանելի ձեռնարկ արարեալ է (ԻԲՈ. չունի), եւ հաւանեալ սահմանադրութեան[8] ժողովոյն. եւ ցարդ եւս պահի զգուշութեամբ ի ներքս[9] ի տապանակի սրբոյն Եփրեմիայ[10] (ԻԲՈ. «Եփեմիայ») ի Քաղկեդոն[11], ուր ժողովն իսկ եղեւ։ Քանզի Սիմեոնս[12] այս եղեալ է միաբանակեաց՝ յԱնտիոքացւոց[13] քաղաքին՝ հրաշալի եւ հռչակաւոր, եւ 3) ընտանի սրբոյ[14] հոգւոյն շնորհաց, որպէս զմի ոք ի տեսանողացն։ Եւ 4) ոմն ի մերձակայից[15] իշխանացն մաւտաւորաց նախանձաւորեալ[16] ուղղափառութեան[17] հաւատոցն, ասէ ցԹագաւորն. Եթէ[18] երանելոյն Սիմեոնի[19] ձեռնարկեալ է եւ հաւանեալ[20] ժողովոյն Քաղկեդոնի, ես զառն չարչարանաց ընդգալայց զզրաւունն[21] կենաց իմոց։ Քանզի այսպէս ունի պատմութիւն[22] անսուտ յիշատակարանաց մերոց. զի Թէոդորիտոս՝ Կիւրոս[23] քաղաքի եպիսկոպոս՝ հրամանաւ[24] Մարկիանոսի Թագաւորի առեալ զգիր հրամանի ժողովոյն, հասանի[25] յԱնտիոք՝ առ սուրբն Սիմեոն[26]։ Իսկ երանելոյն[27] աստուածային 5)

1. Էձ. Իե. 2. Հայոց։ 3. կարգեցաւ։ ~։ ԽԸ։ 4. կամեցաւ։
» 5. Էին հնազանդեալք։ 6. (չունի սոյն խօսքը)։ 7. Սիմեոն։ 8. Սահմանադրութիւն։ 9. ի ներքս։ 10... եմի։
» 11. ի Քաղկեդոնի։ 12. Սիմեոնս։ 13. յԱնդիոք քաղաքի։ 14։ Հոգւոյն սրբոյ։ 15. ի մերձեկայից։ 16. Նախանձաւոր եղեալ։ 17։ Ուղափառութեան հաւատոյն։
» 18. Թէ։ 19. Սիմեոնի։ 20. Հաւանեալ սահմանադրութեան հաւատո։ 21. Զբաւունն։ 22. Անսուտ պատմութիւն։ 23. Կիրոս։ 24. Հրամանաւ։ 25. Հաւանէր։
» 26. Սիմեոն։ 27. Երանելին։

1). Այս նոտրագրուած նախադասութիւնս չունի ԻԲՈ։
2). ԻԲՈ. չունի նոտրագրուած տողը։
3). ԻԲՈ. չունի նոտրագրուած բառերը։
4). Աստի մինչև «Թէոդորիտոս եպիսկոպոս» տողերը չունի ԻԲՈ։
5). ԻԲՈ. չունի նոտրագրուած բառերը։

ազդեցութեամբն զգացեալ[1] զգայութ նորա յառաջագոյն, հրամայէր սպասաւորին յարգելաւորութենէն (ԻԲՈ. «յարգելանէն») զինքն ի խոնարհ իջուցանել[2] (ԻԲՈ. «և հրատ լուցանել»)։ Ընդ որ յոյժ զարմացեալ սպասաւորին՝ թէ զի՞նչ լինիցի այն. եւ յետ սակաւ ժամուց հասանէր Թէոդորիտոս ի դուրս խցկանն։ Եւ ազդեն[3] սպասաւորին, զի ասասցէ սուրբ ծերոյն[4], թէ ոմն ի թագաւորէն եկեալ՝ խնդրէ տեսանել զքեզ։ Իսկ սրբոյն պատասխանեալ ասաց[5], թէ վասն նորին իջի ի տեղիս յայս. եւ հրամայէ ի ներքս թողուլ։ Եւ մտեալ Թէոդորիտոս՝ բազում բանիւք թախանձեցուցանէր, եւ աղաչէր՝ ձեռն արկանել եւ հաւանել առաջի կայսեր զսահմանին կանոնն[6] (ԻԲՈ. «հաւանել գրոյն»)։ Իսկ[7] նա ամենեւին ոչ երկնչէր ի մարդկանէ՝ յայնպիսի գործաւղաց[8], եւ ոչ ակն առնուլ գիտէր երեսաց. վաղվաղակի զգրեալսն յինքն առնոյր[9], եւ ի վառեալ[10] հուրն ընկենոյր 1), ասելով. Նզովեալ Մարկիանոս, եւ նզովեալ ժողովքն, եւ նզովեալ որ[11] հաւանին այնմ սահմանադրութեան։ Եւ իսկոյն[12] սպասաւորին[13] հրամայէ հանել արտաքս։ Եւ ոչ ինչ աւելի քան զայս գացէ[14] ոք, ո՞վ բարեպաշտ թագաւոր։ Իսկ թագաւորն խորհրդակից[15] եղեալ յինքեան աւուրս ինչ, յանկարծաւրէն[16] միում աւուրց հրամայէ մա-

1. Էջ. Ծանուցեալ։ 2. Իջուցանել և հրատ լուցանել։ 3. Ազդեն։ 4. Ծերունոյն։ 5. Ասէ։ 6. (եղծուած են)։ 7. Եւ նա քանզի։ 8. Գործողաց։ 9. Առեալ։ 10. Ի վառեալն հրատն։ 11. Որք։ 12. Ի սոյն։ 13. Հրամայէ սպասաւորին՝ հանել զնա։ 14. Գտցես։ 15 Խորհրդապահ։ 16. Ի միում։

1). Սիմէոն Սիւնակացեին վրայ միաբնակ Ասորիներէն հնարուած այս անհաւ պատմութիւնն՝ միամիտ հաւատքով ազգային ուրիշ գրողներ ևս իբրև պատմական զօրեղ փաստ գործածեր են. սակայն պէտք է ըսել, որ չինծու առասպել է այդ։ Ըստ ստուգապատում վկայութեանց ժամանակագրաց (Theod. Lect. Miller, 399, 2–6 և Theoph. 155. և Chron. Edess. ed. Hallier, p. 121), Անաստաս կայսրը չկարենալով ոչ մի կերպով իրեն ձգել Կ. Պոլսի ժամանակակից պատրիարքը Մակեդոնիոս, որ կը մնար աւանդապահ Քաղկեդոնի ժողովի պաշտօնական վճռագրին, — ծածուկ կերպով հանել Եւփեմիա վկայուհւոյ տապանէն այն վճռագիրը, և այրել կուտար։ Ահաւասիկ ճշմարիտ եղելութիւնը, որ Յուստինիանոսի պատմութենէն իսկ յայտնի կը տեսնուի։ Յիրաւի, այդ տեղ յիշուած անանուն պալատականն իսկ այս բանիս լաւ տեղեակ ըլլալու էր. ապա թէ ոչ՝ իր կեանքը վտանգի ենթարկած կ'ըլլար, ժխտելով յիշեալ վճռագրի գոյութիւնը Եւփեմիայ տապանին մէջ։

կուկաչու ուղեղնացութեամբ՝ սակաւ արամբք՝ ի Քաղկեդոնէ ելանել. եւ մտեալ ի վկայարան սրբոյն Եփրեմիայ [1], ստիպեն [2] զԹագաւորն՝ բանալ զտապանակ ոսկերաց սրբոյն [3] պահարանի: Իսկ 1) նա [4] ասէ. Ո՞վ դուք, որ զայդ համարձակիք գործել: Եւ խմացեալ թէ ինքն թագաւորն է, փաղփաղակի մեծաւ երկիւղիւ բանայ նմա [5]. եւ սփռեալ Թագաւորն զքղամիտն [6] որ զիրեւ [7], հրամայէ սպասաւորին [8] ի վեր հանել. եւ 2) ասէ ցսպասաւորն. Այդ ինչ գոյ [9] ի ներքս: Եւ նա ասէ. Ո՛չ: Եւ հայեցեալ Թագաւորն [10], ինքն իսկ տեսանէ՝ զի այդ ինչ ոչ գոյր: Յոգւոց [11] հանէր, եւ ծածկէր [12] զերեսս իւր ասելով. Ովիա [13] (ԻԲՈ. «Ովբիա զանակիրացս, որ Թարգմանի՝ ով վահանակիրաց»). աղաչաւելով 3) զսուրբսն եւ ողբալով զերանելի կոյսն, որք յաղագս ճշմարիտ հաւատոյն հալածեցան եւ սպանան: Եւ խորհուրդ արարեալ՝ կամեցաւ [14] բառնալ զսահման նորաձեւութեան [15] ժողովոյն Քաղկեդոնի, եւ զվաղնջուցն յառաքելոցն եւ ի սրբոցն [16] հաստատել զքարոզեալսն [17]: Եւ խոկոյն հասեալ նմա մահ զաւողակտն, որպէս [18] բազմաց բան է տսել, ի նմին [19] ամաց յառաջագոյն գործեցեալն: Եւ 4) ի սորին աւուրս ձեռնադրեցաւ Աբդիշու [20] եպիսկոպոս ի Շերսխէ՝ [21] Հայոց կաթողիկոսէ. եւ յետ սակաւուց [22] եկ եւ մարտիրոսացաւ սուրբն Յիզտբուզտ [23] ի պարսիկ Մարզպանաց [24]:

ՏԻԲԵՐ՝ ամս ութն [25]. առ սովաւ եղեւ ժողովն [26] ի Կոստանդնու-

1. Էձ. Եփեմիա: 2. Ստիպէ Թագաւորն: 3. Սրբո պահարա-
» նին: 4. իսկ սպասաւորն . . . ասելով: 5. ~: ~:
» 6. Զքղամիդրն: 7. Զիւրեն: 8. Զնչխարսն ի վե-
» րա: 9. կա՞յ: 10. Թագաւորին՝ ինքնին իսկ: 11. Յո-
» գոց: 12. Ծեծէր: 13. Ովբիա: 14. կամեցեալ: 15. Նո-
» րոգաձեւութիւն: 16. Սուրբ հարցն: 17. Զքարոզեալն:
» 18. Որպէս և: 19. ի նոյն: 20: Եպիսկոպոս Աբդիշո
» սսորի: 21. Ներսէսէ: 22. Սակաւ աւուրց եղև մար-
» տիրոսացեալ ի Հայս: 23. Յիզիտբուզիտ: 24. Մարզ-
» պանաց: ~: խթ: 25. Գ: 26. Ժողով:

1). ԻԲՈ. չունի նշանագրուած երկու տողերը:
2). ԻԲՈ. չունի սոյն տողը:
3). ԻԲՈ. չունի այս երկու տողերը:
4). Աստի մինչև «ի պարսիկ Մարզպանաց» չունի ԻԲՈ:

*պաւղիս Հայոց եւ Հոռովմոց՝ վասն սահմանին Քաղկեդոնի. յորում պատրեցան*[1] *Հայք* (ԻԲՈ. « *ոչ հաւան(եցան) Հայք* »)։

ՄԱՒՐԻԿ՝ *ամս քսանեւերկս*[2]։ *Ի սորա աւուրս սպանին զՈրմիզդ Պարսից արքայ. եւ Խոսրով, որդի Որմզդի, փախստական եղեալ՝ անկաւ առ Մաւրիկ. եւ կնքեցաւ որդի նորա։ Եւ յետ ժամանակի Թագաւորեցոյց զԽոսրով Պարսից աշխարհին*[3]։ *Եւ* 1) *ի նորին*[4] *աւուրս եղեւ դարձեալ միւսանգամ ժողով Հայոց*[5] *եւ Հոռովմոց՝ վասն նորին աղանդոյն Քաղկեդոնի, ժողովլին ի Կոստանդնուպաւղիս, եւ եղեն պատրեալ*[6] *Հայք։ Ի սորա յաւուրս բաժանեցին զերկիրս*[7] *Հայոց՝ Հոռովմոց եւ Պարսից Թագաւորքն. եւ երկու կաթողիկոսք նստան ի Հայս, Մովսէս*[8] *ի Դվին*[9] *Պարսից կողմանն, ուղիղ*[10] *հաւատով, եւ Յովհան*[11] *ի Հոռովմոց*[12] *կողմանէ՝ Քաղկեդոնի աղանդով*[13] (ԻԲՈ. *չունի սոյն բառերը*)։

ՓՈԿԱՍ՝ *ամս ութն*[14] (ԻԲՈ. « *ամս Ը* »)։ *Ի սորա աւուրս սկսաւ Խոսրով վրէժ խնդրել սպանմանն Մաւրկայ*[15], *յաղագս ուխտին՝ որ ի մէջ երկոցունց. եւ սրով եւ գերութեամբ*[16] *ամս քսան եւ հինգ։*

ՀԵՐԱԿՂ՝ *ամս երեսուն եւ մի* (ԻԲՈ. « *ամս ԼԵ* »)։ *Առ սովաւ առաւ*[17] *աստուածաշէն քաղաքն Երուսաղէմ*[18] *ի զաւրացն Պարսից, յորում եկեղեցիք աւերեցան. եւ սուրբ խաչն գերեցաւ, եւ կտակարանք այրեցան։ Սա յեւթն եւ ի տասն ամին*[19] *արար ժողով ի Թէոդոսուպաւղիս, որ այժմ*[20] *ասի Կարնոյ քաղաք, բազում եպիսկոպոսաց, առ Եզրիւ կաթողիկոսիւ Հայոց, եւ Հոռոմոց, եւ Ասորւոց. յորում Հայք Քաղկեդոնիկք*[21] *եղեն, եւ զժողովն ընդալան*[22]։

1. Էջ. *Պարտեցան Յոյնք*։ ~։ Ծ։ 2. *Քսանեւմի*։ 3. *Աշխարհին արքա*։ 4. Ի *նորա*։ 5. *Հայոց և Հոռոմոց*։ 6. *Պարտեալ Հայք*։ ~ ԾԱ։ ~։ 7. *Զերկիրն Հայոց Թագաւորն Պարսից և Հոռոմոց*։ 8. *Մուսէս*։ 9. *Դուընի ի*։ 10. *Ուղեղ*։ 11. *Յոհան*։ 12. *Հոռոմոց*։ 13. *Աղանդով*։ ~ ԾԲ ~։ 14. *Ամս Ը*։ 15. *Մուրկա*։ 16. *Գերութեամբ ապականեալ զաշխարհն Հռոմոց*։ ~։ ԾԳ։ ~։ 17. *Առաւ*։ 18. *Երուսաղէմի*։ 19. *Ամի Թագաւորութեանն իւրոյ եսպան զԽոսրով և դարձոյց զԽաչն. և ԺԹ. ամի*։ 20. *չունի*։ 21. *Քաղկեդոնիտ, զի*։ 22. *Ընդալան. ընդ հաւր իւր Կոստանդին*։ ~։

1). *Աստի մինչև « պատրեալ Հայք » չունի* ԻԲՈ։

ԿՈՍՏԱՆԴԻՆ՝ *ամս երիս: Ի սորա աւուրս տիրեցին Տաճիկք Ասորւոց, եւ արկին ընդ հարկաւ զեկեղեցիս սուրբ[1] քաղաքին Երուսաղէմի[2] ։*

ԿՈՍՏԱՆԴԻՆ՝ *որդի Կոստանդիանի[3], Թոռն Հերակղի, ամս քսանեւինն: Ի սորա երկրորդ ամին առաւ Դուին ի Տաճկաց* (ԻԲՌ. «*ի Ղ. Թուականին*»). *եւ եղեւ համար գերելոցն* ԼԵՌ: *Ի սորա աւուրս եղեւ[4] ժողով[5] ի Հռովմ քաղաքի՝ հարիւր տասն* (ԻԲՌ. «ԾՄ».) *եպիսկոպոսաց, եւ մենազոնաց[6] բազմաց, զոր արար* [*Մարտինոս[7]*] (ԻԲՌ. «*Մարկինոս*») *Հռովմայ հայրապետն, որ ասէր ի վերայ Քրիստոսի երկու կամս եւ երկու ներգործութիւնս՝ ըստ* 1) *երկուց բնութեանց[8]. եւ գրեցին անափորայ առ Թագաւորն, կոչեցեալ ի միաւորութիւն[9] ինքեանց: Իսկ Թագաւորն ոչ հաւանեցաւ[10] Կոստանդնուպօլսացւովքն[11] եւ Աղեքսանդրացւովք եւ Փարանացւովք՝ Հռովմայեցւոցն. զի Թէպէտեւ զերկուս բնութիւնսն ըստ Քաղկեդոնացւոցն[12] խոստովանեցին, այլ ոչ ընդդէմ զաւելագոյն[13] հայհոյութիւնն՝ Հռովմայեցւոց՝ երկու կամս, եւ երկու ներգործութիւնս ասել ի վերայ Քրիստոսի: Իսկ Հռովմայեցւոցն հաստատեալ զիւրեանց հայհոյութիւնն՝ նզովեցին զՍերգիս եւ զՊետրոս[14] եւ զՊաւղոս[15] Կոստանդնուպաւղսի եպիսկոպոսունս, եւ զԿիւրոս՝ Աղեքսանդրի եպիսկոպոսն, եւ զԹէոդորոս՝ Փարանայ եպիսկոպոս. եւ սփռեցան յիւրաքանչիւր տեղիս: Եւ յետ սակաւ աւուրց[16] առաքեցին Կոստանդնուպաւղսեցիքն ի Հռովմ, եւ ետուն ածել կապանաւք զՄարտինոս Հռովմայ[17] ի Կոստանդնուպաւղիս. եւ ձաղեալ բազում Թշնամանաւք՝ աքսորեցին ի Փոսփորայ[18], եւ երկուս ոմանսի[19] Կոստանդնուպաւղսէ: Իսկ յետ սուղ ինչ ժամանակի երեւեցաւ Մաքսիմոս[20] ոմն՝ փիլիսոփայ միայնակեաց՝ ի Կոստանդնուպաւղիս, նորին աղանդոյն Մաքսիմոսի[21], որ երկուս կամս եւ*

1. Էջ. Սրբո: 2. Երուսաղէմի: ~ : ~ : ԾԳ.: 3. Կոստանդնի: » 4. չունի: 5. ժողով ի Հռովմ քաղաքի: 6. Մոնազնաց: 7. Նոյնպէս: 8. Բնութեանցն: 9. Ընդ ինքեանց: 10. Հնազանդեցաւ հանդերձ: 11. Կոստանդինուպաւլսեցաւքն և Աղեքսանդրացաւքն: 12. Քաղկեդոնացիոցն: 13. Ջաւելադրեալ: 14. զՊիւրոս: 15. Պողոս: 16. Սակաւ ինչ: 17. Հռոմա հայրապետն: 18. Բոսփորա: 19. Ոմանս ընդ նմա: 20. Մաքսիմոս: 21. Մարտինոսի:

1). Աստի մինչև « եւ անդ սպանաւ » ընդարձակ հատուածը չունի ԻԲՌ:

երկու ներգործութիւնս ասէր ի վերայ Քրիստոսի։ Եւ ըմբռնեալ զնա բազում՝ չարչարանաւք չարչարեցին Հրամանաւ Թագաւորին, ծայրատեցին[1] եւ զձեռս, եւ աքսորեցին, երկու ընկերաւքն յաշխարհն Ղաւզիկեցւոց[2], որք անդէն սատակեցան։ Իսկ թագաւորն[3] Կոստանդին նեղեալ ի Տաճկաց՝ գնաց զաւրաւքն ի Սիկեղայ[4], եւ անդ սպանաւ[5]։

ԿՈՍՏԱՆԴԻՆ երրորդ[6] ամս չորեքտասան (ԻԲՈ. «ամս ԺԳ.»), ամիսս հինգ[7]։ Ի սորա աւուրս եղեւ ժողով ի Հռոմ, առ Ագաթոնիւ Հայրապետիւ[8], հարիւր քսան (ԻԲՈ. «ՃԺԵ,») եպիսկոպոսաց՝ առ 1) ի քննութիւն Մարտինոսի հայհոյութեանն. որք ժողովեալք՝ զնոյն աղանդն հաստատեցին զՄարտինոսին[9] (ԻԲՈ. «Մարկինոսին») եւ զՄաքսիմոսի 2) մոլորութիւնն, երկու[10] կամս եւ երկու ներգործութիւն ասելով ի վերայ Քրիստոսի։ Եւ արարեալ[11] անափորայ (ԻԲՈ. «անափորայ») առ Թագաւորն Կոստանդին, աղաչեցին զի եղիցի միաւորութիւն Հռովմայեցւոցն[12] եւ Կոստանդնուպաւղսեցւոցն։ Եւ հաւանեալ Թագաւորն՝ գրեաց 3) առ[13] ամենայն կողմանս Յունաց եւ Հռովմոց[14] աշխարհին, զի եղիցին ժողով ի Կոստանդնուպաւղիս։ Եւ ժողովեալք[15] հարիւր վաթսուն եւ հինգ եպիսկոպոսք, եւ միաբանեալ[16] հաստատեցին զհայհոյութիւնն (ԻԲՈ. «զաղանդն Քաղկեդոնի»)։ Մարտինոսի 4) եւ Մաքսիմոսի. եւ զոսկերս պղծոյ հայհոյչին Մարտինոսի[17] եւ Մաքսիմոսի հանեալ նշխարհս[18], կարգեցին եւ գրեցին[19]. կարգեցին նմա յիշատակարան՝ ընդ սուրբս լինել. եւ զԱնտիոքացին նզովեցին, զի ոչ հաւանեցան նորաձայն աւելադրեալ հայհոյութեանն[20]. եւ զՄա-

1. Էջ. Եւ ծայրատեալ զոտս և զձեռս։ 2. Ղազուկեցիոց։
» 3. չունի։ 4. Սիկիլիա։ 5. Սպան... ~։ ԾԵ։ 6. Եր-
» րորդ։ 7. Ամս ԺԵ։ 8. Հայրապետաւ։ 9. զՄարտի-
» նոսի։ 10. Երկուս։ 11. Արարին անափորա։ 12. Հռով-
» մայեցիոց և Կոստանդիանուպաւլսեցիոց։ 13. Ցամե-
» նայն։ 14. Հռովմոց։ 15. Եւ ժողովեցան։ 16. Միա-
» բանեալք։ 17. չունի։ 18. Նշխարս։ 19. (չունի սոյն
» խօսքը)։ 20. (չունի նոտրագրուած բառերը։

1). Նոտրագրուած բառերը չունի ԻԲՈ։
2). Այս տողս չունի ԻԲՈ։
3). ԻԲՈ. չունի սոյն երկու տողերը։
4). ԻԲՈ. չունի աստի մինչև «Ծառայեալ ամս երեսուն»։

կար Անտիոքու եպիսկոպոս եւ զՍտեփաննոս նորին աշակերտ, եւ զՊողիքրոնիոս[1] միայնակեաց, զորս[2] աքսորեցին։ Եւ որպէս ասի՝ բազումք մեռան[3] որք ոչ հաւանեցան[4] նորաձայն հայհոյութեանն Մարտինոսի եւ Մաքսիմոսի[5], զոր հաստատեաց նզովեալն Ագաթոն, Հռովմայ[6] հայրապետն՝ Հռովմայեցւովք[7] եւ Կոստանդնուպաւղսեցւովք։ Եւ հիմնադրեալ զհայհոյութիւն պղծոյն Ղեւոնի, շինեցին ի վերայ զաւեղադրեալ ուրացութիւնն Մարտինոսի եւ Մաքսիմոսի, երկու բնութիւնս, եւ երկու կերպարանս, եւ երկու ներգործութիւնս եւ երկու կամս ի վերայ Քրիստոսի ասելով[8]։ Եւ գրով հաստատեալ զուրացութիւնսն՝ կարգեցին[9] սահման հաւատոյ. եւ ասացին յետ ոչ բազում[10] այսպէս. Երկու[11] բնութիւնս երկու բնական ներգործութիւնս անբաժանելիս[12], անփոփոխելի, անմեկնելի, անշփոթելի[13] ի մարմին[14] Տեառն մերոյ Յիսուս Քրիստոսի՝ ճշմարիտ Աստուծոյ մերոյ փառաւորեմք. այսինքն է՝ աստուածային ներգործութիւն եւ մարդկային ներգործութիւն[15], ըստ աստուածապատումն Ղեւոնի հաստատագոյն[16] ասելով. քանզի ներգործէ իւրաքանչիւր կերպարան[17] հաղորդութեամբ, զոր ինքեան ունէր ի միում անձնաւորութեան, զանազանութեամբ՝ զանազանութիւն ծանուցեալ. որ ըստ ընկերին հաղորդութեամբ իւրաքանչիւր բնութեանցն կամել եւ ներգործել[18] զաւրութիւն ըստ ինքեան։ Եւ երկու բնական կամս եւ ներգործութիւն փառաւորեմք՝ առ ի փրկութիւն մարդկային ազգի՝ առ միմեանս ընթանալով։ Զայս այժմ[19] ամենայն ուստեք[20] ստուգութեամբ եւ ճշմարտութեամբ առ ի մէնջ տպաւորեալ, սահմանեմք՝ այլ հաւատ մի՛ ումեք[21] յառաջ բերել իշխել, կամ վարդապետել։ Զայս հայհոյութիւն հաստատեցին եւ սփռեցին[22]։ Ի սորին աւուրս եղեւ շփոթումն Տաճկաց՝ սաստիկ պատերազմաւ, եւ դադարեցին ի հարկատրութենէ[23] նոցա Հայք[24], Վիրք եւ Աղուանք, ծառայեալ նոցա ամս երեսուն[25]։

1. Էջ. զՊղիքրոն։ 2. Զոր։ 3. Մեռան սրով։ 4. Հնազանդեցան։ 5. Մաքսիմոսի։ 6. Հռովմ հայրապետ։ 7. Հռովմաեցիովք և կոստանդիանուպաւլսեցովք։ 8. Ասել։ 9. Անուանեցին։ 10. Բազում ինչ։ 11. Երկուս։ 12. Անբաժանելի։ 13. չունի։ 14. ի նմին։ 15. չունի նօտրագրուած բառերը։ 16. Հաստատնագոյն ասել։ 17։ կերպարան ընդ ընկերին։ 18. Զի...եան։ 19. չունի։ 20. չունի։ 21. Մի՛ ոք իշխեսցէ։ 22. Ցիւրաքանչիւր տեղիս։ 23. Հարկատուութենէ։ 24. Հայք և։ 25. Ամս Լ.~։~։ ԾՁ։

ՅՈՒՍՏԻԱՆՈՍ, որդի երրորդ Կոստանդնի[1], ամս երկուս։ Ի սորա առաջին ամին աւրեցին հիւսիսային[2] ազգն, որ ասին Հազիրք՝[3], Հայոց, Վրաց եւ Աղուանից. եւ 1) սպանին ի պատերազմի զիշխանս[4] Հայոց, Վրաց եւ Աղուանից, յամսեանն Սահմի, որ աւր տասն էր ամսոյն, ի ՃԼԴ Թուականին Հայոց[5]։

1. Էճ. կոստանդինի. 2. Հիւսուսային։ 3. Խազիրք։ 4. Զիշ-
» խանն Հաոց, և այլն։ 5. (չունի վերջին խօսքերը)։

1). Աստի մինչև «տասն էր ամսոյն» բառերը չունի ԻԲՈ։

# ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Այս համեմատութեամբս կը տեսնուին — իբր ի հայելւոջ — երկու գրչագրաց՝ Ժամանակագրութեան բնագրէն ունեցած հոծ և հետաքրքրական տարբերութիւնքը։ Սակայն դեռ շատ աւելի պիտի ստուարանար անոնց թիւն՝ եթէ բառերու յեղաշրջութիւնքն ես կամ շարադասութիւնը, միշտ նշանակէինք։ Էջմ գրչագրի խմբագրիչը, կարծէք, թէ տրամադրուած է մեր բնագրէն յաճախ տարբեր թիւեր շարել, տարբեր ձևերով ուղղագրել յատուկ անունները, յեղաշրջել՝ դիտմամբ՝ ոչ միայն բառերու կարգն ու շարքը, այլ և բնագրին հակառակ հոլովումներով և ուղղագրութեամբ գործածել նոյն իսկ մի և նոյն բառերն ու բայանուանքը, այլովք հանդերձ։ Արդ՝ բոլոր այս պարագաներն ի նկատի առած՝ մանաւանդ պատմական պարունակութիւնն ու ընթացքը, որով այս վերջինս՝ քայլ առ քայլ և գրեթէ կէտ առ կէտ կը կուգընթանայ Անանիայի, կը հետևի երկու բան. այսինքն են՝ կամ այն է՝ որ եղած է երկուքին հասարակաց աղբիւր մը. այսինքն է՝ Կայսերաց պատմութեան[1] ասորի կամ յոյն բնագիրը — որուն վրայէն ինքնուրոյն թարգմանութեամբ, և փոփոխութիւններով կատարուած ըլլան — տարբեր ժամանակներ և տարբեր անձանց ձեռքով — այդ կրկին խմբագրութիւնքը։ Եւ կամ Էջմ խմբագրութեան հեղինակն՝ ուղղակի Անանիայի Ժամանակագրութեան կամ Ժ.Թ. Ճառընտրի բնագիրը միայն ունեցած է իր դիմաց, և անոր վրան կատարած է իր դերը, իմաստակօրէն փոփոխելով բնագրի շարաբանութեան կարգն ու շարքը, և ըստ քմաց յերիւրելով ամէն բառ ու բան։ Սակայն ես չեմ կարծեր՝ որ այդ անծանօթ գրիչն — ո՛վ ալ ըլլայ — ունեցած ըլլայ այնքան յանդգնութիւն և յիմարութիւն՝ այնպէս վարուելու իր հին բնագրին հետ. նա մանաւանդ պատմական և ժամանակագրա-

1. Ի դէպ՝ մեր Մատենադարանի թիւ 512 գրչագրի (Գ. Ճառընտիր) Պատմութիւն Մեծի Թէոդոսի Թագաւորի՝ ի Կայսերական գրոց խորագրով ընծայած ընդարձակ հատուածը՝ բաղդատելով սոյն երկու խմբագրութեանց հետ, մասամբ համաձայն գտանք միոյն, և մասամբ ալ միւսին հետ։

կան փափուկ կէտերու նկատմամբ, որոնք ուրիշ բանի պիտի չծառայէին՝ բայց եթէ դժուարացնել իր գործը։ Ասկէց դուրս ուրիշ աւելի զօրեղ փաստեր ևս հակառակ կը զինուին վերջին ենթադրութեան։ Այսինքն՝ — ինչպէս ցոյց տուին համեմատութիւնք — Էջմ խմբագրութիւնը նախ կը վերակազմէ Ժթ. Ճառընտրի եղծուած տեղերը։ Երկրորդ՝ կը ներկայացնէ մեզ և — նոյն իսկ ժամանակագրութեան անեղծ պահուած տողերուն մէջ — այնպիսի բաներ և բառեր, որոնք նիւթին աւելի յատուկ են և յարմար։ Երրորդ՝ շարաբանութեան մէջ ըրած փոփոխութիւններում իսկ — ի բաց առեալ բառերու ուղղագրութեանց մէջ ներմուծուած սխալները, որոնք կրնան ամենայն հաւանականութեամբ տգէտ օրինակողին իսկ վերագրուիլ — աւելի տրամաբանական է, և՛ լեզուին և՛ շարաբանութեան իսկ հմուտ։ Ապա ուրեմն՝ կը մնայ իբրև հաւանականագոյն առաջին կարծիքը։

Էջմ խմբագրութիւնն — ի հարկէ սկզբնագրին համաձայն — աշխարհաց ու քաղաքաց, և այլն, վերաբերեալ յատուկ անուանց տարօրինակ ձևագրութեամբք և ուրիշ թերութիւններով հանդերձ՝ ըստ իս աւելի հին ըլլալու է, քան Շիրակացու ժամանակագրութեան խմբագրութիւնը, գէթ ըստ Ժթ. Ճառընտրին։ Իւ ասոր նպաստող զօրաւոր փաստն է՝ ըստ իս՝ նախ հետևեալ պարագայն. այսինքն՝ ՃԼԴ. Թուականը, որը դրած է ժամանակագրութեան խմբագիրը՝ ճիշտ ամսոյն և օրուան քանիօնութեամբը՝ իբր վերջակէտ, կը պակսի Էջմ խմբագրութեան ·վերջը։ Անտարակոյս՝ եթէ նա այդ Թուականէն վերջ խմբագրած ըլլար, պէտք է՝ որ դնէր մի ուրիշ աւելի նոր Թուական. իսկ եթէ Ժթ. խմբագրութեան բնագրի վրայէն ընդօրինակած՝ անշուշտ զայն իսկ հաւատարմութեամբ պիտի արտագրէր։ Բ. այն 56 գլխահամարները, զորս նշանակեցինք Էջմ խմբագրութեան տարբերութեանց մէջ, չունի Ժթ. խմբագրութիւնը։ Արդ՝ այդ գլխահամարներէն ԼԴը ո՛ւր ալ գրուած և ի՛նչ բանի համար ալ գրուած համարուին, ըստ քմաց ընդօրինակողէն ներմուծուած չեն կրնար եղած ըլլալ. այլ յատուկ էին սկզբնագրին, ուսկից սա Թարգմանուեցաւ։ Դիտելու արժանի կէտ մ'է և այս, որ կայսերաց իւրաքանչիւրին հանդէպ տրուած այդ գլխահամարները՝ անոնց Թուէն աւելի են։ Կարելի՞ արդեօք ըսել, որ սա՝ կայսերաց Ա. ցանկին համեմատ խմբագրուած ըլլայ։ Դըժուար է, վասն զի հոս ալ՝ կայսերաց Թիւը 56էն աւելի է։

Էջմ.ին՝ հնագիր երկաթագրէ մը ընդօրինակուած ըլլալն ասանց

երկբայութեան է։ Ասոր յայտնի ապացոյց են նախ տողադարձները, որոնց յաճախ մէկ տառն անգամ յաջէն դէպ ի ձախ փոխադրուած է, նոր տողի սկիզբը։ Բ. Մ և Տ տառերն երբեմն իրարու փոխանակած են։ Գ. Բառամիջում և բառին վերջ՝ յ և ը տառերը զանց եղած են ընդհանրապէս։ Դ. Է և Ե տառերը իրարմէ անզգալի կերպով կը զանազանին։ Այս ալ ըսած ըլլանք, որ սոյն խմբագրութեանս ուղղագրութեան և անուանագրութեանց մէջ երևցող նորաձևութիւնքը չեն կրնար սոսկապէս իբր յետնութեան կամ նոր ժամանակի յատուկ նշան համարուիլ. զի Մ. Սոկրատի Թարգմանութեան մէջ իսկ — ինչպէս և առ Բուզանդայ — այդպիսիներ (օրինակի աղագաւ. Աղեքսանդրացեաց, Աղեքսանդրւոյ, և այլն), պակաս չեն։ Եւ այս բանս ագիտութենէ աւելի՝ կամ երկաթագրի Եաց և Խոց տառերէն յառաջ եկած է, զորս ընդօրինակողն Խու կարդացեր է սխալմամբ. և կամ մատենագրին կամ Թարգմանչի գաւառական լեզուին և դպրոցի արտասանութեան իսկ իբր անմիջական հետեւանք։

Իսկ գալով ԻԲՈ. Զ.ին — որը ուշ ծանօթանալով՝ կարելի չեղաւ բոլոր տարբերութիւնները մանրամասնօրէն նշանակել — երկուքէն իսկ կը տարբերի, և հետևաբար՝ առանձին խմբի մը կը վերաբերի։ Շատ տեղեր ունեցած ուղղագրական թերութեամբք հանդերձ՝ կրնայ ըսուիլ, որ նախընթաց երկու օրինակներէն աւելի լաւագոյն ընթերցուածներ կը ներկայացնէ ընդհանրապէս. ուսկից կը հետևի, որ լաւագոյն վիճակի մէջ պահուած երկաթագրէ մի ընդօրինակուած է։ Շիրակացւոյ Ժամանակագրութեան ուսումնասիրութեան համար մեզ այդ Զ.ի մատուցած ծառայութիւնը ուրիշ կրկին կէտերով ևս նշանաւոր է. այսինքն՝ նախ որ կը լրացնէ մեզ Ներուայէն սկսեալ՝ մինչև Մարկոս Անտոնինոս եղած կայսերաց պատմութիւնը, որ կը պակսէր բնագրին կամ ԺԹ. Ճառընտրի մէջ։ Բ. ինչպէս տեսանք՝ ազատ է — բացառութեամբ միայն — գրեթէ բոլոր այն անհաւատալի և ընդարձակ հատուածներէն, որոնք մուտ գտած են ԺԹ. և ԷՃ. Ձեռագիրներու մէջ, թէպէտև այս վերջնոյս քով իսկ բաւական տարբեր են անոնց պարունակութիւնն ու պարագաները։ Ցամենայն դէպս՝ ինչ որ մենք ի յառաջագոյնն խորհրդածեցինք Անանիայի Ժամանակագրութեան մէջ յետոյ ուրեմն ներմուծուած հատուածոց մասին, նոյները կը հաստատուին մեծապէս ԻԲՈ. Զ.րի բաղդատութիւններու ձեռքով ևս։ Ուստի՝ հետևեալ պայմանով — այսինքն՝ եթէ խնդրոյ նիւթ եղած հա-

տուածները ԻԲՈ. օրինակի գաղափարողէն և կամ լաւ ես անոր հին բնագրի խմբագրողին կողմէն և դիտմամբ դուրս ձգուած չեն — կրնանք եզրակացնել՝ որ այդ Ձեռագիրն ըլլայ, եթէ ոչ կատարեալ, այլ համեմատաբար աւելի ճիշտ և յարմար ներկայացուցիչ Շիրակացւոյ Ժամանակագրութեան վերջին մասին։ Ապագայ ուսումնասիրութիւնք անշուշտ վերջնական խօսքը պիտի զուրցեն։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

## Ա

## Բ



## Գ

## Դ

## Ե

## Զ



## Է



## Ը



## Թ

## Ի



## Լ



## Խ

## Հ

## Ղ

## Ճ



## Մ

# Յ

## Ն

## Ջ



## Ռ



## Ս

## Վ



## Տ

## Ր



## Փ



## Ք

Ֆ

# ՎՐԻՊԱԿՔ ՈՒՂՂԱԳՐԵԱԼՔ [1]

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Էջ | Թ | տող | 5 | չըլլան . . . . | ըլլան |
| » | Թ | » | 31 | Gollegit . . . . | Collegit |
| » | Թ | » | 34 | byxant . . . . | byzant. |
| » | Ժ | » | 4 | Արկադէոս . . . | Արկադիոս |
| » | ԺԱ | » | 20 | ժամանագրական . . | ժամանակագրական |
| » | ԺԲ | » | 12 | Սինգեղղոս . . . | Սինկեղղոս |
| » | ԺԳ | » | 30 | իբց . . . . . | իբր |
| » | ԺԳ | » | 19 | Ցւստինոս . . . | Յուստինոս |
| » | ԼԳ | » | 30 | Ջեռնագիրն . . . | Ջեռագիրն |
| » | ԼԳ | » | 33 | ժամանակագրութիւն . | ժամանակագրութիւնն |
| » | 1 | » | 6 | երկրիւր . . . . | երկերիւր |
| » | 3 | » | 1 | կայնան . . . . | կայինան |
| » | 3 | » | 16 | ՇԼԷ . . . . | ՇԼԵ |
| » | 4 | » | 9 | ՍՄԽԲ . . . . | Ս(Մ)ԽԲ |
| » | 4 | » | 15 | ՃԼԷ . . . . | ՃԼԵ |
| » | 4 | » | 27 | Մինոկորոն . . . | Մինիկորոն |
| » | 4 | » | 27–28 | Գադերոնէ . . . | Գադիրոնէ |
| » | 4 | » | 28 | Եւ Յաքեթի . . . | Եւ է Յաքեթի |
| » | 4 | » | 34 | ՍՌՂ . . . . | ՍՈՂ |
| » | 7 | » | 4 | զԱմովրացիս . . . | զԱմովրհացիս |
| » | 7 | » | 9 | Գադերոն . . . . | Գադիրոն |
| » | 7 | » | 12 | Եթովպացիք . . . | Եթիովպացիք |
| » | 7 | » | 14 | Փիւնիկեցիք . . . | Փիւնիկացիք |
| » | 7 | » | 24 | Իդակորուտա . . . | Իդակորուդա |
| » | 7 | » | 27 | Տեննտոս . . . . | Տեննդոս |
| » | 7 | » | 33 | Եթովպէ . . . . | Եթիովպէ |
| » | 8 | » | 6 | Գադերոնէի . . . | Գադիրոնէի |
| » | 8 | » | 18 | Էղամացիք . . . | Եղամացիք |
| » | 8 | » | 31 | Կէդրուսացիք . . . | Կեդրուսացիք |
| » | 9 | » | 11 | սացա . . . . . | սոցա |
| » | 9 | » | 20 | Բաբիւղոն . . . | Բաբիւղոնէ |
| » | 9 | » | 26 | Տայանոսք . . . | Տայիանոսք |
| » | 9 | » | 34 | աչքէ վրիպած են «Գուլթացիք, Յոյնք՝ որ են Աքայեցիք, Թեսաղք, Մակեդոնէացիք, Թրակացիք»: | |

1. Թող աւելորդ չհամարուի ըսել, որ գրչագրերը ճիշդ ներկայացնելու համար ստիպուած ենք երբեմն սովորական ուղիղ ձեւերն իսկ՝ իբրեւ սխալ ուղղագրել, եւ երբեմն ալ սխալագրութիւնքը՝ իբր ուղիղ դնել:

| | | | |
|---|---|---|---|
| Էջ 10 | տող 4 | Ափրեացէք . . . | Ափրիացէք |
| » 10 | » 16 | Յունի՛դէս . . . | Յոնի՛դէս |
| » 11 | » 4 | եւ Բենիսեա . . . | Եւբենիսեա |
| » 11 | » 10 | Ռապորացէք . . . | Ապ(տ)որացէք |
| » 11 | » 11 | Դ ․․ւտենացի . . . | Դ․․․ւդենացէք |
| » 11 | » 12 | Աւրինացէք . . . | Աւրիացէք |
| » 11 | » 33 | Տրապեզոնտ . . . | Տրապեզունտ |
| » 11 | » 34 | երկու . . . . | երկուց |
| » 12 | » 11 | Պարթենիս . . . | Պարթենիոս |
| » 12 | » 35 | բա գատել . . . | բաղդատել |
| » 13 | » 32 | ՎԿՆ . . . . | Վ(Շ)ԿՆ |
| » 15 | » 29 | երբեւ . . . . | իբրեւ |
| » 17 | » 1 | Թագարեաց . . . | Թագաւորեաց |
| » 18 | » 15 | արքէյ . . . . | արքայի |
| » 18 | » 15 | Սեղեեայ . . . . | Սեղեմեայ |
| » 18 | » 26 | իւր առ . . . . | առ իւր |
| » 19 | » 5 | Բարեգոմն . . . | Բաբեգոմն |
| » 22 | » 8 | Ամնիաս . . . . | Ոմնիաս |
| » 23 | » 27 | որպյ . . . . | որոյ |
| » 24 | » 29 | Արքեղայոս . . . | Արքեղաւոս |
| » 24 | » 31 | Վեսպասիանոսէ . . | Վեսպիանոսէ |
| » 41 | » 2 | զինորացն . . . | զինուորացն |
| » 49 | » 7 | Սամսացի . . . . | Սամոստացի |
| » 63 | » 23 | Քաղկեդրոնի . . . | Քաղկեդոնի |
| » 63 | » 15 | Արիոսոսին . . . | Արիոսին |
| » 67 | » 14 | կրտորած . . . . | կոտորած |
| » 68 | » 2 | ։ ~ ։ . . . . | ։ ~ ։ ԽԴ։ |
| » 68 | » 4 | Կոստանդնուպաւղոսի . | Կոստանդնուպաւղսի |
| » 68 | » 32 | ԽԲ . . . . . | ԽԵ |
| » 71 | » 30 | բնակ Ցանգարչաւք։ Տակի | բնակչաւք յանգարծակի |
| » 75 | » 19 | Ճերսիսէ . . . . | Ներսիսէ |
| » 75 | » 23 | ։ ~ ։ ~ ։ . . . | ։ ~ ։ ~ ։ ԽԸ։ |
| » 76 | » 10 | զերկիցս . . . . | զերկիրս |
| » 79 | » 7 | չինիցին . . . . | չինեցին |
| » 83 | » 4 | յ եւ ը . . . . | Յ եւ Հ |